### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6., գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**5**

ՄԱՅԻՍ 1970

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении**


## Բովանդակություն

2

Содержание









1870 1970

# ԼԵՆԻՆԸ ՀԱՎԵՐԺ ԿԱՊՐԻ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆԻ ԶԵԿՈՒՅՑՈՒՄԸ

*ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՀԱՄԱՏԵՂ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ՝ ՆՎԻՐՎԱԾ ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻՆ*

Ընկերնե՛ր: Կոմունիստական կուսակցությունը, սովետական բոլոր մարդիկ մեծ հանդիսավորությամբ նշում են Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակը:

Մեզ հետ միասին լենինյան պայծառ հոբելյանը տոնում են սոցիալիստական երկրների ժողովուրդները, կոմունիստական ու բանվորական կուսակցությունները, առաջադեմ ամբողջ մարդկությունը: Սիրելի առաջնորդի և ուսուցչի նվիրական անունը տիրաբար թևածում է երկրագնդի ամենահեռավոր անկյուններում, հնչում որպես հեղափոխական պայքարի մարտակոչ, որպես կոմունիստական նոր աշխարհի խորհրդանիշ:

Այս օրերին աշխատավոր մարդիկ երախտագիտության անհուն զգացումով են փառաբանում մեծ Լենինին, որն իր բոլոր ուժերն ու գիտելիքները, իր ամբողջ անսպառ եռանդը նվիրաբերեց բանվոր դասակարգի ազատագրության պայքարին, սոցիալիստական հեղափոխության և կոմունիստական հասարակարգի կառուցման վեհ գործին:

Լենինի կյանքը սխրանք էր: Նրա մեջ մարմնավորվել էին պրոլետարական հեղափոխականի ամենաակնառու գծերը՝ հզոր միտք, ամենահաղթ կամք, սրբազան ատելություն դեպի ստրկությունն ու ճնշումը, հեղափոխական կրքոտություն, հետևողական ինտերնացիոնալիզմ, անսահման հավատ մասսաների ստեղծագործական ուժերի նկատմամբ, կազմակերպչական փիթխարի հանճար:

Համաշխարհային կոմունիզմի և միջազգային պրոլետարիատի մեծ առաջնորդը պատմության մեջ ընդմիշտ մտավ որպես պրոլետարական նոր տիպի կուսակցության ստեղծող, որպես աշխարհում առաջին հաղթական սոցիալիստական հեղափոխության ղեկավար, որպես առաջին սոցիալիստական պետության հիմնադիր:

Լենինի անվան հետ անխզելիորեն կապված է մի դարաշրջան, որը դասակարգային մարտերի թափով ու դինամիկայով, սոցիալական վերափոխումների իր նշանակությամբ մեծ չափով գերազանցում է այն ամենը, ինչ մինչ այդ տեսել էր մարդկությունը: Լենինի կյանքի սխրագործությունը, գաղափարներն ու գործերը հավերժ կմնան որպես գիտական մտքի և հեղափոխական գործունեության անսպառ աղբյուր բոլոր կոմունիստների համար, բոլոր նրանց համար, ովքեր կառուցում են հավասարության և ազատագրված աշխատանքի նոր աշխարհ:

Լենինյան հոբելյանի նախաշեմին մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեն ընդունեց «Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ» թեզիսները: Քաղաքական և տեսական այդ կարևոր փաստաթուղթը տալիս է Լենինի բազմաբեղուն գործունեության ընդհանրացնող, խոր գնահատականը, բացահայտում է լենինիզմի էությունը՝ որպես մարքսիստական տեսության կարգացման նորագույն էտապի:

Այսօր խոր համոզվածությամբ կարելի է ասել, որ պատմությունն իր գլխավոր և հիմնական գծերով ընթանում է այն ճանապարհով և այն հեղափոխական ուղիներով, որ բացահայտեցին և գիտականորեն հիմնավորեցին Մարքսը, Էնգելսը, Լենինը: Ներկայումս լենինիզմն արդեն ոչ միայն գիտական տեսություն և հեղափոխական մեթոդ է, այլև ռեալ կարգացում, սոցիալիզմի, միջազգային բանվորական-ազատագրական շարժման մասսայական պրակտիկա:

Մարքսիստներից առաջինը Լենինը գիտականորեն ապացուցեց, որ 19-րդ և 20--րդ դարերի սահմանագծին համաշխարհային կապիտալիզմը թևակոխել է իր վերջին ստադիան, որ իմպերիալիզմը հանդիսանում է սոցիալիստական հեղափոխության նախօրյակը: Մարքսիստներից առաջինը Լենինը տեսավ պրոլետարական հեղափոխության հաղթանակի հնարավորությունը՝ սկզբում մեկ, առանձին վերցրած երկրում: Նա գիտականորեն հիմնավորեց, որ այդպիսի երկիր կդառնա Ռուսաստանը:

Լենինը բազմակողմանիորեն մշակեց պրոլետարիատի դիկտատուրայի և նրա նվաճման տեսությունը, կուսակցությունը կոփեց օպորտունիզմի դեմ մղած մարտերում, պաշտպանեց մարքսիզմի անաղարտությունը:

Որպես հեղափոխության մեծ ստրատեգ, Լենինը տալիս էր դասակարգային մարտերի յուրաքանչյուր էտապի ու շրջադարձի ճիշտ գնահատականը, որոշում կուսակցության պրակտիկ անելիքները, առաջ քաշում մասսաներին հասկանալի ու հարազատ լոզունգներ, խնդիրների իսկայական բազմազանությունից առանձնացնում գլխավոր, հիմնական օղակը:

Լենինիզմի՝ որպես նոր պայմաններում բանվոր դասակարգի ազատագրության ուղիների մասին ուսմունքի ծագումն ու առաջացումը, բոլշևիզմի կազմակերպչական ձևավորումը մեծ չափով ուժեղացրին հեղափոխական զարգացման և առհասարակ պատմական պրոցեսի ինտենսիվությունը: Ոտքի ելած Ռուսաստանը միաժամանակ արթնացրեց շատ երկրների աշխատավոր մասսաներին, ամենահեռավոր ծայրամասերի ժողովուրդներին, միլիոնավոր մարդկանց սրտերում հրավառեց ազատության, սոցիալական արդարության, սոցիալիզմի պայքարի անշեջ բոցը: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, ասում էր Վ. Ի. Լենինը, «...ամբողջ աշխարհին մատնանշեց սոցիալիզմի ուղիները և բուրժուազիային ցույց տվեց, որ մոտենում է նրա տիրապետության վերջը» (Երկեր, հ. 28, էջ 37):



Համաշխարհային պատմության մեջ սկսվեց նոր դարագլուխ: Սովետական մարդիկ հպարտ են նրանով, որ Ռուսաստանը հանդիսացավ Իլյիչի հայրենիքը: Մեր ժողովուրդը հպարտ է նրանով, որ հենց իրեն վիճակվեց աշխարհում առաջինը կանգնել լենինիզմի դրոշի ներքո, գնալ Լենինի նշած ուղիով:

Լենինիզմի մեծագույն վերափոխիչ դերը և ինտերնացիոնալ նշանակությունը առավել լիակատարությամբ դրսևորվեցին մեր կուսակցության գործունեության մեջ, սովետական ժողովրդի աշխատանքային սխրանքներում: Լենինիզմի հաղթանակով Ռուսաստանի ժողովուրդների առջև բացվեց իրենց դարավոր հետամնացությունը սոցիալիզմի ուղիներում արագ տեմպերով հաղթահարելու, ինդուստրիալ և կուլտուրական զարգացման առաջավոր բնագծեր դուրս գալու փայլուն հեռանկարը:

Հոկտեմբերի հաղթանակով մեր կուսակցության տեսական ու պրակտիկ գործունեության կենտրոնում դրվեցին սոցիալիստական շինարարության հարցերը: Զարգացնելով Մարքսի և Էնգելսի ուսմունքը, հենվելով մասսաների ստեղծարար փորձի վրա, Վ. Ի. Լենինը, մեր կուսակցությունը բազմակողմանիորեն հիմնավորեցին սոցիալիզմը, բացահայտեցին նրա զարգացման օրինաչափությունները: Առաջին անգամ մարդկության պատմության մեջ նոր հասարակարգի կառուցումը ծավալվեց գիտականորեն հիմնավորված ծրագրով: Իրականացվեցին երկրի ինդուստրացումը, գյուղի կոոպերացումը և կուլտուրական հեղափոխությունը:

Ողջ աշխարհի առջև հառնեց հզոր, բարձր զարգացած սոցիալիստական պետությունը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, ծնվեց սկզբունքորեն մի նոր աշխարհ, մարդու կողմից մարդու շահագործումից, դասակարգային հակամարտություններից, սոցիալական անհավասարությունից զերծ աշխարհ: Սովետական ժողովուրդը, կուսակցության ղեկավարությամբ, հաջողությամբ կենսագործեց սոցիալիստական հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծման լենինյան պատգամները:

Մենք սոցիալիզմի շինարարությունն սկսել ենք պատմական այն պայմաններում, երբ, օրինակ, Ամերիկայի Միացյալ Նահանգներում էլեկտրականությունը սովորական բան էր, իսկ Ռուսաստանում ամենուրեք դեռ ճրագ էին վառում: Ներկայումս հենց միայն Բրատսկի հիդրոէլեկտրակայանը կարող է էներգիայով ապահովել 20 միլիոնանոց բնակչություն ունեցող պետությունը, միայն Վ. Ի. Լենինի անվան Վոլգայի հիդրոէլեկտրակայանը մեկ տարում երկու անգամ ավելի շատ էներգիա է արտադրում, քան Ռուսաստանի բոլոր էլեկտրակայանները միասին վերցրած՝ 1928 թվականին: Երկրի լիակատար էլեկտրիֆիկացման լենինյան ծրագիրը հաջողությամբ իրականացվում է:

1969 թվականին ՍՍՀՄ-ում արտադրվել է 110 միլիոն տոննա պողպատ, արդյունահանվել է 328 միլիոն տոննա նավթ: Եթե մի ժամանակ Լենինը երազում էր 100 հազար տրակտորների մասին, որոնք հարկավոր էին գյուղացիներին կոլեկտիվ աշխատանքին հաղորդակից դարձնելու համար, ապա այժմ գյուղում կան մոտ 2 միլիոն տրակտոր, ավելի քան 600 հազար կոմբայն, ավելի քան մեկ միլիոն բեռնատար ավտոմեքենա:

1920 թվականին մեր երկրի արդյունաբերական արտադրանքի ծավալը համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեկ տոկոսից էլ պակաս էր: Բայց արդեն 30-ական թվականների սկզբին արդյունաբերական արտադրանքի թողարկմամբ ՍՍՀՄ դուրս եկավ աշխարհում երկրորդ տեղը, իսկ

ներկայումս Սովետական Միությունը տալիս է աշխարհի արդյունաբերական արտադրանքի մոտ 20 տոկոսը:

Վ. Ի. Լենինը խնդիր էր դնում սոցիալիստական հասարակարգի կառուցման ընթացքում «...ակնառու կերպով, ակներևորեն ապացուցելու յուրաքանչյուրին ու ամենքին, որ սոցիալիզմի մեջ թաքնված են հսկայական ուժեր, և որ մարդկությունն այժմ անցել է զարգացման նոր, արտասովոր փայլուն հնարավորություններ բերող ստադիայի» (Երկեր, հ. 33, էջ 594):

Սոցիալիստական հասարակարգի ստեղծագործական վիթխարի հնարավորությունները ապահովում են մեր երկրի էկոնոմիկայի արագընթաց վերելքը: Եթե կապիտալի գլխավոր երկրում՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, արդյունաբերական արտադրության աճի տարեկան միջին տեմպը վերջին 50 տարիներին կազմել է 2—3 տոկոս, ապա Սովետական Միությունում այն կազմել է 10 տոկոս:

Մեր երկրում իրականություն դարձավ պատմական այնպիսի խնդիրների կատարումը, որոնք կապիտալիզմը չի կարող լուծել: Դա տնտեսական ճգնաժամերի և գործազրկության վերացումն է, սոցիալական ապահովության և աշխատավորների առողջապահության պետական սիստեմը, ամբողջ ժողովրդի կրթության ու կուլտուրայի բարձր մակարդակը:

Ներկայումս Սովետական Միությունն ունի բարձր զարգացած սոցիալիստական գյուղատնտեսություն: Բազմապատկվում է կոլտնտեսային գյուղացիության ավանդը երկրի նյութական արտադրության և հանրային հարստության աճի գործում: Լենինյան կոոպերատիվ պլանը, սոցիալիզմի ժամանակ գյուղացիության պատմական ճակատագրի և ակտիվ դերի մասին նրա գաղափարները այսօր էլ ուղեցույց են կոմունիստական շինարարության խնդիրների լուծման բնագավառում:

Սովետական իշխանության տարիներին իրագործվեց պատմության մեջ հիրավի չտեսնված շրջադարձ ժողովրդի հոգևոր կյանքում: Աշխարհում առաջին անգամ կուլտուրայի, գիտության, տեխնիկայի և արվեստի նվաճումները ի սպաս դրվեցին աշխատավորներին, դարձան նրանց սեփականությունը: Աճեց նոր, աշխատավոր մտավորականությունը, որը դուրս է եկել ժողովրդի ծոցից և առավել հարաճուն բաժին է ներդնում մեր հասարակության նյութական ու հոգևոր հարստությունների ստեղծման ու բազմապատկման ասպարեզում:

Համաշխարհային կուլտուրայի լավագույն նվաճումների հիման վրա ծընվեցին և ծաղկեցին սոցիալիստական կուլտուրան, գրականությունը և արվեստը, որոնք դարձան, ինչպես սովորեցնում էր Լենինը, համապրոլետարական գործի անբաժան մասը:

Մեր ժողովրդի օրինական հպարտությունն է սովետական գիտությունը, որը հիանալի արդյունքների է հասել հասարակական զարգացման պրոցեսների ուսումնասիրության, բնության հետազոտման և տիեզերքի նվաճման գործում, արդի գիտա-տեխնիկական առաջադիմության տարբեր բնագավառներում:

Կուլտուրական հեղափոխության լենինյան ուղին ընդամենը մի քանի տասնամյակի ընթացքում ժողովրդի կրթվածության մակարդակի տեսակետից Սովետական Միությանը դուրս բերեց աշխարհում առաջին տեղը: Ներկայումս ՍՍՀՄ բնակչության ավելի քան մեկ երրորդը ունի բարձրագույն և միջնակարգ կրթություն:

Հսկայական երկրի մասշտաբներով հաջողությամբ իրականացվում է ան-



ցումը պարտադիր միջնակարգ կրթության: Երկրում աշխատում են ավելի քան 820 հազար գիտաշխատողներ: Աշխարհի յուրաքանչյուր չորրորդ գիտնականը սովետական է: Այդ նվաճումները սովետական ժողովրդի օրինական հպարտությունն են և աշխատավորների, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկանց հիացմունքն են առաջացնում:

Ժողովրդական մասսաներին գրոհի տանելով ընդդեմ ցարական ինքնակալության և բուրժուազիայի, հանուն նոր հասարակարգի ստեղծման, Լենինը, բոլշևիկները խնդիր էին դնում վերացնել ազգային պառակտումն ու ճնշումը:

Հետևողականորեն իրականացնելով ազգային հարցում լենինյան ծրագիրը, կոմունիստական կուսակցությունը, սովետական ժողովուրդը լուծեցին այդ խնդիրը, ամբողջ աշխարհին պարզելով մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների՝ պրոլետարական միասնական գաղափարախոսության վրա խարսխված եղբայրական մեծ բարեկամության դրոշը:

Սովետական Միության փորձը ցույց տվեց, որ ազգային դարավոր պրոբլեմի իսկական լուծումը հնարավոր է միայն սոցիալիզմի բազայի վրա՝ լենինիզմի սկզբունքների անշեղ կիրառման պայմաններում: Մեր երկրում իրականացվեցին լենինյան ազգային ծրագրի սկզբունքները. ազգերի ինքնորոշում և իրավահավասարություն, տարբեր ազգությունների բանվորների և աշխատավորների համախմբում դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում, սոցիալիզմի ուղին բռնած ժողովուրդների քաղաքական, ռազմական ու տնտեսական սերտ դաշինք, ազգերի փաստական հավասարության ապահովում՝ համատեղ ջանքերով, նրանց էկոնոմիկայի և կուլտուրայի արագ զարգացման միջոցով:

Կոմունիստական կուսակցությունը, հավատարիմ Լենինի պատվիրաններին, Սովետական մեծ Միությունում ստեղծեց հարյուրից ավելի սոցիալիստական ազգերի և ազգությունների եղբայրական մի ընտանիք, որոնց միաձույլ միասնությունը կոմունիստական շինարարության խնդիրների հաջող իրականացման անհրաժեշտ պայմանն է:

Մեր երկրում լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի վառ վկայությունն են հայ ժողովրդի սոցիալիստական վերածնունդը, Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության ծաղկումն ու բարգավաճումը:

Լենինիզմի հաղթանակը բախտորոշ նշանակություն ունեցավ հայ ժողովրդի պատմական ճակատագրում: Ահա թե ինչու Հայաստանի բոլոր աշխատավորները մեծ առաջնորդի հարյուրամյակը նշում են որպես նվիրական տոն և այս հանդիսավոր օրերին կրկին ու կրկին հավաստում իրենց հավատարմությունը լենինիզմին, Լենինի անմահ գործին:

Այսօր, մեծ առաջնորդի հոբելյանին մենք հպարտորեն հայտարարում ենք, որ հայ ժողովրդին ևս վիճակվեց աշխարհի ժողովուրդների մեջ առաջիններից մեկը կանգնելու լենինիզմի դրոշի ներքո, գնալու Լենինի նշած ուղիով:

Հայ ժողովուրդը պատմական ճակատագրի բերումով դարեր առաջ կորցրել էր իր պետականությունը, դարեր անընդհատ ստիպված էր կրել օտարի լուծը, դատապարտված էր արյունատենչ նվաճողների և սեփական հարստահարիչների անօրինակ հալածանքներին, կեղեքումներին ու անիրավություններին: Հայ առաջադեմ մտքի լավագույն ներկայացուցիչները հարյուրամյակներ շարունակ ուղիներ էին որոնում հարազատ ժողովրդի վիճակը թեթևացնելու, նրա ֆիզիկական գոյությունը պահպանելու համար: Եվ միայն այն բանից

հետո, երբ գիտական կոմունիզմը Լենինի հանճարով ու ջանքերով վերածվեց հեղափոխական պայքարի մարտական ծրագրի, հայ առաջավոր մտքի ներկայացուցիչները տեսան ժողովրդի փրկության միակ ուղին:

Բոլորովին պատահական չէ, որ Լենինի հեղափոխական գործունեության դեռևս առաջին տարիներին նրա հետևողական գաղափարակիցների շարքերում մենք տեսնում ենք հայ ժողովրդի առավել հեռատես ու հայրենասեր զավակներին: Դեռևս 1893 թվականին երիտասարդ Լենինի վինակիցների մեջ էր Իսահակ Լալայանցը: Լենինյան գվարդիայի փայլուն համաստեղության մեջ անմար կմնան մեր ժողովրդի պանծալի զավակներ Բոգդան Կնունյանցի, Ստեփան Շահումյանի, Սուրեն Սպանդարյանի, Ալեքսանդր Մյասնիկյանի, լեգենդար Կամոյի, մյուս հայ բոլշևիկների անունները, որոնք իրենց ամբողջ կյանքը նվիրաբերեցին աշխատավոր մարդու սոցիալական ազատագրությանը, լենինիզմի գաղափարների հաղթանակին:

Հայ մարքսիստները իսկայական աշխատանք կատարեցին մասսաների շրջանում մարքսիզմ-լենինիզմը պրոպագանդելու, նրանց հեղափոխական մարտերի նախապատրաստելու ասպարեզում: 1903 թվականից մինչև 1920 թվականը հայ բոլշևիկների ջանքերով արդեն թարգմանվել ու հայերեն առանձին գրքերով տպագրվել էին Վ. Ի. Լենինի մի քանի տասնյակ աշխատություններ:

Վ. Ի. Լենինը հետևում էր հայ ժողովրդի շրջանում մարքսիզմի պրոպագանդայի ծավալմանը, անհրաժեշտ օգնություն ցույց տալիս հայ մարքսիստներին սոցիալ-դեմոկրատական կազմակերպության ստեղծման ու ամրապնդման գործում: Դեռևս 1903 թվականին նա ջերմորեն ողջունեց «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» հայտնի Մանիֆեստը: «Մենք ամբողջ հոգով ողջունում ենք «Հայ սոցիալ-դեմոկրատների միության» Մանիֆեստը,— գրել է Լենինը,— և մանավանդ ազգային հարցի ճիշտ դրվածքը տալու նրա ուշագրավ փորձը» (Երկեր, հ. 6, էջ 411):

Անդրկովկասի բոլշևիկները երկրամասի ազգային բազմատարրության պայմաններում մշտապես կանգնած են եղել պրոլետարական ինտերնացիոնալիզմի դիրքերի վրա: 1913 թվականին Մաքսիմ Գորկուն ղրկած նամակներից մեկում Լենինը գրում էր. «Մեզ մոտ և Կովկասում ս.-դ. վրացիները+հայերը+թաթարները+ռուսները աշխատում էին *միասին տասը տարուց ավելի միասնական ս.-դ.* կազմակերպության մեջ: Այդ ֆրազ չէ, այլ ազգային հարցի պրոլետարական լուծում: Միակ լուծումը» (Երկեր, հ. 35, էջ 79):

Հայ ժողովրդի ազգային և սոցիալական ազատագրության ուղին տեսնելով Ռուսաստանի պրոլետարիատի հաղթական հեղափոխության մեջ, հայ բոլշևիկները ավելի սերտորեն էին համախմբվում Լենինի շուրջը:

Լենինը հայ ժողովրդի մեծ բարեկամն էր: Նրան լրջորեն մտահոգում էր մեր ժողովրդի ճակատագիրը: Բազմաթիվ առիթներով նա անդրադարձել է մեր ժողովրդի պրոբլեմներին, հանդես է եկել իմպերիալիստական դավերի կոհ հայ աշխատավորի պաշտպանությամբ, նա ոչ միայն ծանոթ էր հայ ժողովրդի տառապանքներին, այլև Վահան Տերյանի վկայությամբ, «շատ լավ էր հասկանում մեր վիճակը»: Դրա փայլուն վկայություններից մեկն է ժողկոմսովետի 1917 թվականի դեկտեմբերի 29-ի հայտնի դեկրետը «Թուրքահայաստանի մասին», որի իրականացմանը խոչընդոտեցին երիտասարդ սովետական հանրապետության թշնամիները: Այդ դեկրետը Լենինի նախաձեռնությամբ քննարկվեց և ընդունվեց ժողկոմսովետում «Ավրորայի» համազարկից ընդամենը եր-



կու ամիս հետո, այսինքն այն ժամանակ, երբ նորաստեղծ սովետական իշխանության առջև ամբողջ հասակով մեկ ծառացել էին հեղափոխության ամենակենսական, բարդ ու խրթին հարցերը:

Պատմությանը հայտնի է Լենինի ջերմ հոգատարությունը Ռուսաստանի տարբեր վայրերում ապաստան գտած շուրջ 500 հազար հայ գաղթականների նկատմամբ: Սովետական իշխանությունները, քաղաքացիական պատերազմի ծանր կացության պայմաններում, Լենինի ցուցումով նյութական և այլ օգնություն կազմակերպեցին անօթևան հայ տարագիրներին, որի շնորհիվ փրկվեցին հազարավոր կյանքեր:

Առանց հուզմունքի անհնար է կարդալ հայ գաղթականների երախտագիտությունն արտահայտող նամակները՝ ուղղված սովետական կառավարությանը: Դրանցից մեկում ասվում է. «Տանջանքների մատնված՝ մենք քարշ էինք տալիս մեր կյանքը, թափառելով սար ու ձոր, քաղցած ու մերկ, մինչև ոտք չդրինք այն հողը, որին հովանի է հեղափոխական կարմիր դրոշը՝ Սովետական Հանրապետության տերիտորիան»:

Մեր ժողովրդի համար ամենաօրհասական պահին, երբ դաշնակցական արկածախնդիրների հլու համաձայնությամբ կնքվում էր Հայաստանի մահկանացուն, հեղափոխության դրոշը բարձրացրած աշխատավորներին Լենինի հանձնարարությամբ օգնության շտապեց 11-րդ կարմիր բանակը:

Սովի ու համաճարակների ճիրաններում տառապող աշխատավորներին Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո օգնության ձեռք մեկնեց Սովետական Ռուսաստանը, որն ինքն էլ ավերիչ քաղաքացիական պատերազմների հետևանքով տակավին կանգնած էր ծանր կացության առջև:

1920 թվականի դեկտեմբերի 7-ին, Հայաստանի հեղկոմին հաղորդելով ՌԿ(բ)Կ Կենտկոմի և Ժողկոմսովետի ձեռնարկած միջոցառումների մասին, Ս. Օրջոնիկիձեն ՌՍՖՍՀ կառավարության անունից հայտարարում է.

«Թող Հայաստանի բանվորներն ու գյուղացիները իմանան, որ Սովետական Ռուսաստանի բոլոր ուժերը և եռանդն ի սպաս կդրվեն Սովետական Հայաստանին: Թող իմանան, որ Ռուսաստանի բանվորները, գյուղացիները և կարմիր բանակը կբաժանեն հացի իրենց համեստ պահուստը Հայաստանի բանվորների և գյուղացիների հետ»:

Լենինն անձամբ հետաքրքրվում էր այն հարցով, թե ինչպես են իրականացվում Հայաստանի աշխատավորներին շուտափույթ օգնություն կազմակերպելու վերաբերյալ ժողկոմսովետի ցուցումները: Լենինի գաղափարների հաղթանակի շնորհիվ Հայաստանի աշխատավորները պատմական կարճ ժամանակամիջոցում վերաշինեցին ավերված երկիրը, բռնեցին նոր, լուսավոր կյանքի լենինյան ուղին:

Ահա թե ինչու, այսօր հայ ժողովուրդը անհուն երախտագիտությամբ սրտի ամենանվիրական խոսքն է ուղղում իր մեծ բարեկամին, ազատարարին ու առաջնորդին, այն մարդուն, որի անունը ազգային փրկության ու վերածննդի անմար ջահ դարձավ պատմության մթին կածաններում դարեր շարունակ դեգերող մեր հինավուրց ժողովրդի համար:

Սովետական իշխանության տարիներին սոցիալիստական կարգերի շնորհիվ մեր ժողովուրդը ստեղծեց իր ազգային պետականությունը, շենացրեց երկիրը, հասավ ժամանակակից քաղաքակրթության բարձունքներին, ըստ ամենայնի ծավալեց իր ստեղծագործական տաղանդը: Սովետական իշխանության հիսուն տարիներին հայ ժողովուրդը կտրեց-անցավ հարյուրամյակների ուղի,

հաղթահարեց դարավոր հետամնացությունը և հաստատուն կերպով բռնեց համակողմանի զարգացման, հարաճուն վերելքի ու ստեղծագործական սխրանքների ճանապարհը:

Այսօր Սովետական Հայաստանը էկոնոմիկայի զարգացման աստիճանով, կուլտուրայի մակարդակով շահեկանորեն համեմատվում է բարձր զարգացած շատ երկրների հետ: Այսօր հայ մարդն ապրում է վաղվա օրվա նկատմամբ կենսահաստատ հավատով՝ վստահ իր ուժերին, ստեղծագործական աշխատանքի բերկրանքով:

Այսօր մեր ժողովրդի աշխարհասփյուռ զավակները բռնել են տունդարձի ճանապարհը: Պատմության մեջ առաջին անգամ նախնիների օրրանը փրկության փարոս է դարձել ճակատագրի կամայականությամբ աշխարհի տարբեր երկրներով ցրված հայ աշխատավորների համար:

Այսօր մեր ժողովուրդը կառուցում է իր նոր, կոմունիստական ապագան՝ սովետական եղբայրական ժողովուրդների հետ ուս-ուսի, միակամ ու միաբան: Սովետական ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, սերտ համագործակցությունն ու փոխօգնությունը դարձել են նրանցից յուրաքանչյուրի և միասին վերցրած՝ բոլորի հզորության ու երջանկության գրավականը:

Այն ամենը, ինչ Հայաստանի կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ձեռք է բերվել սովետական իշխանության տարիներին, անխզելիորեն կապված է հայ ժողովրդի մեծ բարեկամ ու ուսուցիչ Վ. Ի. Լենինի անվան հետ, Սովետական Միության կոմունիստական կուսակցության գործունեության հետ:

Մեծ առաջնորդի հարյուրամյա հոբելյանը Սովետական Հայաստանը դիմավորում է որպես բարձր զարգացած արդյունաբերության և սոցիալիստական գյուղատնտեսության բարգավաճ հանրապետություն, որպես Լենինի կրկնակի շքանշանակիր հանրապետություն:

Ընկերնե՛ր: Էկոնոմիկայի և կուլտուրայի ասպարեզում ձեռք բերած աչքի ընկնող նվաճումների համար Սովետական Հայաստանը երկրորդ անգամ արժանացավ Լենինի շքանշանի, որ երկու օր առաջ, լենինյան պայծառ տոնի նախօրեին, համաժողովրդական ցնծության պայմաններում հանձնվեց մեր հանրապետությանը:

Հայրենիքի բարձրագույն պարգևը մեր բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության անձնվեր աշխատանքի բարձր գնահատականն է, հայ ժողովրդի նկատմամբ կոմունիստական կուսակցության մեծ հոգատարության մի նոր վառ դրսևորումը: Այն նոր լիցք ու եռանդ է հաղորդել մարդկանց, արտադրական և ստեղծագործական աննախընթաց վերելք առաջացրել աշխատավորական կոլեկտիվներում:

Մեծ առաջնորդի ծննդյան հարյուրամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ բարձր ցուցանիշների հասնելու համար մեր հանրապետության աշխատավորական տասնյակ կոլեկտիվներ վերջերս արժանացան ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի լենինյան հոբելյանական պատվոգրերի, տասնյակ հազարավոր աշխատավորներ պարգևատրվեցին լենինյան հոբելյանական մեդալներով:

Իսկ հանրապետական սոցիալիստական մրցության մեջ հաղթող ճանաչված՝ արդյունաբերության, տրանսպորտի, կապի, շինարարության ձեռնարկությունների և կազմակերպությունների, կոլտնտեսությունների, սովխոզների, առևտրի, կենցաղային սպասարկման, գիտական ու կուլտուրական հիմնարկությունների բազմաթիվ կոլեկտիվներ արժանացան Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի լենինյան հոբելյանական պատվոգրերին:

— Թույլ տվեք այս բարձր ամբիոնից Լենինի շքանշանի արժանանալու առթիվ մեկ անգամ ևս ջերմորեն շնորհավորել ձեզ, հանրապետության բոլոր աշխատավորներին, բոլոր նրանց, ում աշխատանքը նշվել է լենինյան հոբելյանական պարգևով և ցանկանալ նորանոր խիզախումներ՝ հանուն սոցիալիստական մեր մեծ Հայրենիքի է՛լ ավելի հզորացման և բարգավաճման:

Ընկերնե՛ր: Մեր հանրապետության հասարակական արդյունքի ընդհանուր ծավալի մեջ արդյունաբերության բաժինը ներկայումս կազմում է ավելի քան 70 տոկոս: Բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի ծավալով Սովետական Հայաստանն այսօր առաջնակարգ տեղ է գրավում զարգացած երկրների շարքում: 1969 թվականին հանրապետության ազգային եկամուտը, 1958 թվականի համեմատությամբ, աճեց երկուսուկես անգամ: Արդյունաբերության բուռն զարգացումը արմատական փոփոխություններ է մտցրել բնակչության սոցիալական կազմում: Համարձակ կարելի է ասել, որ մեր հանրապետությունում սովետական կարգերի ամենանշանակալի նվաճումներից մեկը ժամանակակից հզոր բանվոր դասակարգի առաջացումն է:

Հանրային արտադրության ոլորտում բանվոր դասակարգի վճռական դերը, ինչպես նաև բարձր կազմակերպվածությունը և անսահման նվիրվածությունը սոցիալիզմի գործին համընդհանուր սեր ու հարգանք են ստեղծել նրա նկատմամբ հասարակության բոլոր խավերում: Բանվոր դասակարգն իրավամբ համարվում է մեր հասարակության առաջատար ուժը: Նրա կազմում տեղի ունեցող քանակական փոփոխությունները զուգորդվում են որակական բարեփոխությունների հետ:

Հանրակրթական և պրոֆեսիոնալ բարձր պատրաստականություն, արտադրական բարձր կուլտուրա, հասարակական պարտքի խոր գիտակցում, քաղաքական և քաղաքացիական բարձր ակտիվություն. ահա Սովետական Հայաստանի բանվոր դասակարգի բնորոշ հատկանիշները: Բանվորի որակավորումն ընդհուպ մոտենում է տեխնիկական անձնակազմի մակարդակին: Արտադրության շատ տեղամասերում գործնականորեն իրականացվում են ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև եղած էական տարբերությունների վերացման խնդիրները:

Մենք հպարտությամբ ենք նշում, որ սովետական կարգերի շնորհիվ Հայաստանում աճել, մեծ ուժ է դարձել սեփական տեխնիկական մտավորականությունը, որն ի վիճակի է լուծելու արդի գիտա-տեխնիկական հեղափոխության դժվարին պրոբլեմները:

Սովետական Հայաստանը շինարարական հսկա հրապարակ է: Հայ հնագույն ճարտարապետության կանգուն և ավերված կոթողների կողքին վեր են խոյացել տասնյակ նոր քաղաքներ, բազմաթիվ հոյաշեն համակառույցներ, հուշարձաններ, մշակույթի պալատներ:

Երևանը, որի պատմության ակունքները ձգվում են մինչև հեռավոր հազարամյակները, ընդամենը կես դարում գավառային գյուղաքաղաքից վերածվեց ժամանակակից արդյունաբերական և կուլտուրական խոշոր կենտրոնի:

Հնգամյակի անցած ժամանակաշրջանում ամեն տարի Հայաստանում շա-

հագործման է հանձնվել միջին հաշվով 1 միլիոն 200 հազար քառակուսի մետր օգտակար բնակելի տարածություն:

Սոցիալիստական շինարարության տարիներին արմատական բարեփոխումներ տեղի ունեցան նաև գյուղատնտեսության մեջ: Կոլտնտեսությունների և սովխոզների արտադրական բազայի ամրապնդումը, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումը և աշխատանքի արտադրողականության բարձրացումը վճռական նշանակություն ունեցան գյուղի աշխատավորների նյութական, կենցաղային և կուլտուրական պայմանների արմատական բարելավման գործում: Անճանաչելիորեն փոխվել է գյուղը. փոխվել է արտաքին տեսքով, փոխվել է ըստ էության:

Կատարելով ոռոգման վերաբերյալ Իլյիչի խորհուրդը, Հայաստանի աշխատավորները սովետական իշխանության տարիներին լայնորեն ծավալեցին ջրաշինարարությունը, հանրապետության տերիտորիան գոտևորեցին ջրանցքներով: Հենց միայն ընթացիկ հնգամյակի անցած չորս տարիներին ոռոգելի դարձան ավելի քան 24 հազար հեկտար հողատարածություններ, ջրարբիացվեցին 102 հազար հեկտար արոտավայրեր: Կարելի է համարձակ ասել, որ ջրաշինարարության այսօրվա մակարդակը մեր հանրապետության գյուղատնտեսության ասպարեզում ձեռք բերած աչքի ընկնող նվաճումներից մեկն է:

Աննախընթաց տեղաշարժեր են կատարվել գյուղատնտեսական արտադրության աշխատատար պրոցեսների մեքենայացման ասպարեզում: Ներկայումս հանրապետության համայնական դաշտերում աշխատում են 9.503 տրակտոր, 1.624 կոմբայն: Բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզները էլեկտրիֆիկացված են:

Կուլտուրական հեղափոխության իրականացման շնորհիվ Սովետական Հայաստանում լայն զարգացում ստացան մշակույթը, ժողովրդական կրթությունն ու լուսավորությունը, գրականությունն ու արվեստը, մամուլը և ռադիոն: Հայ աշխատավորը հաղորդակից դարձավ մարդկության կուտակած գիտելիքներին ու գեղագիտական գանձերին: Ամբողջ հոգևոր կուլտուրայի արժեքները՝ դասական, թե ժամանակակից, այժմ ժողովրդական զանգվածների անկապտելի սեփականությունն են:

Հայաստանը առաջավոր գիտության օջախ է: Մեր գիտնականների առանձին հետազոտությունների արդյունքները համաշխարհային ճանաչման են արժանացել: Հայ գրականության և արվեստի ծաղկման լավագույն պայմաններ ապահովեց սոցիալիստական հասարակարգը: Ղեկավարվելով սոցիալիստական ռեալիզմի մեթոդով և ստեղծագործորեն յուրացնելով մեր դարավոր մշակույթի առաջադիմական ավանդույթները, Հայաստանի սովետական գրողներն ու արվեստագետները ստեղծեցին բազմաթիվ արժեքավոր գործեր, որոնցում մարմնավորվել է սոցիալիզմ կառուցող հայ աշխատավոր մարդու կերպարը:

Միայն սոցիալիստական պետականության պայմաններում հնարավոր դարձավ հայ անցյալի մշակույթի արժեքների համաժողովրդական պրոպագանդումը: «Սասունցի Դավիթ» էպոսի 1000-ամյակի, Մեսրոպ Մաշտոցի, Սայաթ-Նովայի, Թումանյանի, Կոմիտասի հոբելյանների, ինչպես նաև Երևանի 2750-ամյակի նշումը վերածվեց սովետական ժողովուրդների բարեկամության վառ ցույցի:

Ժողովրդական տնտեսության, արվեստի և գիտության, կրթության և աշխատավորների կոմունիստական դաստիարակության բնագավառներում ձեռք



բերած խոշոր, հիրավի պատմական հաղթանակները իրենց կնիքն են դրել բնակչության հավաքական դիմագծին: Վերջին հիսուն տարիներին ժողովրդի կյանքում տեղի ունեցած որակական փոփոխությունները, սոցիալիստական պետականության առկայության հանգամանքը, սովետական ժողովուրդների եղբայրական բարեկամության արգասաբեր իրողությունը վճռական հեղաբեկում են առաջացրել մարդկանց գիտակցության մեջ, աշխարհայացքում, կենցաղում: Արմատավորվել են նոր բարոյական նորմեր, վարքագիծ և ավանդույթներ: Սոցիալիստական սկզբունքը գնալով ավելի կարևոր տեղ է գրավում մարդկանց փոխհարաբերություններում: Հայ ժողովուրդն իր մեջ կրում է սոցիալիստական ազգի բոլոր լավագույն հատկանիշները:

Հետևողական ինտերնացիոնալիզմ, հավատարմություն սովետական ժողովուրդների բարեկամության սկզբունքներին, ատելություն նացիոնալիզմի բոլոր կարգի դրսևորումների դեմ, սովետական հայրենասիրություն, հումանիզմ, աշխատանքի և հանրային սեփականության նկատմամբ սոցիալիստական վերաբերմունք— ահա սոցիալիստական հայ ազգին վեհացնող բնորոշ առանձնահատկությունները:

Մեր հանրապետությունում ժողովրդական տնտեսության վերելքի համար հայ աշխատավորի հետ միասին կողք-կողքի, որպես նույն ընտանիքի հարազատ անդամներ, պայքարում են ռուսներ, ադրբեջանցիներ, քրդեր և շատ ուրիշ ազգերի ներկայացուցիչներ:

Մեր ժողովրդի սրտում անսասան է ռուս մեծ ժողովրդի նկատմամբ սիրո և երախտագիտության զգացումը: Հայ ժողովուրդը, ինչպես սովետական բոլոր ժողովուրդները, հանձին ռուս մեծ ժողովրդի, տեսնում է մեծ ու անշահախնդիր բարեկամի, ավագ եղբոր, հավասարների մեջ առաջինի: Ռուս ժողովրդի նկատմամբ հայ ժողովրդի դարերից եկող բարեկամությունը, նրա մեծագույն զավակի՝ Վ. Ի. Լենինի գաղափարներին զինվորագրվելուց հետո, վերաճել է հավիտենական անխախտ եղբայրության:

Ընկերնե՛ր: Մեր երկրում սոցիալիզմի կառուցման փորձն ապացուցեց, թե որքան ճիշտ էր Լենինը, երբ նշում էր, որ նոր հասարակարգի կառուցման գլխավոր գործիքը և անկապտելի պայմանը պրոլետարիատի դիկտատուրան է, բանվոր դասակարգի քաղաքական իշխանությունը, նրա ավանգարդ՝ կոմունիստական կուսակցության գլխավորությամբ:

ՍՄԿԿ-ն անշեղորեն հետևում է լենինյան այն ցուցումին, որ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումը հնարավոր է միայն մարքսիստական-լենինյան կուսակցության ղեկավարությամբ, կուսակցություն, որը զինված է առաջավոր տեսությամբ, կոփված մարտերում, նվաճել է աշխատավոր մասսաների վստահությունը, կարողանում է արտահայտել նրանց շահերը:

Մեր կուսակցությանը հարկ եղավ աշխատավորներին սոցիալիզմի շինարարության լենինյան ուղիով տանել ներքին և արտաքին ամենաբարդ պայմաններում: Հայտնի է, թե այդ ճանապարհին որքան պատնեշներ հանդիպեցին, թե մեր ժողովուրդը ինչպիսի անասելի դժվարություններ հաղթահարեց: Մեր կուսակցությունը հարկադրված եղավ ոչ միայն կոտրել տապալված դասակարգերի համառ դիմադրությունը, հաղթահարել տնտեսական և կուլտուրական հետամնացության ծանր ժառանգությունը, այլև ետ մղել սոցիալիզմի կառուցման լենինյան գլխավոր գծի վրա տրոցկիստների, «ձախ կոմունիստների», աջ կապիտուլյանտների և հակալենինյան այլ խմբերի գրոհները:

Կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովուրդը ապահովեց սոցիալիզմի կառուցումը, հաղթանակով դուրս եկավ ֆաշիզմի դեմ մղած ծանր մարտերից, բուժեց պատերազմի հասցրած վերքերը և նոր բարձունքների հասցրեց երկրի ժողովրդական տնտեսությունը, գիտությունն ու կուլտուրան:

Հենվելով մարքսիստական-լենինյան տեսության և սոցիալիզմի կառուցման պատմական հսկայական փորձի վրա, ռեալ կերպով գնահատելով մեր հասարակարգի հնարավորությունները, կուսակցությունը մշակել է երկրի հետագա զարգացման ամբողջական, գիտականորեն հիմնավորված ծրագիր: Կուսակցության ուշադրության կենտրոնում են գտնվում, ինչպես ընդգծեց XXIII համագումարը, կյանքի կողմից առաջադրված՝ քաղաքականության, էկոնոմիկայի և գաղափարախոսության հարցերը:

Հասարակական զարգացման օբյեկտիվ պահանջները հաշվի առնելով, կուսակցությունն իր հիմնական ուշադրությունը, սովետական ժողովրդի ջանքերը կենտրոնացնում է առաջին հերթին տնտեսական խնդիրների լուծման վրա, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման պրոբլեմների վրա: Արտադրողական ուժերի ինտենսիվ զարգացումը, ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները կոմունիստական շինարարության շահերին ծառայեցնելը, էկոնոմիկայի կառավարմանը ցուցաբերվող նոր մոտեցումը և, որպես արգասիք, արտադրության արդյունավետության բարձրացումը մեծ մասշտաբի ու բարդության պրոցեսներ են: Դրանց հաջող զարգացումով են պայմանավորված կոմունիզմի կառուցման մյուս բոլոր խնդիրների իրականացման թափն ու խորությունը, ժողովրդի բարեկեցության հետագա աճը, երկրի պաշտպանունակության ամրապնդումը, արդի համաշխարհային զարգացման ընթացքի վրա սոցիալիզմի ազդեցության աստիճանը: Ահա թե ինչու այդ հարցերը բազմակողմանի քննարկվեցին ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում, որի ընդունած որոշումները կուսակցության, սովետական բոլոր մարդկանց աշխատանքի ծրագիրն են:

Կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունում ընկեր Լ. Ի. Բրեժնևը մեր կուսակցության անունից մեկ անգամ ևս ընդգծեց, որ ՍՄԿԿ վերցրել է աշխարհում ամենաառաջավոր ժողովրդական տնտեսության ստեղծման գիծ, ամենաառաջավոր՝ թե՛ գիտատեխնիկական մակարդակով, և թե՛ տնտեսական արդյունավետությամբ: Այդ գլխավոր գիծն էլ որոշում է ՍՄԿԿ և՛ ամենօրյա, և՛ երկարաժամկետ նպատակները: Այդ ճանապարհի կարևոր փուլն է ընթացիկ հնգամյակը, որը տնտեսական ռեֆորմի և մեր երկրում գիտա-տեխնիկական հեղափոխության արագ ծավալման սկիզբը դրեց:

Վ. Ի. Լենինը կուսակցությանը սովորեցնում էր էկոնոմիկական, սոցիալ-քաղաքական պրոբլեմները և կոմունիստական բարձր գիտակցականության ձևավորման խնդիրները դիտել օրգանական միասնության մեջ: Այսօր ավելի է աճել այդպիսի մոտեցման հրատապությունը: Արդի պայմաններում սոցիալիզմը կոմունիզմին վերաճելու տեմպերը, առավել չափով, քան երբևէ, կախված են աշխատավորների գիտակցականության և կրթվածության, կուլտուրայի և որակավորման մակարդակից, անհատի սոցիալական ակտիվությունից:

Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները հանճարեղորեն կանխատեսում էին, որ կոմունիզմի պայմաններում մարդկային անհատի զարգացումը ինքնին կդառնա արտադրողական մեծագույն ուժ, արտադրության և հասարակության հարստության հիմնախարիսխը: Ահա թե ինչու կուսակցությունը կատարելագործում է գաղափարական ամբողջ աշխատանքը, բարձրացնում նրա արդյունավետությունը, մասսաներին զինում առաջավոր հասարակական, քաղաքական, բնագիտական և տեխնիկական գիտելիքներով, լայնորեն հաղորդակից դարձնում կոմունիստական կուլտուրային:



Կուսակցությունն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում յուրաքանչյուր մարդու մոտ կարգապահության և ինքնակարգապահության, մեր հասարակության սկզբունքների, օրենքների և նորմերի նկատմամբ հարգանքի զգացումի պատվաստմանը, կոլեկտիվում, գյուղում, քաղաքում, երկրում գործերի վիճակի համար նրա պատասխանատվության բարձրացմանը:

Կոմունիստական աշխարհայացքի և բարոյականության ձևավորումը տեղի է ունենում միջազգային ասպարեզում մղվող գաղափարական ամենասուր պայքարի պայմաններում: Կուսակցական կազմակերպությունները աշխատավորների քաղաքական դաստիարակության գործում պետք է հետևողականորեն անցկացնեն դասակարգային գիծը, բարձրացնեն քաղաքական զգոնությունը, անհաշտ պայքար մղեն ապոլիտիկության, մանր սեփականատիրական և քաղքենիական տրամադրությունների դեմ, սոցիալիզմի նվաճումների նկատմամբ նիհիլիստական վերաբերմունքի դրսևորումների դեմ, լենինյան կրքոտությամբ պաշտպանեն կոմունիզմի մեծ գաղափարները:

Լենինիզմի դրոշով, լենինյան կուսակցության ղեկավարությամբ մեր ժողովուրդը անցել է մեծ ու պանծալի ուղի՝ Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունից մինչև սոցիալիստական զարգացած հասարակարգի կառուցումը: Այդ ճանապարհը լենինյան ուսմունքի կենսահաստատ մեծ ուժի վկայությունն է, նրա պատմական ճշմարտացիության լավագույն հաստատումը: Կասկած չկա, որ ապագան նորանոր հաղթանակներ կբերի այդ անմահ ուսմունքին:

Ընկերնե՛ր: 20-րդ դարի հասարակական զարգացման ամբողջ ընթացքը, միջազգային սոցիալիզմի, բանվորական ու ազգային-ազատագրական շարժման փորձը լիովին հաստատում են լենինիզմի ինտերնացիոնալ բնույթը և համաշխարհային-պատմական նշանակությունը: Ծնվելով Ռուսաստանում, Լենինի գաղափարները միաժամանակ արտահայտեցին ո՛չ միայն ազգային, այլև համաշխարհային հասարակական զարգացման արմատական պրոբլեմները, բացահայտեցին դրանց լուծման ուղիներն ու միջոցները: Հենց այդ պատճառով էլ լենինիզմը դարձավ արդի դարաշրջանի մարքսիզմը, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, ամբողջ աշխարհի հեղափոխական բանվոր դասակարգի ինտերնացիոնալ տեսությունն ու պրակտիկան: Հենց այդ պատճառով էլ լենինիզմը վերածվեց աշխարհի կոմունիստական վերակառուցման հզոր գործոնի:

Այժմ արդեն ոչ միայն մեր երկրի, այլև մի շարք երկրների փորձով հաստատված է համաշխարհային սոցիալիստական հեղափոխության օրինաչափությունների և սկզբունքների մասին լենինյան ուսմունքի ճշմարտացիությունը: Սովետական ժողովրդի, սոցիալիստական սիստեմի երկրների ժողովուրդների ջանքերով դեպի նոր հասարակարգ տանող ուղին հիմնականում հարթված և փորձված է: Այդ ուղին բաց է բոլոր ժողովուրդների համար:

Ներկայումս կապիտալիստական աշխարհում անհնար է իրականացնել քիչ թե շատ խոշոր սոցիալական ակցիա՝ առանց հաշվի առնելու համաշխարհային սոցիալիզմի ուժերն ու պրակտիկան:

Իզուր են ժամանակակից իմպերիալիզմի առավել ագրեսիվ ջոկատների,

առաջին հերթին ԱՄՆ և ԳՖՀ իմպերիալիստների ճիգերը սոցիալիզմի միջազգային ազդեցությունը թուլացնելու համար: Աշխարհը փոխվել է արմատապես: Համաշխարհային ասպարեզում իմպերիալիզմը դադարել է իշխող ուժ լինելուց, նա անկարող է մարդկության զարգացման անիվը ետ շրջել:

Լենինիզմը հաղթանակ է տանում համաշխարհային ասպարեզում: Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի հարաճուն հեղափոխական պայքարը հիմքից քայքայում ու ցնցում է իմպերիալիզմի սիստեմը, կաշկանդում է համաշխարհային ռեակցիայի գործողությունները: Համաշխարհային ասպարեզում լենինիզմի հաղթանակի վկայությունն է ազգային-ազատագրական շարժման աննախադեպ թափը: «...Սոցիալիստական հեղափոխությունը,— ընդգծել է Վ. Ի. Լենինը,— միայն և գլխավորապես հեղափոխական պրոլետարների պայքարը չի լինի ամեն մի երկրում իր բուրժուազիայի դեմ,— ոչ, նա իմպերիալիզմի կողմից ճնշված բոլոր գաղութների և երկրների, բոլոր կախյալ երկրների պայքարը կլինի միջազգային իմպերիալիզմի դեմ» (Երկեր, հ. 30, էջ 185):

Ասիայում, Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում ազգային-ազատագրական հեղափոխությունների ալիքը դեն նետեց գաղութային ստրկության համաշխարհային սիստեմը: Միջազգային ասպարեզում երևացին ավելի քան 70 անկախ նոր պետություններ:

Լենինիզմի համաշխարհային-պատմական հաղթանակն է միջազգային կոմունիստական շարժման արագ աճը և ամրապնդումը, նրա վերածվելը մեր դարաշրջանի ամենաազդեցիկ քաղաքական ուժի:

1919 թվականին, երբ Վ. Ի. Լենինը ստեղծում էր Կոմինտերնը, աշխարհում կար ընդամենը 400 հազար կոմունիստ: Մեր օրերում 89 կոմունիստական ու բանվորական կուսակցություններն իրենց շարքերում միավորում են մոտ 50 միլիոն կոմունիստների և իրենց հետևից տանում հարյուր միլիոնավոր աշխատավորների: Լենինի պատգամներին հավատարիմ, կոմունիստական կուսակցությունները անհաշտ պայքար են մղում ընդդեմ աջ և «ձախ» ռևիզիոնիզմի, հանուն իրենց շարքերի, համաշխարհային բանվորական շարժման, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի միասնության ու համախմբման:

Լենինյան գաղափարների ստեղծագործական կիրառման օրինակ հանդիսացավ 1969 թվականի հունիսին Մոսկվայում տեղի ունեցած կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունը: Այն ցուցադրեց արդի հասարակական զարգացման հրատապ պրոբլեմների նկատմամբ մարքսիստական մոտեցում, նպաստեց մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքային հիման վրա կոմունիստական կուսակցությունների համախմբմանը:

Կոմունիստական ու բանվորական 75 կուսակցությունների ներկայացուցիչները Իլյիչի ծննդյան 100-ամյակի առթիվ ընդունած իրենց դիմումի մեջ միահամուռ կերպով և ոգևորությամբ հայտարարեցին. «Այսօր մենք Լենինի ուսմունքի մասին լիակատար հիմունքով ասում ենք այն նույն խոսքերով, որոնցով նա բնորոշել է մարքսիզմը՝ այդ ուսմունքն ամենազոր է, որովհետև ճշմարիտ է»:

Ներկա պայմաններում մոնոպոլիստական բուրժուազիան ձգտում է օգտագործել բոլոր հնարավորությունները, որպեսզի պահպանի իր հիմնական դիրքերը էկոնոմիկայում, քաղաքականության, գաղափարախոսության մեջ:



Սակայն, վերջին հաշվով, համաշխարհային զարգացման տրամաբանությունն ավելի համոզիչ ու ավելի ակնառու կերպով է բացահայտում բուրժուական հասարակարգի դատապարտվածությունը:

Կոմունիստները, սովետական բոլոր մարդիկ հպարտանում են նրանով, որ մեր ժողովրդին վիճակվեց կատարել գլխավոր, վճռական դերը մարդկության ճակատագրի արմատական շրջադարձի իրականացման գործում, որ նա ներդրել և ներդնում է հսկայական ավանդ համաշխարհային մասշտաբով լենինիզմի հաղթանակի գործում:

Մարդկության պատմական ճակատագրի համար անգնահատելի նշանակություն ունի Սովետական Միության արտաքին քաղաքականությունը, որի սկզբունքները և գլխավոր ուղղությունը ձևակերպվել են Լենինի կողմից: Այդ քաղաքականությունն ուղղված է այն բանին, որպեսզի ապահովվեն սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման խաղաղ պայմաններ, ստեղծվի միջազգային առավել նպաստավոր մթնոլորտ աշխատավորների ազատագրական պայքարի, ժողովուրդների սոցիալական և տնտեսական առաջադիմության համար:

Հակադիր կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը, նշում էր Լենինը, ենթադրում է սոցիալիզմի քաղաքական, էկոնոմիկական և գաղափարական սուր պայքարը կապիտալիզմի դեմ: Այժմ չկա աշխարհում այնպիսի մի հեղափոխական շարժում, ազգային և սոցիալական ազատագրության համար ժողովրդական մասսաների ելույթ, որը գործնական օգնություն չստանա ՍՄԿԿ և Հոկտեմբերի հայրենիքի կողմից: Մեր երկիրը վճռականապես հանդես է գալիս Վիետնամում ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիայի, Մերձավոր Արևելքում իսրայելական զավթիչների իմպերիալիստական ոտնձգությունների դեմ, ակտիվորեն պայքարում է հանուն կայուն խաղաղության: Դրա հետ մեկտեղ կուսակցությունը, հավատարիմ լենինյան պատվիրանին, ձեռնարկում է բոլոր անհրաժեշտ միջոցները սովետական պետության պաշտպանական հզորությունն ամրապնդելու համար:

Մայիսի 9-ին սովետական մարդիկ հանդիսավոր կերպով կնշեն Հայրենական մեծ պատերազմում տարած հաղթանակի 25-ամյակը: Հիտլերյան ֆաշիզմի՝ միջազգային իմպերիալիզմի հարվածային ուժի ջախջախումը հանդիսացավ սովետական ժողովրդի մեծ սխրագործությունը: Այդ հաղթանակը համոզիչ կերպով ցուցադրեց սովետական կարգերի անսասանությունը: Ջախջախելով ֆաշիստական Գերմանիային, սովետական ժողովուրդը համաշխարհային իմպերիալիզմին հասցրեց ռազմական, բարոյա-քաղաքական ծանր պարտություն, խորապես ներգործելով պատմական զարգացման հետագա ամբողջ ընթացքի վրա:

Սովետական պետության արտաքին քաղաքականությունը արտահայտում է համաշխարհային պատմության նոր դարաշրջանի նպատակները, բովանդակությունը և հեռանկարները, համապատասխանում է սոցիալիզմի և համաշխարհային հեղափոխական առաջադիմության վսեմ շահերին: Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, սովետական ժողովուրդը առաջիկայում ևս հետևողականորեն կիրականացնեն լենինյան արտաքին քաղաքականությունը, անշեղորեն կպաշտպանեն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի գործը, կբազմապատկեն իրենց ավանդը հեղափոխական բոլոր ուժերի համախմբման և ծավալման ինտերնացիոնալ գործում:

Մեր մեծ հայրենիքի ժողովուրդները Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը դիմավորում են հասարակական կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած







պատմական նոր նվաճումներով: Պանծալի հոբելյանի պատվին ծավալված համաժողովրդական մրցությունը հանդիսացավ մեծ առաջնորդի նկատմամբ ժողովրդի սիրո և անսահման երախտագիտության նոր, փայլուն վկայությունը:

Ապրիլի 11-ին անցկացված համաժողովրդական շաբաթօրյակը մեկ անգամ ևս ցուցադրեց սովետական բոլոր մարդկանց, մեր հանրապետության աշխատավորների աներեր հավատարմությունը լենինյան պատգամներին, հեղափոխական և աշխատանքային ավանդույթներին: Աշխատանքի այդ տոնին մասնակցեցին Հայաստանի մոտ 800 հազար բանվորներ ու ծառայողներ: Հնգամյակի ֆոնդը ներդրվեց մի քանի միլիոն ռուբլու համախառն արտադրանք:

Լենինի անունը ոգևորության անսպառ աղբյուր է սովետական մարդկանց համար: Սովետական ժողովրդի պատմական հաղթանակների մեջ մարմնավորվում են Վ. Ի. Լենինի անմահ գաղափարները: Լենինը ապրում է, որովհետև ապրում ու հաղթանակում է լենինիզմը:

Վ. Ի. Լենինի գործը գտնվում է հուսալի ձեռքերում: Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը և նրա լենինյան Կենտրոնական կոմիտեն մեր մեծ Հայրենիքի ժողովուրդներին Լենինի կանխանշած ուղիով առաջնորդում են դեպի կոմունիզմ:

Կոմունիզմի աշխարհաերթ հաղթարշավում մեզ հովանի է մեծ Լենինի անպարտելի դրոշը:

Կանցնեն տարիներ, կանցնեն դարեր ու հազարամյակներ, բայց Իլյիչի գաղափարներն ու գործերը երբեք չեն խամրի: Իլյիչը կծնվի յուրաքանչյուր նոր սերնդի հետ:

Ժամանակն անզոր է Լենինի հանդեպ, Լենինը հավերժ կապրի:

Փա՜ռք կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդին:

Կեցցե՛ Լենինի ստեղծած, լենինյան պատգամներին մշտապես հավատարիմ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը:

Կեցցե՛ լենինիզմը:

(Բուռն, երկարատև ծափահարություններ):



# ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԱՆԻ ՔՍԱՆՀԻՆԳԱՄՅԱԿԸ

Ա. Ա. ԳՐԵՉԿՈ

ՍՍՀՄ պաշտպանության մինիստր, Սովետական Միության մարշալ

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄ

Մայիսի 9-ին լրացավ Հայրենական մեծ պատերազմում Սովետական Միության տարած հաղթանակի 25 տարին: Այդ պատերազմում մեր ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ մասսայական հերոսության օրինակներ տվեց ռազմաճակատում և թիկունքում, հանուն սոցիալիզմի անմահ սխրանքներ կատարելով: Այսօր հրապարակում ենք ՍՍՀՄ պաշտպանության մինիստր, Սովետական Միության մարշալ Ա. Ա. Գրեչկոյի՝ «Պատմության մեջ չտեսնված հաղթանակ» հոդվածից մի հատված: Հոդվածը վետեղված է «1945 թվականի մայիսի 9-ը» ժողովածուում, որը տպագրության է պատրաստել «Գիտություն» հրատարակչությունը:

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ժողովրդի՝ ֆաշիստական զավթիչների դեմ մղած հայրենական մեծ պատերազմի ամբողջ ընթացքն ու ելքը հաստատեցին պատմության մեջ, մասնավորապես, արդիական պատերազմներում ժողովրդական մասսաների վճռական դերի վերաբերյալ պատմական մատերիալիզմի դրույթի խոր հիմնավորվածությունը:*

*Մարքսիզմ-լենինիզմի տեսակետից պատերազմն ինքնաբալ նշանակություն չունի, ինչպես կարծում են շատ բուրժուական տեսաբաններ և դրանց թվում, մասնավորապես, նրանք, ովքեր բռնության տեսությունն են քարոզում: Այդ տեսությանը ժամանակին Էնգելսը հուժկու հարված հասցրեց համբավոր «Անտի-Դյուրինգ» երկում: Այնուամենայնիվ, այդ տեսությունը մինչև այժմ էլ պահպանվում է բուրժուական գաղափարախոսների զինանոցում: Բանն այն է, որ պատերազմը համարելով մարդու մշտական և անխուսափելի ուղեկիցը, իսկ երբեմն նաև բարերար ուժ, բռնության տեսությունը հանդիսանում է այն ավազակության և ավանտյուրիզմի արդարացումն ու «գի-*

տական» բաղադրամասն, որով հագեցած են իմպերիալիզմի քաղաքականությունը, նոր մեծ ու փոքր պատերազմների նախապատրաստման ու սանձազերծման նրա պլանները։

Մարքսիստական ուսմունքը պատմական պրոցեսում առաջնային դերը հատկացնում է ոչ թե զինված բռնության ամենազորությանը, այլ հասարակության նյութական կենսապայմանների զարգացմանը, ժողովրդի, ժողովրդական մասսաների գիտակցական գործունեությանը, որոնք իրենց աշխատանքով ստեղծում են նյութական ու հոգևոր արժեքներ և այդ ստեղծագործության պրոցեսում վերափոխում են աշխարհն ու իրենք էլ վերափոխվում են։ Իսկ պատերազմները մարքսիզմը համարում է ժամանակավոր, անցողիկ բնույթի երևույթ։ Դրանք ծագել են դասակարգային հասարակության պայմաններում և մարդկանց կյանքից կվերանան հասարակության հակամարտ դասակարգերի բաժանման ոչնչացմամբ։

Մարդու կողմից մարդու շահագործման սիստեմը և մարդու կողմից մարդուն բնաջնջելու սիստեմը, ըստ էության, այդ միևնույն հասարակարգի երկու կողմերն են, որը հիմնված է «մասնավոր սեփականության սրբազան սկզբունքի» վրա։ Եվ ամբողջ աշխարհում միայն սոցիալիզմի հաղթանակը կարող է ստեղծել այնպիսի հասարակություն, «որի միջազգային սկզբունքը կլինի խաղաղություն, որովհետև յուրաքանչյուր ժողովուրդ կունենա միևնույն տիրակալը՝ աշխատանքը» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկ., հ. 17, էջ 5)։

Պատերազմը, որպես սոցիալ-քաղաքական երևույթ, այս կամ այն դասակարգի, պետության քաղաքականության շարունակությունն ու գործիքն է։ Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը և Վ. Ի. Լենինն այդ տեսանկյունից էին դիտում յուրաքանչյուր պատերազմ, բացահայտելով նրա բնույթն ու պատճառները։

Հիտլերյան կոալիցիայի արմատական թուլությունը վերջին հաշվով այն էր, որ նրա զինվորական զանգվածները, որոնք արյուն էին թափում ռազմադաշտերում, և բանվորական զանգվածները, աշխատավորները (իսկ նրանց թվում շատ օտարերկրացի գերիներ կային) պետք է հանուն պատերազմի իրենց ֆունկցիաները կատարեին, չունենալով բարձր բարոյական նպատակներ։ Շահախնդրություն, հնազանդություն, հարկադրանք՝ ահա նրանց բոլոր «խթանները»։

Հակահիտլերյան կոալիցիայի երկրներում այլ պատկեր էր նկատվում։ Համաշխարհային տիրապետության ձգտող և շատ երկրների անկախությանն սպառնացող ագրեսորի դեմ մղվող ազնիվ պայքարի խնդիրները չափազանց լուրջ մոբիլիզացնող հանգամանք էր։ Ուստի ժողովրդական զանգվածները թիկունքում և ռազմաճակատում հանդես էին գալիս ոչ իբրև իրենց կառավարությունների պարզապես կամակատարներ։ Նրանք գործում էին իրենց պայքարի նշանակությունը գիտակցելով։ Ամենալայն ժողովրդական խավերի բարձր ակտիվությունը տապալեց բուրժուական կառավարողների հակասովետական և հակաժողովրդական պլանները, ձախողեց ֆաշիստական ագրեսորների հետ գործարքներ կնքելու փորձերը, առաջ բերեց դիմադրության շարժման հզոր ալիք, հանուն ազգային և սոցիալական ազատագրության պայքարի հանեց շատ երկրների ժողովուրդներին։

Ժողովուրդների կամքը, կառավարությունների քաղաքականության վրա նրա հարաճուն ազդեցությունը փոխեցին երկրորդ համաշխարհային պատերազմի բնույթը։ Իմպերիալիստական պատերազմն այն պահից, երբ ՍՍՀՄ-ը



մտավ նրա մեջ, վերջնականապես վերաճեց հակաֆաշիստական ազատագրական պատերազմի։

Երկրորդ համաշխարհային պատերազմի բնույթի փոփոխման, ինչպես և նրա հաղթական նպատակների նվաճման գործում վճռական դերը պատկանում է Սովետական Միությանը։ Նրա հերոսական անզիջում պայքարը ոգեշնչող օրինակ տվեց աշխարհի ազատասեր ժողովուրդներին։ Իր վրա վերցնելով գերմանա-ֆաշիստական բանակների դեմ պայքարի հիմնական ծանրությունը, ՍՍՀՄ-ը իրավացիորեն առաջատար դեր խաղաց ամբողջ հակահիտլերյան կոալիցիայում։ Ֆաշիզմի դեմ մղվող պայքարում սովետական ժողովրդի դաշնակիցներ դարձան աշխարհի բոլոր երկրների առաջադեմ ուժերը, իսկ մեծ Հայրենականը՝ երկրորդ համաշխարհային պատերազմի գլխավոր և վճռական բաղկացուցիչ մասը։

Սովետական Միությունում, նրա վրա կատարված հարձակումից ընդամենը մի քանի տարի առաջ, սոցիալիզմը հաղթանակել էր լիակատար կերպով։ Դա նշանակում էր, որ սովետական հասարակությունը ենթարկվեց արմատական փոփոխությունների, որոնց շնորհիվ անչափ աճեցին աշխատավոր զանգվածների գիտակցական, ստեղծագործական գործունեությունը, նրանց ազդեցությունը սովետական պետության կյանքի ու աշխատանքի բոլոր կողմերի վրա։ Իսկ սոցիալ-տնտեսական փոփոխությունները, սովետական ժողովրդի պատմության մեջ չտեսնված բարոյա-քաղաքական միասնությունը, նրա դասակարգային, տնտեսական և քաղաքական շահերի ընդհանրությունը, այն հանգամանքի անհրաժեշտ նախադրյալն ու հաստատուն հիմքն էին, որ պատերազմը դարձավ հիրավի ժողովրդական, ազատագրական, հաղթանակած սոցիալիզմի երկրի պատերազմ իմպերիալիզմի հարվածային ուժերի դեմ։ Սոցիալիզմը սովետական ժողովրդին տվեց հզոր ուժեր, որոնք լիովին դրսևորվեցին պատերազմական ծանր փորձությունների տարիներին։

ԱՅՐԵՆԱԿԱՆ մեծ պատերազմի համաժողովրդական բնույթը, թշնամու նկատմամբ հաղթանակ նվաճելու գործում ժողովրդական զանգվածների վճռական դերն իրենց կոնկրետ արտահայտությունը գտան ռազմադաշտերում զինված կռվում բազմամիլիոն բանակի մասնակցության մեջ, երկրի թիկունքում թշնամու նկատմամբ սովետական մարդկանց հանուն հաղթանակի թափած հերոսական աշխատանքում՝ մասսաների չտեսնված հայրենասիրական ակտիվության մեջ, որն ուղղված էր ռազմաճակատին համաժողովրդական օգնություն կազմակերպելու նպատակին։

Համառոտակի կանգ առնենք այդ հարցերից յուրաքանչյուրի վրա։

Պատերազմի նախօրյակին և ընթացքում սովետական զինված ուժերի մասսայականության աճի մասին են խոսում հետևյալ տվյալները։ Առ 1938 թվականի հունվարի 1-ի դրությամբ, բանվորա-գյուղացիական կարմիր բանակի շարքերում ծառայում էին 1,5 միլիոն մարդ։ Հետագա եռամյա ժամանակաշրջանը կարելի է անվանել սովետական զինված ուժերի նախապատերազմյան ծավալման ժամանակաշրջան։ Այդ ժամկետում նրանց քանակական կազմն ավելացավ գրեթե երեք անգամ և 1941 թվականի հունվարին հասավ 4,2 միլիոն մարդու։ Այդպիսի աճը, իհարկե, թելադրված էր մեր հայրենիքի անվտանգության նկատառումներով։ Երկրորդ համաշխարհային պատերազմի

հրդեհն արդեն ընդգրկել էր Եվրոպայի և Ասիայի շատ երկրներ։ Այն սպառնում էր նաև սովետական երկրին։

ՍՍՀՄ-ի վրա ֆաշիստական Գերմանիայի հարձակման ակնհրև վտանգի պայմաններում մեր զինված ուժերի քանակական կազմն առ 1941 թվականի հունիսը հասավ 4,6 միլիոն մարդու, որոնցից 2,9 միլիոնը գտնվում էր արևմտյան սահմանամերձ օկրուգներում և նավատորմիղներում։

Ֆաշիստական Գերմանիայի զինված ուժերում, որոնց նախապատերազմյան ծավալումը հիմնականում ավարտված էր, այդ ժամանակ հաշվվում էր 8,5 միլիոն մարդ։ Զորքերի ընդհանուր քանակությամբ 1 : 1,7 հարաբերակցությունը որոշակի գերակշռություն էր տալիս հակառակորդին։ Սակայն է՛լ ավելի վտանգավոր էր այն, որ հիտլերյան և նրան դաշնակից զորքերից 5,5 միլիոնը գտնվում էր մեր արևմտյան սահմաններում, պատրաստ վիճակում՝ առաջին իսկ ազդանշանին առաջ նետվելու։ Հենց դրա մեջ էր թաքնված առանձնապես լուրջ վտանգը Սովետական Միության ժողովուրդների համար։

Միանգամայն բնական է, որ սովետական զինված ուժերի քանակական աճն առավել բուռն էր Հայրենական մեծ պատերազմի սկզբին։ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1941 թվականի հունիսի 22-ի հրամանագրի հիման վրա պատերազմի առաջին ութ օրերի ընթացքում, առ 1-ը հուլիսի, զինված ուժեր մոբիլիզացվեցին 5,3 միլիոն մարդ՝ 1905—1918 թվականներին ծնված զինապարտների թվից։ Այդպիսի հզոր մարդկային ռեզերվները հնարավորություն տվեցին ծավալելու շատ նոր միավորումների ու զորամասերի ձևավորումը, որոնք բացառիկ դեր կատարեցին պատերազմի ընթացքում։

Գլխավոր հրամանատարության զորակայանի ձեռքում ռեզերվների առկայությունը հնարավորություն տվեց գործող ռազմաճակատները սիստեմատիկաբար ուժեղացնելու նոր միավորումներով, ստորաբաժանումներով, զորամասերով, թեև հնարավոր է ընդգծել, որ դրանք դեռ քիչ էին, և մենք այդ պատճառով չափազանց ծանր ժամանակներ ենք ապրել։

Պատերազմի միայն առաջին հինգ ամիսներին գործող բանակ ուղարկվեցին 291 դիվիզիա և 94 բրիգադա։ Դա հնարավորություն տվեց պաշտպանություն ստեղծել նոր դիրքերում, վերացնել թշնամական զորքերի պատճառած ճեղքվածքները, հակահարված հասցնելու նպատակով անհրաժեշտ ուժեր խմբավորել և այլն։ Վերջ ի վերջո թշնամու առաջխաղացումը կասեցվեց, ռազմաճակատը կայունացավ։

Այն մասին, թե թշնամու համար ինչպես անսպասելի և որքան արդյունավետ էր սովետական ռազմաճակատների համալրումը նոր միավորումներով, կարելի է դատել ըստ 1941 թվականի օգոստոսի 11-ի այն գրառումների, որ կատարել է իր օրագրում գերմանա-ֆաշիստական ցամաքային ուժերի գլխավոր շտաբի պետ Գալդերը. «Պատերազմի սկզբում,— նշում է նա,— մենք հույս ունեինք, որ մեզ կվիճակվի գործ ունենալ հակառակորդի մոտավորապես 200 դիվիզիայի հետ։ Այժմ մենք գիտենք, որ դրանք հասնում են 360-ի... Եթե դրանցից տասը ջախջախվում են, ապա ռուսները դուրս են բերում տաս նոր դիվիզիաներ...»։

Սովետական զինված ուժերն անհրաժեշտ քանակության ռեզերվներով համալրելն ապահովվում էր ամբողջ պատերազմի ընթացքում, թեև դա զուգորդված էր հսկայական դժվարությունների հաղթահարմամբ։ Բավական է ասել, որ բանակ մոբիլիզացվեցին ավելի քան 30 հասակի տղամարդիկ, ինչպես նաև ավելի քան 530 հազար կին։



Կարմիր բանակը և ռազմա-ծովային նավատորմն առավել մեծ քանակության ուժեր ունեին պատերազմի եզրափակիչ էտապում։ 1945 թվականի սկզբին զինված ուժերի կազմում հաշվվում էր 11.365 հազար մարդ, որոնցից 6 միլիոն մարդ գտնվում էր ռազմաճակատում, գերմանա-ֆաշիստական հափշտակիչների դեմ մղվող կռվում։

ՍՍՀՄ զինված ուժերի արագ ծավալումը և վերականգնումը պատերազմի ընթացքում սովետական սոցիալիստական հասարակարգի անսպառ հզորության, սովետական պետության հսկայական ռազմա-մոբիլիզացիոն հնարավորությունների, կոմունիստական կուսակցության ռազմա-կազմակերպական բուռն գործունեության պերճախոս վկայություն էին։

ՍԿԱՅԱԿԱՆ զինված ուժերը, ռազմաճակատներում մարտական գործողությունների չտեսնված թափն ու լարվածությունը վիթխարի նյութական միջոցներ էին պահանջում։ Պատերազմի սկզբում մեր անհաջողություններն ու կորուստները, թշնամու կողմից երկրի մի զգալի մասի օկուպացիան— դրությունը բարդացրին։ Այդ պայմաններում սովետական մարդիկ հիրավի ինչպիսի՜ անդրդվելի կամք, ինչպիսի՜ հերոսություն պետք է դրսևորեին սովետական ռազմիկներին ապահովելու սպառազինությամբ, մարտական տեխնիկայով, զինամթերքով, վառելիքով, պարենով, հանդերձանքով և շատ այլ բաներով։ Կուսակցության լոզունգը՝ «Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար», սովետական ժողովրդի կյանքում և գործունեության մեջ հիրավի ձեռք էր բերել օրենքի ուժ։

Զինված ուժերի մատակարարումը կախված էր ռազմական արդյունաբերության կազմակերպումից։ Բայց պատերազմի հենց սկզբում սովետական երկրի առաջ ծառացավ մի նոր դժվարին խնդիր, որը կապված էր արդյունաբերությունը խոր թիկունքում վերաբազավորելու և նոր տեղում նրա աշխատանքը կազմակերպելու անհրաժեշտության հետ։ Խնդիրը լուծվեց հաջողությամբ։ 1941 թվականի երկրորդ կեսի ընթացքում ավելի քան 1.500 ձեռնարկություններ և 10 միլիոն մարդ փոխադրվեցին արևելյան շրջանները։ Արտադրաուժերի պատմության մեջ չտեսնված այդ տեղաշարժերը հնարավոր դարձան միայն տնտեսության սոցիալիստական սիստեմի պայմաններում։

Պատերազմի պահանջներին համապատասխան ժողովրդական տնտեսության վերակառուցումն ավարտելուց հետո երկրում ծավալվեց աննախընթաց աճող ռազմական արդյունաբերությունը։ Մարդկային և նյութական միջոցների պլանային օգտագործումը, բանվորների ու ծառայողների, ինժեներների ու տեխնիկների անօրինակ աշխատանքային խանդավառությունը հնարավորություն տվեցին կարճ ժամկետում ֆաշիստական Գերմանիային գերազանցել սպառազինության ու մարտական տեխնիկայի կարևորագույն տեսակների արտադրությամբ։

Ահա, օրինակ, ինչպես էր աճում սպառազինության, տանկային արդյունաբերության, ավիացիոն արդյունաբերության, ռազմամթերքների արդյունաբերության ժողկոմատների ռազմական արտադրանքի թողարկումը. 1941 թվականին այդ արտադրանքը կազմում էր, նախորդ տարվա համեմատությամբ, 140 տոկոս, 1942 թվականին՝ 186, 1943 թվականին՝ 242, 1944 թվականին՝ 251 տոկոս։

Չորս տարվա ընթացքում, 1941 թվականի հուլիսի 1-ից մինչև 1945 թվա-

կանի հուլիսի 1-ը ՍՍՀՄ արդյունաբերությունն արտադրեց 12 միլիոն հրացաններ և կարաբիններ, 6,1 միլիոն ատրճանակներ և գնդացիրներ, 347,9 հազար ականանետներ. 188,1 հազար հրանոթներ, 95,1 հազար տանկեր և ինքնագնաց-հրետանային տեղակայանքներ, 108 հազար մարտական ինքնաթիռներ և 583,4 միլիոն հրետանային արկեր ու ականներ։ Դա զգալիորեն ավելի էր, քան արտադրում էր ֆաշիստական Գերմանիայի արդյունաբերությունը։ 1941—1944 թթ. նա, օրինակ, կարողացավ արտադրել տանկեր ու գրոհային հրանոթներ 53,8 հազար, մարտական ինքնաթիռներ՝ 78,9 հազար։ Դժվար չէ նկատել, որ գերմանական յուրաքանչյուր տանկին սովետական թիկունքի աշխատողները պատասխանում էին գրեթե երկու սովետական տանկով, յուրաքանչյուր ինքնաթիռին՝ սովետական մեկ ու կես ինքնաթիռով։

Հատկանշական է, որ, սկսելով պատերազմը, հիտլերյան ստրատեգները առանձին հույսեր էին դնում հենց տանկերի ու ավիացիայի վրա։ Բայց սովետական բանվորի և սովետական զինվորի ջանքերով այդ զենքը աստիճանաբար խլվեց թշնամու ձեռքից։ Հիտլերականները զրկվեցին իրենց հիմնական առավելությունից, և կարմիր աստղանի տանկերն ու ինքնաթիռներն արդեն գերիշխում էին մարտադաշտում։

Սովետական ռազմական արդյունաբերությունը գերմանականին գերազանցեց ոչ միայն քանակով, այլև զենքի շատ տեսակների որակով։ Գիտնականների և կոնստրուկտորների ստեղծագործական միտքը, զուգակցելով միլիոնավոր բանվորների խանդավառ աշխատանքին, հնարավորություն տվեց ստեղծելու T—34 և KB տանկերը, որոնք իրենց տակտիկական-տեխնիկական տվյալներով գերազանցում էին ցանկացած որևէ երկրի համապատասխան տիպի տանկերին։ Նույն բանը կարելի է ասել Իլ—2 և Իլ—10 գրոհող-ինքնաթիռների մասին։ Իրեն հավասարը չուներ սովետական ռեակտիվ հրետանին։ Բարձր որակով աչքի էին ընկնում սովետական զենքի այլ տեսակները ևս։

Սովետական զինված ուժերին սպառազինություն և մարտական տեխնիկա մատակարարող բանվոր դասակարգի բարձր աշխատանքային խանդավառության բացառիկ վառ ցուցանիշ է ներկայացնում պատերազմական ժամանակում արդյունաբերության կարևորագույն ճյուղերում մեկ բանվորին ընկնող արտադրանքի աճը։ Արդեն 1941 թվականին այդ արտադրանքը հասավ 110 տոկոսի՝ 1940 թվականի մակարդակի համեմատությամբ, 1942 թվականին բարձրացավ 130, 1943 թ. 139 և 1944 թ. մինչև 142 տոկոսի։

Արագ կերպով կազմավորված ռազմական արտադրությունը հնարավորություն տվեց ուժեղ թշնամու դեմ կռվի համար սովետական զինված ուժերը հագեցնել հայրենական մարտական տեխնիկայով և սպառազինությամբ, որոնք ստեղծվում էին սեփական տնտեսական միջոցների հաշվին, սովետական աշխատավորների ձեռքով։ Այս բանն ասել անհրաժեշտ է այն պատճառով, որ բուրժուական պրոպագանդիստները քիչ ջանքեր չէին գործադրում չափազանցնելու այն ռազմա-տեխնիկական օգնությունը, որն իր ժամանակին կարմիր բանակին ցույց են տվել դաշնակից պետությունները։

Հաշվումները ցույց են տալիս, որ լենդ-լիզի համաձայն կատարված մատակարարումները մեր սեփական արտադրության համեմատ կազմել են զենիթային հրետանու՝ մոտ 2, տանկերին՝ 7 և ինքնաթիռներին՝ մինչև 13 տոկոսը։ Այս թվերն ինքնին խոսում են իրենց մասին, դրանք հիմք չեն տալիս մեզ տրամադրված օգնության նշանակությունը չափազանցնել քանակական տեսակետից։ Բացի այդ, հարկավոր է ընդգծել, որ արտասահմանից ստացված սպառազինության նմուշները նաև իրենց որակով անհրաժեշտ պահանջներին չէին բավարարում։ Դրանց մի մասը հնացած տեսակի էին, իսկ մյուս մասը լիովին չէր համապատասխանում սովետա-գերմանական ռազմաճակատի մարտական գործողությունների բնույթին։ Դա առանձնապես վերաբերում է տանկերին, որոնք մեր տանկիստների շրջանում լավ համարում չունեին, որովհետև մարտադաշտում դյուրախոցելի էին։

Հայրենական մեծ պատերազմի տարիներին բացառիկ մեծ դժվարություններ կրեց գյուղացիությունը։ Համընդհանուր մոբիլիզացիան խիստ կրճատեց գյուղական բնակչության աշխատունակ մասը։ Կոլտնտեսություններից ու սովխոզներից վերցվում էին շատ տրակտորներ, ավտոմեքենաներ, ձիեր։ 1942 թվականին նրանց տրակտորային պարկը համարյա կրկնակի անգամ պակաս էր նախապատերազմյանի համեմատ, բեռնատար ավտոմեքենաների պարկը կրճատվեց 80 տոկոսով։ Գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան խիստ թուլացավ։ Եվ, այնուամենայնիվ, մեր կոլտնտեսություններն ու սովխոզները 1941—1944 թթ. մթերեցին 4312 միլիոն փութ հացահատիկ, այն ժամանակ, երբ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին նախասովետական Ռուսաստանում մթերված ու գնված է եղել երեք անգամ պակաս հացահատիկ։ Սովետական պետությունը, իհարկե, սննդամթերքների ամենախիստ խնայողություն կատարելով միայն կարողացավ ապահովել ինչպես բանակը, այնպես էլ երկրի ամբողջ բնակչությանը։

Զորքի համար անգնահատելի օգնություն էր, հատկապես պատերազմի առաջին տարիներին, բնակչության ուժերով վիթխարի քանակությամբ պաշտպանական շինություններ ու հարմարություններ կառուցելը։ Հերոս քաղաքներ Մոսկվայի, Լենինգրադի, Սևաստոպոլի, Կիևի, Օդեսայի, Ստալինգրադի և ուրիշ շատ այլ խոշոր բնակավայրերի հաջող պաշտպանությանը նպաստեց այն հանգամանքը, որ դրանք կառուցապատվեցին հակատանկային խանդակներով, դզոտներով, խրամատներով և այլ ամրաշինական կառուցումներով։ 1941 թվականի ամռանն ու աշնանը պաշտպանական աշխատանքներին մասնակցել են մոտ 10 միլիոն մարդ։ Հիրավի վիթխարի՜ էր կատարված աշխատանքների ծավալը։

Սովետական ժողովուրդը կամովին հանձն առավ հոգալու պատերազմի հետ կապված պետական ծախսերի զգալի մասը։ Ռազմաճակատներում մարտեր մղելու տարիներին պաշտպանության պետական ֆոնդը մուծվեց զանազան եղանակներով (դրամական միջոցների, պետական փոխառության պարտատոմսերի, թանկարժեք իրերի, դրամա-իրային վիճակախաղերի իրացման և այլ ձևերով) 118 միլիարդ ռուբլի։ Ակնառու դարձնելու համար, թե դա ինչ տվեց, վկայակոչենք այսպիսի փաստ։ Այդ գումարը լիովին, նույնիսկ մի որոշ չափով գերակշռելով, ծածկեց սովետական պետության ուղղակի ռազմական ծախսերը 1942 թվականին։ Այդպիսին էր պատերազմի ընթացքի վրա մասսաների հայրենասիրության ազդեցության ևս մի հրաշալի դրսևորումը։

Չի կարելի հատկապես չասել սովետական կանանց, դեռահասների, զառամյալ տարիքի մարդկանց թիկունքում կատարած հերոսական աշխատանքի մասին։ Յուրաքանչյուր ոք հայրենիքի զոհասեղանին դնում էր այն ամենը, ինչ կարող էր։

Թշնամու դեմ հաղթանակն ապահովելու նպատակով մետաղի, մարտական տեխնիկայի, հացի համար ամբողջ երկրով մեկ ծավալված մեծ պայքարում նոր ուժով դրսևորվեց ժողովրդական մասսաների վճռական դերը։ ՍՍՀՄ

ժողովրդական տնտեսությունը հաջողությամբ էր վճռում իր առջև դրված խնդիրները։ Բանվորները, գյուղացիները, ինտելիգենցիան ամեն բան արեցին՝ ռազմական արտադրության պլանների կատարումն ապահովելու համար, ևս մեկ անգամ ապացուցելով, թե ինչպիսի անսպառ հնարավորություններ են բովանդակում իրենց մեջ արտադրության սոցիալիստական եղանակը, լենինյան կոմունիստական կուսակցության ղեկավարությունը, սովետական կենսարար հայրենասիրությունը։ Անձնվիրության, աշխատանքային հերոսության համար ավելի քան 16 միլիոն աշխատավորներ պարգևատրվեցին «1941—1945 թթ. Հայրենական մեծ պատերազմում անձնվեր աշխատանքի համար» մեդալով։

ԱՆՑԱԾ պատերազմում վիթխարի չափեր ընդունեց պարտիզանական շարժումը, որը տարածվել էր սովետա-գերմանական ռազմաճակատում և հենվում էր մասսաների վրա։ Այդ շարժման քաղաքական ու ստրատեգիական արդյունավետությունը հարկադրված էր ընդունել թշնամին ևս։ Նախկին հիտլերյան գեներալ Ռենդուլիչը գրում է. «Պատերազմների պատմությունը չգիտե նման մի օրինակ, երբ պարտիզանական շարժումը խաղար այնպիսի մեծ դեր, ինչպիսին որ այն խաղաց վերջին համաշխարհային պատերազմում։ Այն վիթխարի ներգործությունը, որն ունենում էր պարտիզանական շարժումը ռազմաճակատային զորքերի ու մատակարարման պրոբլեմների, թիկունքի աշխատանքի ու օկուպացված շրջանների կառավարման վրա, նրան դարձրեց տոտալ պատերազմի հասկացության մասը։ Պարտիզանական շարժումը, որը տարեցտարի աստիճանաբար ուժեղանում էր Ռուսաստանում, Լեհաստանում, Բալկաններում, ինչպես նաև Ֆրանսիայում և Իտալիայում, ազդեց ամբողջ երկրորդ համաշխարհային պատերազմի բնույթի վրա»։

Թշնամու թիկունքում մղվող պարտիզանական շարժումն արտահայտվում էր պարտիզանական կազմավորումների գործողություններով, բնակավայրերի ընդհատակյա խմբերի գործունեությամբ, բնակչության ամենալայն մասնակցությամբ՝ հասցնելով օկուպանտների քաղաքական, տնտեսական և ռազմական միջոցառումների ձախողմանը։ Պայքարի այդ ձևերն ընդգրկել էին թշնամու կողմից ժամանակավորապես զավթված տերիտորիայում գտնվող սովետական քաղաքացիների մեծամասնությանը։ Ամենևին էլ ոչ լրիվ տվյալներով պատերազմի ընթացքում թշնամու թիկունքում գործող պարտիզանական կազմավորումների ընդհանուր քանակությունը հասնում էր մոտ մեկ միլիոն մարդու։ Յուրաքանչյուր տասներորդ պարտիզանը կոմունիստական կուսակցության անդամ էր։

Պարտիզանական ջոկատները, միավորումները բազավորվում էին բնական թաքստոցներ ունեցող շրջաններում։ Ընդհատակյա կազմակերպություններ հիմնականում ստեղծվում էին քաղաքներում, խոշոր բնակավայրերում։ Ըստ ունեցած ամենևին էլ ոչ լրիվ տեղեկությունների, ընդհատակյա կազմակերպություններում տարբեր ժամանակներում գործում էին հարյուր հազարավոր սովետական հայրենասերներ։

Առավելապես տարածված էին օկուպանտների քաղաքական, տնտեսական և ռազմական միջոցառումների ձախողմանն ուղղված գործողությունները։ Այդ, ըստ էության, համաժողովրդական շարժման առավել ակտիվ մասնակիցների որևէ կոնկրետ հաշվառում հազիվ թե հնարավոր է։ Դրանք միլիոններ էին։ Չնայած թշնամու գազանություններին, ռեպրեսիաներին և հիտլերականների պրոպագանդիստական ջանքերին, սովետական ժողովուրդը մնաց անընկճելի։



Պարտիզանական շարժումը որոշակի ազդեցություն թողեց Հայրենական մեծ պատերազմի ռազմաճակատներում տեղի ունեցող մարտական գործողությունների զարգացման վրա։ Ոչնչացվեցին թշնամու հազարավոր զինվորներ, սպաներ, օկուպացիոն ապարատի չինովնիկներ, զավթիչների աջակիցներ. խորտակվեցին շատ փոխադրագնացքներ, կամուրջներ, կապի օբյեկտներ և այլն. փրկվեցին ֆաշիստական տաժանակրության քշվող սովետական հազարավոր քաղաքացիներ. ոչնչացումից փրկվեցին վիթխարի քանակությամբ ժողովրդատնտեսական օբյեկտներ ։ Սովետական պարտիզանական շարժման բացառիկ կարևոր արդյունքը հանդիսացավ այն հանգամանքը, որ այն ձախողեց հափշտակված սովետական տերիտորիաների էկոնոմիկան իրենց ի սպաս դնելու օկուպանտների փորձերը։ Նրանց չհաջողվեց սովետական հողում շատ թե քիչ լուրջ չափերով կարգավորել ո՛չ արդյունաբերական, ո՛չ էլ գյուղատնտեսական արտադրությունը։

Պարտիզանների դեմ պայքարելու համար հիտլերյան հրամանատարությունը, բացի ոստիկանական և պահնորդական զորամասերից, ստիպված էր տրամադրել սովետա-գերմանական ռազմաճակատում գտնվող իր ցամաքային ուժերի մինչև 10 տոկոսը։

Բուրժուական պրոպագանդան ամբողջ ուժով ճգնում է ապացուցել, թե սովետական պարտիզանական շարժման առաջացման գլխավոր պատճառն իբր թե հիտլերականների «ոչ ճկուն» քաղաքականությամբ հարուցված վրեժի զգացմունքն էր։ Դա հիմն ի վեր սխալ է։ Մարքսիստական-լենինյան համոզվածությունը, հայրենասիրական պարտքը սոցիալիստական հայրենիքի հանդեպ, ֆաշիզմի սև ուժերից մարդկային լուսավոր գաղափարները պաշտպանելու անհրաժեշտության գիտակցումը՝ ահա թե ինչն է սովետական մարդկանց մարտի մղել ռազմաճակատի գծի այս և մյուս կողմում։ Բարոյա-քաղաքական տեսակետից սովետական ժողովուրդը այդ գիծը երկու տարբեր մասերի չէր բաժանում։ Սովետական մարդիկ, չնայած ամեն տեսակի փորձություններին, իրենց հիմնական զանգվածով օկուպացված տերիտորիայում ևս մնում էին սովետական։

ԴԺՎԱՐ ժամանակներում, 1941 թվականին, լայն տարածում ստացավ թշնամական հարձակման դեմ պայքարելու համար երկրի ռազմական հզորությունն ուժեղացնող ևս մի իսկական ժողովրդական ձև՝ ժողովրդական աշխարհազորը։ Պայքարի այս, ինչպես և պարտիզանական եղանակը, պատմականորեն վաղուց հայտնի են։

Օտարերկրյա զավթիչներին ետ մղելու գործում ժողովրդական լայն զանգվածների մասնակցության հին ձևը սովետական ժամանակներում վերածնվեց, բայց նոր, նշանակալիորեն ավելի հարուստ բովանդակությամբ. այն ծառայում էր սոցիալիստական հայրենիքին, ազատության ու անկախության համար մղվող կռվին։

Հայրենական մեծ պատերազմի սկզբնական ժամանակաշրջանի սովետական աշխարհազորային շարժումը բնութագրվում է զինված կազմավորման

երկու հիմնական տեսակով՝ կործանիչ գումարտակներով և բուն աշխարհազորային զորամասերով ու միավորումներով։ Պատերազմի երրորդ օրվանից արդեն, կուսակցության ու կառավարության որոշմանը համապատասխան, սկսեցին կործանիչ գումարտակներ և դրանց օժանդակող խմբեր կազմակերպել այն կամավորներից, ովքեր ենթակա չէին բանակ զորակոչվելու։ 1941 թվականի հուլիսի վերջին կային ավելի քան 1500 կործանիչ գումարտակներ։ Պատերազմի տարիներին այդպիսի գումարտակների կազմում թշնամու դեմ պայքարում էին ընդամենը մինչև 400 հազար մարդ։ Մոտավորապես նույնքան էլ միավորում էին օժանդակ խմբերը։

Կործանիչ մարտիկները ծառայում էին արտադրությունից չկտրված։ Բայց ռազմաճակատի մոտիկության համեմատ նրանք լիովին անցնում էին զինվորական դրության, իսկ հետո առհասարակ ձուլվում էին գործող բանակին կամ անցնում պայքարի պարտիզանական մեթոդին։

Այժմ հանրահայտ է, որ հիտլերականներին, որոնք ռազմաճակատի գծից անց էին կացնում պարաշյուտային դեսանտներ, լրտեսներ, դիվերսանտներ, չհաջողվեց կազմալուծել մեր մերձռազմաճակատային թիկունքը։ Այն փորձված զենքը, որն անխափան գործում էր Արևմտյան Եվրոպայի երկրների վրա հարձակման ժամանակ, ՍՍՀՄ-ի դեմ մղվող պատերազմում հաջողություն չունեցավ։ Այս բանում քիչ արժանիքներ չունեն սովետական կործանիչ գումարտակները։

Հայրենիքի զինված պաշտպանությանը մասնակցելու մասսաների հայրենասիրական ձգտումն զգալիորեն ավելի լայն մասշտաբներով իր մարմնացումը գտավ բուն աշխարհազորային դիվիզիաների, գնդերի, գումարտակների ստեղծման մեջ։ Այդ շարժման նախաձեռնողները լենինգրադցիներն ու մոսկվացիներն էին, որոնք դեռ 1941 թվականի հուլիսի սկզբին կարմիր բանակին օգնելու նպատակով ձեռնամուխ եղան մասսայական ժողովրդական աշխարհազորի ձևավորմանը։ Այդ նախաձեռնությունը հավանության արժանացավ և տարածվեց մյուս քաղաքներում ևս։

Ժողովրդական աշխարհազորն ավելի քան երկու միլիոն անձնվեր մարտիկ տվեց կարմիր բանակին։ Մարտերում ցուցաբերած նրանց համառությունն ու կայունությունը պետք է խոստովաներ նաև թշնամին։ Հիտլերյան գեներալ Տիպելսկիրխը, բացատրելով գերմանա-ֆաշիստական զորքերի անհաջողության պատճառները Լենինգրադի մոտ, գրել է. «Գերմանական զորքերը հասան մինչև քաղաքի հարավային արվարձանները, սակայն նկատի ունենալով Լենինգրադի մոլեռանդ բանվորներով ուժեղացված պաշտպանվող զորքերի ամենահամառ դիմադրությունը, սպասվող հաջողությունը չունեցան»։

Մոսկվայի չորս հրաձգային աշխարհազորային դիվիզիաներ և Ռոստովի ժողովրդական աշխարհազորի մեկ հեծյալ դիվիզիան մարտերում ցուցաբերած հերոսության, արիության, կարգապահության և կազմակերպվածության համար հետագայում վերակազմավորվեցին որպես գվարդիական զորամասեր։

Հայրենական մեծ պատերազմի փորձը մեկ անգամ ևս ամբողջ համոզչությամբ ցույց տվեց, թե հիրավի ինչպիսի՜ անսահման ուժեր են ամփոփված ժողովրդի մեջ, առանձնապես՝ երբ նա կազմակերպված է և համախմբված, երբ նրա գործունեությունը, եռանդը, ջանքերը ուղղված են վեհ նպատակների կենսագործմանը։ Դա է անցած պատերազմի շատ կարևոր դասերից մեկը և ահեղ նախազգուշացումն արդի իմպերիալիստական ագրեսորներին։

«Экономическая газета» № 19, 1970 г.

Ն. Գ. ՍԱՖԱՐՅԱՆ

Պաճեստի գեներալ-մայոր

# ՀԱՅՐԵՆԻՔԻ ԿՈՉՈՎ

Մոսկվայի Ֆրունզեի անվան ռազմական ակադեմիան ավարտելուց հետո նշանակվեցի 170-րդ գնդի շտաբի պետ։ Զորամասը տեղավորված էր Ստանիսլավսկի մարզի Նադվորնայա քաղաքում, որն արևմտյան սահմանից այնքան էլ հեռու չէր։ 1941 թվականի ապրիլ-մայիս ամիսներին վերադաս հրամանատարությունից ստացած հրամաններից ու առաջադրանքներից երևում էր, որ Արևմուտքում դրությունը օրըստօրե լարվում է։ Հաշվի առնելով այդ, զորամասում մարտական-քաղաքական ուսուցման ծրագրերը կազմում էինք պատերազմական պայմաններին համապատասխան։

Քառասունմեկ թվականի հունիսի 21-ին, շաբաթ օրը, տուն վերադարձա ուշ երեկոյան։ Կարդացի նոր ստացված թերթերը, անկողին մտա կես գիշերն անց։ Լույսը դեռ չէր բացվել, լսեցի հեռախոսի անընդհատ զանգը։ Վերցրի լսափողը. զանգահարում էին դիվիզիայի շտաբից, հրամայում էին ազդարարել մարտական տագնապ։ Անմիջապես զանգահարեցի գնդի շտաբի պատասխանատու հերթապահին՝ ազդարարել մարտական տագնապ... Վայրկյանաբար հագա համազգեստս և աճապարեցի գնդի շտաբ...

. Շուտով շտաբ եկան նաև գնդի հրամանատարն ու մյուս ընկերները։ Հրամայվեց գումարտակներին սրընթաց շարժվել դեպի արևմուտք— Կարպատյան լեռները՝ պետական սահմանը։

Գունդը հազիվ քաղաքից հեռացել էր մի քանի կիլոմետր, երբ մեր թիկունքում լսեցինք ռումբերի խուլ պայթյուններ։ Լուր ստացանք, որ գերմանական ինքնաթիռները ռմբակոծել են մեր զորանոցները, ավերվել է ամեն ինչ, սպանվել են պահակային ու ներքին ծառայության համար թողնված զինվորներն ու հրամանատարները։ Հունիսի 22-ին, կեսօրից հետո մեր գումարտակները դուրս եկան սահմանի վրա և Սեուլյան լեռնանցքում գրավեցին նախօրոք մեր պատրաստած դիրքերը։

Հունիսի 23-ին լսեցինք Կարմիր բանակի գլխավոր հրամանատարության կայանի հաղորդագրությունն այն մասին, որ հիտլերյան Գերմանիայի բանակները հարձակվել են Սովետական Միության վրա, և ռազմաճակատը Բալթիկ ծովից ձգվում է մինչև Սև ծով։ Սկսվեց Հայրենական մեծ պատերազմը։ Այն

սկսվեց մեզ համար անբարենպաստ պայմաններում։ Այդ ֆաշիստական զորքերի հանկարծակի հարձակումն էր և նրանց ուժերի գերակշռությունը կարմիր բանակի հանդեպ։ Չնայած դրան, մենք հակառակորդի նկատմամբ ունեինք կարևոր առավելություն։ Դա մեր ռազմիկների, սովետական ժողովրդի բարոյական ոգին էր, նրանց անհուն նվիրվածությունը սոցիալիստական հայրենիքին, Լենինի վեհ գործին։ Սովետական մարդկանց բարոյական այդ հիանալի հատկությունները փայլուն կերպով դրսևորվեցին պատերազմի հենց սկզբի օրվանից։

Մեր գնդի ռազմիկները թշնամուն հանդիպելու առաջին իսկ պահից մարտի դաշտում ցուցաբերեցին կայունություն ու տոկունություն։ Նրանք գիտակցում էին, որ այս պատերազմում վճռվում է Սովետական Միության կենաց ու մահու հարցը։ Շատերը մինչև վերջին կաթիլ արյունը մարտնչում էին ոսոխի դեմ և չէին զիջում իրենց դիրքերը։ Հիտլերականները սովետական ռազմիկների համառ դիմադրությանն էին հանդիպում ամբողջ ռազմաճակատով մեկ։ Բայց թշնամին գազազած էր, նենգ և ուժեղ։ Ֆաշիստները, հաշվի չառնելով կորուստները, իրենց իսկ սպաների և զինվորների դիակների վրայով սողում էին առաջ, մեր հայրենիքի խորքը, նրա կենսական կենտրոնները։

Հայրենի հողի յուրաքանչյուր թիզ օտարերկրյա զավթիչներին թողնելը մեզ համար ծանր էր։ Բայց ստիպված էինք այդ քայլին դիմել։ Նահանջելով հանդերձ, մենք համոզված էինք, որ դա ժամանակավոր է, որ կգա այն օրը, երբ մեր բանակը ոչ միայն կկասեցնի թշնամու առաջխաղացումը, այլև ինքը կանցնի հարձակման, պարտության կմատնի հիտլերյան բանակին։ Մենք հավատով էինք լցված վերջնական հաղթանակի նկատմամբ, այդ հավատը մեր սրտերում վառ էր պահում կոմունիստական կուսակցությունը, որը ոտքի էր հանել երկրի բազմազգ ժողովուրդներին՝ մարտնչելու հիտլերյան հորդաների դեմ։

Պատերազմի առաջին իսկ օրվանից ռուս, ուկրաինացի, բելոռուս, վրացի, ուզբեկ, ադրբեջանցի, ղազախ և Սովետական Միության մյուս ժողովուրդների ու ազգությունների զավակների հետ, հայ մարտիկները ևս արիաբար կռվում էին ոսոխի դեմ։ Ռազմաճակատում իրենց կատարած սխրագործություններով արդեն աչքի էին ընկել Արգամ Պետրոսյանը, Մամբրե Գևորգյանը, Լևոն Դարբինյանը, Մաթևոս Մադաթյանը, օդաչուներ Նելսոն Ստեփանյանը, Պատրիկ Գազազյանը և ուրիշներ։

Քառասունմեկ թվականի աշնանը իրադրությունը բարդացավ երկրի հարավում։ Կիևը, Դնեպրոպետրովսկը, Զապորոժյեն թողնելուց հետո, մարտերը բորբոքվեցին Դոնեցկի ավազանում։ 1941 թ. հոկտեմբերին կազմավորվեց 658-րդ հրաձգային գունդը։ Սկզբում ինձ նշանակեցին գնդի շտաբի պետ, մեկ ամիս հետո՝ հրամանատար։ Զորամասի կոմպլեկտավորումից հետո նա մասնակցեց Դոնեցկի ավազանում մղվող կռիվներին։ Հիտլերականների դեմ մարտնչում էին նաև Դոնեցկի և Վորոշիլովգրադի աշխարհազորայինները։

Այդ ժամանակաշրջանում մեզ խիստ անհանգստացնում էր պաշարված Լենինգրադի վիճակը և Մոսկվային սպառնացող վտանգը։ Հիտլերականները մեկը մյուսին հաջորդող գրոհներով ձգտում էին մինչև վերահաս ձմեռը զավթել մեր հայրենիքի մայրաքաղաքը։ Մոսկվան պաշտպանելու համար ոտքի ելան բոլորը։ Մեզանից յուրաքանչյուրը գիտակցում էր, որ հարավում մեր ակտիվ մարտական գործողություններով թուլացնում է Մոսկվայի մատույցներում կռվող ֆաշիստների հարձակողական թափը։ Ռազմաճակատի մեր հատվածում



զորագնդերը, անցնելով ակտիվ պաշտպանության, մարտերի ընթացքում հյուծում, արյունաքամ էին անում թշնամուն, երբեմն իրենք գրոհում հակառակորդի վրա։ Մեր գունդը ազատագրեց Գորսկոյե քաղաքը, Կարբանետ բնակավայրը, Սենյանովկա երկաթուղային կայարանը և ետ վերցրեց մեր զրահագնացքը։ Այդ մարտերում իրենց խիզախությամբ աչքի ընկան կապիտան Գենզիկը, հետախույզ Սուվորովը և սակրավոր Իվանովը։ Վերջիններս հետախույզների ջոկատի հետ բազմիցս անցան թշնամու թիկունքը, բերին ութ «լեզու»։ Դոնեցկի ավազանում ֆաշիստներն այլևս հնարավորություն չունեցան իրենց հարձակումը շարունակել, անցան պաշտպանության։ Այստեղ մղվող մարտերում մեր գունդն առավելապես աչքի ընկնելու համար պարգևատրվեց Կարմիր դրոշի շքանշանով։

Քառասուներկու թվականի ամռանը հիտլերականները, խոշոր ուժեր կենտրոնացնելով սովետա-գերմանական ռազմաճակատի հարավային հատվածում, անցան հարձակման։ Ֆաշիստական բանակների «Հարավ» խմբավորումը բաժանվել էր երկու մասի։ «Բ» խմբավորումը Դոնի վրայով սողում էր դեպի Վոլգայի ափերը՝ դեպի Ստալինգրադ, իսկ «Ա» խմբավորումը խցկվում էր Հյուսիսային Կովկաս, նպատակ ունենալով կովկասյան գլխավոր լեռնաշղթայի վրայով կամ այն շրջանցելով թափանցել Անդրկովկաս։

Կռիվները ռազմաճակատի մեր հատվածում օրըստօրե բորբոքվում էին։ 1942 թ. հունիսի 15-ին նշանակվեցի 295-րդ հրաձգային դիվիզիայի հրամանատար։ Վայրագ թշնամին լարում էր բոլոր ճիգերը, որպեսզի հասնի Վոլգայի ափերը, տիրի Կովկասին, զավթի Գրոզնու և Բաքվի նավթը։ Նորից ահեղ վտանգ էր սպառնում մեր հայրենիքին։ Յուրաքանչյուր քաղաք և գյուղ թշնամուն թողնելը մեծ վիշտ էր պատճառում մեզ։ Այժմ, երբ գրում եմ այս տողերը և վերհիշում նահանջի ծանր օրերը, սիրտս լցվում է կսկիծով։

Գերմանական հրամանատարությունը պատերազմի կրակի մեջ էր նետում իր բոլոր ռեզերվները։ Կրելով հսկայական կորուստներ՝ թշնամին սողում էր առաջ։ Կոմունիստական կուսակցության կոչով օտարերկրյա զավթիչների դեմ պայքարի էին ելել Կովկասի բոլոր ժողովուրդներն ու ազգությունները։ Երկրամասի համար ստեղծված ռազմի ծանր պայմաններում 77-րդ, 416-րդ հրաձգային (ադրբեջանական), 406-րդ, 414-րդ հրաձգային (վրացական), 89-րդ, 408-րդ հրաձգային (հայկական) դիվիզիաները և բազմաթիվ այլ զորամիավորումներ փոխադրվեցին Անդրկովկասի ռազմաճակատի գործող բանակները։

Հայրենիքին սպառնացող վտանգի այդ պահին Պ. Մորոզովի, Գ. Վասիլենկոյի, Ա. Լուչինսկու ղեկավարած միավորումների կողքին թշնամու դեմ հերոսաբար կռվում էին Ի. Սիլաղաձեի, Գ. Կոբարաձեի, Անդրանիկ Սարգսյանի, Թ. Ալյակբերովի, Ա. Հուսեինովի հրամանատարությամբ գործող դիվիզիաները։

Այդ ժամանակ գրեթե ամեն օր թերթերում հրապարակվում էին Կովկասի հանրապետությունների և առանձին քաղաքների աշխատավորների նամակները՝ ուղղված ռազմաճակատում մարտնչող իրենց զավակներին։ Դրանցում արտահայտված էր աշխատավորների սերը հայրենիքի հանդեպ, հավատը՝ կարմիր բանակի անխորտակելի ուժի և թշնամու դեմ վերջնական հաղթանակի նկատմամբ։ Նրանք պահանջում էին անխորտակելի պարիսպ ստեղծել թշնամու դեմ, հրեշին թույլ չտալ առաջ սողալու։

Կովկասի համար վրացիների, հայերի, ադրբեջանցիների հետ միասին մարտնչում էին նաև Սովետական Միության մյուս ժողովուրդների զավակ-

ները։ Դա պրոլետարական ինտերնացիոնալիզմի, սովետական հայրենասիրության լավագույն վկայությունն էր։ Մինչդեռ հիտլերականները, հարձակվելով մեր երկրի վրա, հույս ունեին, որ պառակտում կառաջանա սովետական ժողովրդի մեջ, Կովկասի, ինչպես և մյուս ազգերը կհակադրվեն ռուսներին, որը կնպաստի իրենց պլանների իրագործմանը։ Ֆաշիստները սխալվեցին իրենց հաշիվների մեջ։

Լենինգրադի պատերի տակ, Մոսկվայի մատույցներում, Բելոռուսիայի անտառներում, Ուկրաինայի տափաստաններում, Վոլգայի ափերին, Կովկասյան նախալեռներում ֆաշիստական հորդաների դեմ մարտնչող յուրաքանչյուր հայ ռազմիկ գիտակցում էր, որ կռվելով հանուն մեծ Հոկտեմբերի նվաճումների պաշտպանության, կռվում է Սովետական Հայաստանի ազատության և անկախության, հայ ժողովրդի երջանկության համար։

1942 թ. սեպտեմբերի վերջերին, հոկտեմբերին կատաղի կռիվներ էին ընթանում Նալչիկի, Օրջոնիկիձեի, Մոզդոկի ուղղություններում։ Թշնամու հարձակողական թափը, հուլիս, օգոստոս ամիսների հետ համեմատած, շատ թույլ էր, բայց նրան դեռևս հաջողվում էր առաջ շարժվել։ Բազսանը, Նալչիկը թողնելուց հետո, մեր դիվիզիան վերջնականապես ամրապնդվեց Ջիկոլա բնակավայրից հյուսիս ընկած բնագծում, անտառի եզրին և համառորեն դիմադրեց թշնամուն։ Այստեղ իրենց տոկունությամբ և հմտությամբ աչքի էին ընկնում և հիտլերականների դեմ մղվող մարտերը հիանալի վարում փոխգնդապետ Իվան Սիլիրիդովը, գնդապետ Սուվորովը, զորամասի հրամանատար Հոխմանը։

Ռազմաճակատի կենտրոնական հատվածում՝ Մալգոբեկի մատույցներում, հիտլերականների դեմ ակտիվորեն մարտնչում էր 89-րդ հրաձգային հայկական դիվիզիան, որին գլխավորում էր հմուտ և փորձառու հրամանատար, գնդապետ Արտաշես Վասիլյանը։ Ետ մղելով թշնամու բոլոր գրոհները, միավորումը հիտլերականներին թույլ չէր տալիս և ոչ մի քայլ առաջ անցնել։ Երկուս ու կես ամիս դիվիզիան հաստատ մնաց իր դիրքերում։ Այդ օրերը դիվիզիայի մարտական տարեգրության փայլուն էջերից են։

1943 թ. հունվարին Անդրկովկասյան ռազմաճակատի զորքերն ընդհանուր հարձակման անցան։ 1943 թ. փետրվարի 12-ին ինձ կանչեցին Հյուսիսային Կովկասի ռազմաճակատի ռազմական խորհուրդ և հրամայեցին ստանձնել 89-րդ հրաձգային հայկական դիվիզիայի հրամանատարությունը։ Ազովի ափերին մոտենալիս՝ Նովոջիրելևսկայա և Պոտի բնակավայրերում դիվիզիան հանկարծակի հանդիպել էր հակառակորդի գերակշռող ուժերին և մարտի բռնվել նրա հետ։ Արյունահեղ կռվում միավորումը զգալի կորուստ էր ունեցել. կռվի դաշտում հերոսի մահով ընկավ դիվիզիայի հրամանատար, գնդապետ Ա. Վասիլյանը, զոհվեցին Գ. Իսախանյանը, Ս. Բաղդասարյանը, Ս. Կիրակոսյանը և ուրիշներ։

Գրեթե երթի ընթացքում ընդունեցի դիվիզիան, որի անձնակազմը հիմնականում բաղկացած էր հայ երիտասարդ հրամանատարներից և բանակայիններից։ Դա ինձ շատ ուրախացրեց, և ես վստահ եղա, որ այդպիսի դիվիզիան, լրիվ համալրելուց, մարտական լավ պատրաստությունից հետո, կկարողանա լուծել ամենադժվարին մարտական խնդիրները։ Հետագայում փորձը ցույց տվեց, որ ես չսխալվեցի։

Փետրվարի 28-ին «Պրավդա»-ում հրապարակվեց հայ ժողովրդի նամակը՝ ուղղված ռազմաճակատում մարտնչող հայ ռազմիկներին։ Նրանում ասված էր.



> ...Արյունով ծածկված մեր հողը վրեժի է կոչում ձեզ: Վրե՛ժ, վրե՛ժ, վրե՛ժ թափված յուրաքանչյուր կաթիլ արյան համար: Վրեժ և՛ անցյալի և՛ միլիոնավոր նահատակված սովետական մարդկանց համար, մեր եղբայրների և քույրերի, մեր հայրերի ու մանուկների թափած ամեն մի կաթիլ արյան համար...
>
> ...Մեր ավագ եղբայր ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ մարտնչեք թշնամու դեմ, մեր եղբայրական ժողովուրդների զավակների հետ կողք կողքի, ձեռք ձեռքի տված հետապնդեցեք թշնամուն մինչև իր տերիտորիան և հերոսի փառքով վերադարձեք հայրենի օջախ, բնտանյաց գիրկը...

Հայ ժողովրդի հայրենասիրական այդ պատմական նամակը կայծակի արագությամբ անցավ ջոկից ջոկ, դասակից դասակ, վաշտից վաշտ, դիրքից դիրք և նորանոր սխրանքների կոչեց հայ ռազմիկներին։

Մեր դիվիզիան պաշտպանական դիրքեր էր գրավում Ազովյան ծովի հյուսիս-արևելյան ափերին՝ մոտ 170 կիլոմետր ճակատով, սկսած Ազով քաղաքից Շաբելսկ ավանից, Եյսկ քաղաքից մինչև Կամիշավատսկայա ավանը։ Միաժամանակ ծրագրված պլանով, ստորաբաժանումները զբաղվում էին մարտական ու քաղաքական ուսուցմամբ։ Այս գործում զորամասերին մեծ օժանդակություն էին ցույց տալիս դիվիզիայի քաղբաժինը (պետ՝ Լ. Վարդանյան) և շտաբը (պետ՝ Ֆ. Պոլտավեց)։

Քառասուներեք թվականի ամռանը մարտերը բորբոքվեցին Օրյոլ—Կուրսկ—Բելգորոդ աղեղում։ Կարճ, բայց համառ պաշտպանական մարտերից հետո մեր զորքերն անցան վճռական հարձակման և կրնկակոխ հետապնդում էին թշնամուն։

Սեպտեմբերի սկզբներին մեր դիվիզիան փոխադրվեց Նովորոսիյսկի մատույցները։ Գերմանական դիվիզիաները, գրեթե մեկ տարի մնալով այստեղ, ստեղծել էին պաշտպանության, այսպես կոչված, «կապույտ գիծ», որը նրանք «անհաղթահարելի» էին համարում։ Մեր դիվիզիայի խնդիրն էր՝ գրոհել 352,1 բարձունքի, Դոլգայա և Սախարնայա գոլովա լեռների ուղղությամբ և ճեղքել հիտլերականների պաշտպանության բնագիծն այդ հատվածում։

Հարձակողական մարտերի առաջին իսկ ժամից հայ ռազմիկները ցուցադրեցին քաջագործության լավագույն օրինակներ։ Կապիտան Մ. Մուրադյանի (այժմ գեներալ-մայոր) գումարտակի ռազմիկները, արհամարհելով երկյուղն ու մահը, թշնամու մրրկային կրակի տակ գրոհում էին Դոլգայա լեռան գագաթը։ Սախարնայա գոլովա լեռան լանջերին գերմանացիներին ետ էին մղում իրենց դիրքերից Հ. Ոսկանյանի, Հ. Սիմոնյանի և Հ. Բաբայանի հրամանատարությամբ գործող ստորաբաժանումները։

Հարձակման երկրորդ օրը, սեպտեմբերի 16-ի առավոտյան, մեր զորագնդերը ճեղքեցին թշնամու պաշտպանության «կապույտ գիծը»։ Հակառակորդը նահանջում էր, նրան կրնկակոխ հետապնդում էին մեր ռազմիկները։ Այդ ժամին ես իմ դիտակետում էի և հետևում էի ստորաբաժանումների մարտական գործողություններին։ Դոլգայա լեռան գագաթը գրոհող խումբը, երբ անտառի եզրից դուրս եկավ և ընկավ բացատը, գերմանացիները բարձունքից սկսեցին մրրկային կրակ տեղալ նրա վրա։ Վայրկյանաբար բոլորը պառկեցին գետնին։ Ինձ թվաց, թե ֆաշիստների համազարկերից զոհվեցին բոլորը։ Այդ պահին կարգադրեցի շտաբի առաջին բաժնի պետ Գ. Վարդապետովին՝ կապվել 390-րդ գնդի առաջին գումարտակի հրամանատարի հետ, պարզել իրադրությունը։ Բայց ես շարունակում էի դիտել մարտի դաշտը։ Մեր մարտիկները նորից բարձրացան և լեռան լանջով շարունակեցին գրոհը։ Նկատեցի, որ մի քանիսն ընկան, իսկ մյուսները շարունակեցին առաջ ընթանալ։ Առավելա-

*պես ակտիվ էր գործում գերմանական դզոտերից մեկը, որը բարձունքի կատարին էր։ Այդ պահին մեկը համարձակորեն մոտեցավ դզոտին և մարմնով փակեց հրակնատը... Թշնամու կրակակետը լռեց։ Մի քանի հոգի շրջապատեցին դզոտը և նռնակներով պայթեցրին այն։ Ոչնչացվեց կրակակետի անձնակազմը։ Կարգադրեցի պարզել, թե ո՞վ էր այդ խիզախը։ Մի քանի րոպե հետո զեկուցեցին՝ ավագ սերժանտ Հունան Ավետիսյանն էր։*

*Հետագա օրերին հարձակողական մարտերի ընթացքում մեր գնդերն ազատագրեցին Վերխնի Բականսկը, տիրեցին Վոլչի վարոտա լեռնանցքը։ Թեժ մարտերում աչքի ընկան շատ ու շատ ռազմիկներ։ Բոլորի անուններն անհնար է հիշատակել այս հոդվածում, բայց ես իրավունք չունեմ չհիշատակել Ջահան Կարախանյանին, Սուրեն Առաքելյանին, Ղևոնդ Թունյանին, Վաղարշակ Վարդանյանին, Սամվել Մալխասյանին։ Մեր դիվիզիայից ձախ գործում էր 414-րդ հրաձգային վրացական դիվիզիան, որը թշնամուն հետապնդում էր Անապայի ուղղությամբ։ Հաղթանակն ապահովելու համար իրենց գործողություններով մեր և վրացական դիվիզիայի ստորաբաժանումները օգնում էին միմյանց։*

*Ռազմաճակատի հրամանատար, գեներալ-գնդապետ Ի. Պետրովն ու ռազմական խորհրդի անդամ Բայուկովը, հետևելով մեր գնդի առաջին օրերի մարտական գործողություններին, ինձ ու դիվիզիայի քաղբաժնի պետ, փոխգնդապետ Գ. Հակոբյանին հեռագիր ուղարկեցին, ուր ասված էր հետևյալը․*

> «Ուշադիր հետևում ենք ձեզ վստահված զորքերի մարտական գործողություններին: Լիովին գոհ ենք շարքայինների և հրամանատարների կատարած քաջագործություններից ու սխրանքներից: Ռազմական խորհրդի շնորհակալությունը հաղորդեցեք ամբողջ անձնակազմին՝ մարտերում ցուցաբերած արիության և խիզախության համար: Ձեր զորագնդերն արժանի են պարգևի: Ռազմական խորհուրդը կոչ է անում ձեզ՝ է՛լ ավելի լարել ուժերը, և թշնամին կքշվի ծովը»:

*Մեր դիվիզիայի նկատմամբ միշտ հոգատար էր 18-րդ բանակի (որի կազմում էր մեր դիվիզիան) հրամանատար, գեներալ Կ. Լեսելիձեն։ Նա հաճախակի էր լինում մեր ստորաբաժանումներում, դիտում ռազմիկների մարտական գործողություններն ու ըստ արժանվույն գնահատում։ Նովոռոսիյսկ քաղաքի ազատագրման համար մղվող կռիվներում գեներալը անձամբ նկատելով սակրավոր Ջահան Կարախանյանի քաջագործությունները, հանձնարարեց նրան ներկայացնել Սովետական Միության հերոսի կոչում շնորհելու համար։ Գեներալ Լեսելիձեին մենք համարում էինք ոչ միայն մեր հրամանատարը, այլև բարեկամն ու հարազատը։ Այդ բյուրեղյա և համեստ մարդու, ջերմ հայրենասերի պայծառ կերպարը միշտ աչքիս առջև է։*

*Վերջանում էր սեպտեմբեր ամիսը։ Մեր դիվիզիայի դեմ կռվող գերմանական 73-րդ միավորումն անընդհատ նահանջում էր դեպի Կերչի նեղուցը, կռվի դաշտում թողնելով սպանվածների դիակներն ու փչացած տեխնիկան։ Կուրբատսկայա, Սուվորովո-Չերկեսկ և բազմաթիվ այլ բնակավայրեր ազատագրելուց հետո, մեր դիվիզիան անցավ Վիտյազևյան լիմանը։ Այդ մարտերում խիզախորեն կռվեցին Հենրիկ Սոխիկյանը, Գուրգեն Սարգսյանը, Արամ Բաղդասարյանը, Ջալիբեկ Պետրոսյանը։ Ծանր վիրավորվեցին 526-րդ գնդի հրամանատար Դանիել Հակոբյանը, հրետ. գնդի հրամանատար Ս. Հակոբջանովը։*

*Կովկասի համար մղվող կռիվների վերջին էտապը մոտենում էր հաղթական ավարտին։ Հակառակորդի պաշտպանության վերջին բնագծի վրա գրոհող մեր հրետանավորներն ու ականաձիգներն իրենց դիպուկ կրակով ավերում էին թշնամու կրակակետերն ու արգելափակոցները և ճանապարհ բացում հետևակի համար։ Լեռների ու բլուրների լանջերով դեպի վեր էին սլանում հետևակայինները, որոնք դյուցազնական հարվածներով թշնամուն ստիպում էին թողնել իր դիրքերը։ Հոկտեմբերի մեկին մեր ստորաբաժանումները ճեղքեցին հակառակորդի պաշտպանության վերջին բնագիծը Թամանում, ազատագրեցին Թաման քաղաքը։*

*Հոկտեմբերի 9-ի լույս 10-ի գիշերը հաղորդվեց Գերագույն գլխավոր հրամանատարության հրամանը՝ Թամանյան թերակղզին գերմանական զավթիչներից լիովին ազատագրելու մասին։ Մարտերում աչքի ընկած միավորումների թվում հիշատակված էր նաև 89-րդ հրաձգային դիվիզիան, որն արժանացել էր Թամանյան կոչման, իսկ ամբողջ անձնակազմին հայտարարված էր շնորհակալություն։*

*Թամանյան թերակղզու համար մղված մարտերում կատարած քաջագործությունների համար դիվիզիայի հազարավոր ռազմիկներ պարգևատրվեցին Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով։ Նրանցից երկուսին՝ Հունան Ավետիսյանին և Սուրեն Առաքելյանին, ետմահու շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում։ Այդ բարձր կոչմանն արժանացավ նաև Ջահան Կարախանյանը։*

*Թերակղզին ազատագրելուց հետո Մերձծովյան բանակի ռազմիկներն իրենց զենքն ուղղեցին Կերչում պաշտպանվող թշնամու դեմ։*

*Հունվար ու փետրվար ամիսներին մեր ստորաբաժանումները բազմիցս գրոհեցին քաղաքի կենտրոնական թաղամասերի ուղղությամբ, նպատակ ունենալով դուրս գալ Կադերլեզ ջրանցքը, ապա մարտերը ծավալել Միհրդատ բարձունքի ուղղությամբ։ Մեր գումարտակները գրավեցին եկեղեցին, պահածոների գործարանը, հասան Կադերլեզ ջրանցքին և մոտեցան նավահանգստին։ Փողոցային մարտերում իրենց խիզախորեն դրսևորեցին Ներսես Իգմայիլյանը, Գրիգոր Ջոհրաբյանը, Անդրանիկ Կարապետյանը, եղբայրներ Շամիլ և Դանիել Չիչյանները և ուրիշներ, զոհվեցին Մամիկոն Խաչանյանը, Ղևոնդ Թունյանը, Ռուբեն Մեժլումյանը։ Այստեղ երկու անգամ մեր դիվիզիան այցելեց Գերագույն գլխավոր հրամանատարության զորակայանի ներկայացուցիչ, Սովետական Միության մարշալ Կ. Ե. Վորոշիլովը։ Նրա երկրորդ այցը մարտ ամսի վերջերին էր, որը զուգադիպեց երկրորդ էշելոնում կանգնած մեր ստորաբաժանումների տակտիկական պարապմունքներին։ Մեր ռազմիկների գործողությունները, որ համընկնում էին պատերազմական պայմաններին, հիացմունք պատճառեցին Կ. Վորոշիլովին։ Պարապմունքից հետո նա խնդրեց ըստ հնարավորին մի անվտանգ տեղում հրավիրել պարապմունքին մասնակցած անձնակազմի միտինգ։ Այդ միտինգում նա հակիրճ, բայց բոցաշունչ հայրենասիրական խոսքեր ասաց, որը հուզեց բոլորիս։ Մարշալի խրախուսելի խոսքերը թևավորեցին մեր ռազմիկներին՝ ավելի խիզախորեն մարտնչելու։*

*Ուկրաինական 4-րդ ռազմաճակատի զորքերը, ապրիլի 7-ին հարձակման անցնելով Պերեկոպում և Սիվաշում, ճեղքեցին գերմանացիների երկարատև պաշտպանության գիծը և առաջ շարժվեցին Ղրիմի հարավային շրջանները։ Ապրիլի 10-ի, լույս 11-ի գիշերը հարձակման անցավ մեր բանակը։ Արևվածագին Կերչն ու Միհրդատի բարձունքն արդեն մեր ձեռքում էին։ Առաջին իսկ օրը բանակի առաջապահ զորամասերն անցան 30 կիլոմետր տարածու-*

*թյուն և ազատագրեցին ավելի քան 40 բնակավայր, զգալի վնասներ պատճառելով թշնամուն։*

*Բանակի հրամանատարության առաջադրանքի համաձայն դեռևս նոր էինք կենտրոնացել Կարասուբազար բնակավայրում, երբ հրաման ստացանք՝ մարտական երթով անցնել Զույան, Սիմֆերոպոլը, Բախչիսարայը և կենտրոնանալ Բազարչիկում։ Հետագայում հրաման ստացանք կենտրոնանալ Բալակլավայի շրջանում և դիրքեր գրավել՝ Սևաստոպոլի ազատագրման մարտերին մասնակցելու համար։ Երթի ընթացքում ստացանք ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը, Կերչ քաղաքի ազատագրման մարտերում առավելապես աչքի ընկնելու համար, 89-րդ դիվիզիան կարմիր աստղի շքանշանով պարգևատրելու մասին։*

*Հիտլերականները Սևաստոպոլի շուրջն ստեղծել էին տևական և խոր պաշտպանության բնագիծ, որի գրավման առաջին իսկ օրը թշնամուն հասցրած մեր հարվածն այնքան ուժգին էր, որ նա դրանից հետո չկարողացավ ուշքի գալ։*

*Մեր դիվիզիայի գնդերը, ելման դիրքեր ընդունելով Բալակլավայի հյուսիս-արևելյան շրջանում, հարձակվում էին Սապուն-Գարայից հարավ ընկած Գորնայա լեռան ուղղությամբ։ Ամբողջ ճակատով գործող մեր հրանոթների և ականանետների կրակից քանդվում ու ավերվում էին հակառակորդի «անառիկ» ամրությունները։ Օղակ օղակի ետևից սլացող մեր ինքնաթիռներն անընդհատ ռումբեր էին թափում հիտլերականների գլխին, ոչնչացնում նրա կենդանի ուժն ու տեխնիկան։ Հրետանային նախապատրաստությունից հետո անմիջապես գործողության մեջ մտան հետևակայինները։ Սիմոն Բաղդասարյանի գրոհային ջոկատը սլանում էր դեպի Գորնայա լեռան գագաթը։ Գրոհի ժամանակ զոհվեց ավտոմատավորների վաշտի հրամանատարը՝ Խաչիկ Միրոյանը։ Իր գրոհային ջոկատը հաջողությամբ առաջ էր տանում Խորեն Խաչատրյանը, որի ենթակաները, արհամարհելով մահն ու երկյուղը, միշտ ձգտում էին դեպի առաջ։ Քաջի մահով ընկան Հ. Աղաջանյանը, Գ. Մելքոնյանը, Գ. Կրասնովը, Ա. Հովհաննիսյանը և ուրիշներ։*

*Համառ մարտերի ընթացքում սովետական զինված ուժերի հուժկու հարվածներից ճեղքվել էր գերմանացիների սևաստոպոլյան պաշտպանության բնագիծը՝ հյուսիսից մինչև հարավ։ Գրոհողների շարքում էր հայ ժողովրդի խիզախ զավակ, գնդապետ, Սովետական Միության հերոս, այժմ պահեստի գեներալ-մայոր Ասքանազ Կարապետյանի հրամանատարությամբ գործող դիվիզիան։ Մեր գնդերը, Գորնայա բարձունքը գրավելուց հետո, առաջ էին շարժվում դեպի ծովափ։ Ահեղ մարտերում, կրակի ու բոցերի մեջ ծնվում էին նորանոր հերոսներ։ Մեր կորպուսի հրամանատար, գեներալ Ա. Լուչինսկին հետագայում, իր հուշերում անդրադառնալով Սևաստոպոլյան ճակատամարտին, գրում է.*

> ...Ժամը 18-ին, հրետանային կարճ հարձակումից և գվարդիական ծանր ականանետների համազարկից հետո հայկական 89-րդ հրաձգային դիվիզիայի 526-րդ և 390-րդ գնդերն անցան գրոհի և սկսեցին Գորնայա լեռան լանջերով բարձրանալ նրա գագաթը։ Հանդարտված կռիվը կատաղի կերպով վերսկսվեց ամբողջ ռազմաճակատով... Չնայած հակառակորդի համառ դիմադրությանը, հայկական դիվիզիայի զինվորների և սպաների բացառիկ հերոսության շնորհիվ միավորմանը հաջողվեց օրվա վերջին գրավել գերեզմանատունը (տե՛ս «Военно-исторический журнал», 1964 թ., № 5)։

*Մարտական պայմաններում ռազմիկների շրջանում տարվում էր արգասալի կուսակցական-քաղաքական աշխատանք։ Դիվիզիայի քաղբաժնի պետ*



*Գ. Հակոբյանն իր ժամանակի մեծ մասն անցկացնում էր զորամասերում, կուսակցական և քաղաքական աշխատողներին խորհուրդներ տալիս՝ ծավալուն քաղաքական-մասսայական աշխատանք տանելու վերաբերյալ։ Շատ զինվորներ և հրամանատարներ իրենց մարտական գործունեությունը զուգակցում էին կուսակցական աշխատանքի հետ։ Կուսակցության շարքերն համալրվում էին անձնվեր ռազմիկներով, որոնք հայրենիքի համար մղվող մարտերում ցուցադրում էին իրենց անհուն նվիրվածությունը Լենինի մեծ գործին։*

*Մայիսի 10-ի գիշերը ազատագրվեց Սևաստոպոլ քաղաքը։ Բայց հակառակորդը շարունակում էր դիմադրել։ Դիվիզիան առաջադրանք ստացավ՝ նվաճել Թուրքական հին պատնեշը, առաջ շարժվել դեպի ծովափ, հակառակորդի ջախջախված զորամասերի մնացորդներին սեղմել Կազաչյա և Կամիշևայա ծովախորշերում։ Միավորումը այդ առաջադրանքը պատվով կատարեց։ Մայիսի 12-ին թշնամին զենքը վայր դրեց. Ղրիմը լիովին ազատագրվեց։*

*Ղրիմում, մասնավորապես Սևաստոպոլում մղված մարտերում մեր զորամասերի ձեռք բերած հաղթանակը հանդիսացավ դիվիզիայի հերոսական պատմության ոսկե էջերից մեկը։ Սովետական կառավարությունն ու բարձրագույն հրամանատարությունն ըստ արժանվույն գնահատեցին դիվիզիայի, նրա յուրաքանչյուր զինվորի և սպայի մատուցած ծառայությունը սոցիալիստական հայրենիքի ազատության և անկախության համար մղած մարտերում։ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1944 թ. մայիսի 14-ի հրամանագրով մեր դիվիզիան պարգևատրվեց կարմիր դրոշի շքանշանով, երկու գնդի (390-րդ և 400-րդ) շնորհվեց Սևաստոպոլյան անուն, հարյուրավոր ռազմիկներ պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով։ Այդ մարտերում առավելապես աչքի ընկած Սիմոն Բաղդասարյանին, Խորեն Խաչատրյանին, Հարություն Մկրտչյանին, Այդին Հարությունյանին և Վարդգես Ռուստամյանին շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում։*

*Քառասունչորս թվականի ամռանը սովետա-գերմանական ռազմաճակատում կռիվները նորից բորբոքվեցին։ Այդ օրերին հրաման ստացանք փոխադրվել Լեհաստան, մտնել Բելոռուսական առաջին ռազմաճակատի զորքերի կազմի մեջ՝ մարտական գործողություններին անմիջականորեն մասնակցելու համար։ 1945 թ. հունվարի սկզբներին Վարշավայից հարավ անցանք Վիսլա գետը և Պուլավիի պլացդարմում դիրքեր գրավեցինք։*

*Հայրենական մեծ պատերազմի պատմության ուշագրավ էջերից է 1945 թ. հունվարի 14-ը։ Այդ օրը Բելոռուսական ռազմաճակատի զորքերը (հրամանատար, Սովետական Միության մարշալ Գ. Կ. Ժուկով) հարձակման անցան, նպատակ ունենալով ճեղքել Վարշավայից հարավ հիտլերականների պաշտպանության բնագիծը, այնուհետև զարգացնելով մարտական գործողությունները, հետապնդել թշնամուն դեպի արևմուտք։ Այդ հարձակմանը մասնակցում էր նաև 33-րդ բանակը (հրամանատար՝ Վ. Ցվետաև), որի կազմում էր 89-րդ հրաձգային Թամանյան դիվիզիան։ Օրվա կեսերին առաջապահ զորամասերը հաղթահարեցին թշնամու կողմից ստեղծված բոլոր արգելքներն ու կոտրեցին հիտլերականների դիմադրությունը, գրավեցին գերմանացիների պաշտպանության բնագծի երեք շերտերը, սկսեցին կրնկակոխ հետապնդել թշնամուն։*

*Հարձակողական մարտերի չորրորդ օրը, Ռուսսկի Բրոդում մեր ստորաբաժանումները հանդիպեցին կիսաշրջապատման մեջ գտնվող գերմանական զինվորների մի մեծ խմբի։ Մեր գումարտակների և հիտլերականների միջև*

համառ, միաժամանակ արյունալի կռիվը տևեց ամբողջ օրն ու վերահաս գիշերը։ Թշնամու խմբավորումը լիովին ջախջախվեց։ Կորուստներ ունեցանք նաև մենք։ Զոհվեցին դիվիզիայի հրամանատարի տեղակալ, գնդապետ Գ. Բլբուլյանը, հրետանային գնդի հրամանատար, փոխգնդապետ Տինսկին։ Վիրավորվեց 390-րդ գնդի հրամանատար Ե. Կարապետյանը։ Հանձին Բլբուլյանի մենք կորցրինք մեր փորձված և խիզախ հրամանատարներից մեկին, որը մեծ վիշտ պատճառեց մեզ։ Նա իր հմտությամբ ու քաջագործություններով մեծ հեղինակություն էր վայելում անձնակազմի շրջանում։

Գրեթե մեկ ամսվա ընթացքում մեր դիվիզիան համառ մարտերով անցավ մոտ 500 կիլոմետր տարածություն և փետրվարի 15-ին հասավ Ֆրանկֆուրտից հարավ Օդերի աջ ափը։ Շուտով հրաման ստացանք՝ պատրաստ լինել անցնելու Օդերի ձախ ափը։ Օդերը Բեռլինի գրավման բանալին էր։ Օդերի ձախ ափին պլացդարմ ստեղծել, այդ նշանակում էր կարմիր բանակի մերկացրած սուրն անմիջապես իջեցնել հիտլերյան Գերմանիայի գլխին։ Դրա համար էլ հակառակորդը բոլոր ճիգերը գործադրում էր լիկվիդացնելու այդ պլացդարմը։ Երբ մեր վաշտերը նոր էին դիրքեր գրավել, գերմանացիները գրոհեցին, նպատակ ունենալով մեր ստորաբաժանումներին ետ մղել։ Սակայն հիտլերականների գրոհը ձախողվեց՝ իրենց համար ծանր կորուստներով։

Վաթսուն օր թամանցիները համառությամբ պաշտպանեցին Օդերի պլացդարմը, որն ստացավ «Հայկական հող» անունը։ Վաթսուն օր մեր ռազմիկները ցերեկը գիշեր դարձրին, գիշերը ցերեկ՝ զգոն և համառորեն պաշտպանեցին պլացդարմը, որը հիանալի բազա էր հետագայում Բեռլինի վրա հարձակվելու համար։ Այստեղ մեզ աջակցում էր գնդապետ Սամվել Հարությունյանի հրամանատարությամբ գործող մեծ տրամաչափի ականանետային բրիգադը։

Վրա հասավ բաղձալի, Բեռլինի վրա հարձակվելու օրը։ Այդ 1945 թ. ապրիլի 16-ի լուսաբացին էր... Սովետական 41.600 հրանոթների և ականանետների փողերից արձակված արկերի ու ականների հուժկու որոտը ազդարարեց վիթխարի ճակատամարտի սկիզբը։ Դեպի թշնամու դիրքերն էին սլանում 6300 տանկ, ցամաքային զորքերի գործողությանը օդից աջակցում էին 8400 ինքնաթիռ։

Ուղիղ Բեռլինի վրա էին գրոհում Բելոռուսական առաջին ռազմաճակատի զորքերը։ Մեր դիվիզիայի գնդերի հարձակման նախնական ուղղությունն էր Օդերի Ֆրանկֆուրտ քաղաքը։ Հիտլերը, տոտալ մոբիլիզացիայի ենթարկելով իր ուժերը, վերջին ռեզերվներն էր նետել մարտի դաշտ՝ պաշտպանելու Բեռլինի մատույցները։ Հարձակման առաջին իսկ ժամին մեր գնդերը, իրենց ուղղությամբ ճեղքելով թշնամու պաշտպանության գիծը, մարտերը ծավալեցին Ֆրանկֆուրտի ուղղությամբ։ Հաջորդ օրը մենք արդեն քաղաքի մատույցներում էինք։

Ֆրանկֆուրտը գրավելուց հետո հրաման ստացանք թշնամուն հետապնդել Օդեր-Շպրե-ջրանցքի ուղղությամբ։ Ֆրանկֆուրտի համար մղված կատաղի կռիվներում զոհվեցին Պ. Ավալյանը, Ս. Մարգարյանը, Ա. Հովհաննիսյանը, Ա. Զաքարյանը, Ա. Ալիևը, Մելքումյանը։ Խիզախորեն գործեցին Գ. Աբրահամյանի, Գ. Բադալյանի, Ա. Աթոյանի գումարտակները։

Ապրիլի 24-ի լուսաբացին մեր գնդերը դուրս եկան Օդեր-Շպրե-ջրանցքի ափերը։ Մի քան ժամ չանցած հրաման ստացանք՝ պատրաստվել մարտական արշավի՝ դեպի Բեռլին։ Հրամանը կատարվեց, որը, անկեղծ ասած, ինչպես իմ, այնպես էլ ամբողջ անձնակազմի սրտին մոտ էր։ Յուրաքանչյուրիս



իղձն էր՝ մասնակցել Բեռլինի վրա հաղթանակի կարմիր դրոշը բարձրացնելու վճռական գրոհին։

Մարտական երթի առաջին օրը, ապրիլի 25-ին, լուր ստացանք, որ հարավից հարձակվող Ուկրաինական առաջին ռազմաճակատի և հյուսիսից հարձակվող Բելոռուսական առաջին ռազմաճակատի զորքերը Բեռլինից արևմուտք Պոտսդամում միացել են իրար։

Երեքօրյա սրընթաց երթից հետո մենք արդեն Բեռլինի հյուսիսային արվարձանում էինք։ Ապրիլի 28-ի երեկոյան մեր ստորաբաժանումները գրոհի ելման դիրքեր գրավեցին Բեռլինի Ռեյնիգենդորֆ-Օստ և Վեդդինգ քաղաքային շրջաններում։ Փոխգնդապետ Խաչիկ Պայազատյանի հրամանատարությամբ գործող հրետանավորներն իրենց թնդանոթների փողերն ուղղել էին թշնամու դիրքերին։ Խ. Պայազատյանը դիվիզիայի խիզախ և փորձված հրամանատարներից էր, որն ահեղ մարտերով կովկասյան նախալեռներից հասել էր Բեռլին։ Բազմիցս կռվի վճռական պահին հանդես բերելով հմտություն, սառնասրտություն և անձնական հերոսություն, նա հրետանու հուժկու հարվածներով ապահովել է հետևակի հաղթանակը։ Իր համեստության, ենթակաների նկատմամբ զգայուն վերաբերմունքի շնորհիվ Պայազատյանը վայելում էր զինվորների սերն ու համակրանքը։ Եվ ահա, Բեռլինում, նրա հրամանատարությանը ենթակա հրետանավորներն ու ականաձիգներն իրենց դիպուկ հարվածով քանդում էին այն որջի ամրությունները, ուր ֆաշիստները պատսպարվել էին։

Հիանալի էին գործում հետևակայինները, որոնք հակառակորդից նվաճում էին թաղամաս թաղամասի հետևից։ Փողոցային մարտերում հմտորեն էին գործում Հ. Անոյանին և Ն. Վասիլենկոյին ենթակա ստորաբաժանումները։

Ապրիլի 30-ին, կեսօրից հետո, հրանոթների և ականանետների որոտի տակ ռազմաճակատով մեկ հաղորդվեց մեր բանակի դիվիզիաներից մեկի ստորաբաժանումների կողմից Ռայխստագը գրավելու և նրա վրա հաղթանակի կարմիր դրոշը բարձրացնելու լուրը... պարտվում էր Բեռլինը, ծունկի էր գալիս ֆաշիստական Գերմանիան։ Ցնծության մեջ էին մեր ռազմաճակատի բոլոր զինվորները, որոնք արիաբար մասնակցեցին հաղթական գրոհին։ Փողոց-փողոցի, թաղամաս-թաղամասի հետևից գրավելով, ապրիլի 30-ին մեր գնդերը մոտեցան Հումբոլդ հայն քաղաքային այգում կառուցված բազմահարկ ամրոցին։ Ավելորդ կորուստ չտալու համար մենք բերդը շրջապատեցինք։ Մայիսի 2-ին բերդի կայազորը ստիպված դադարեցրեց դիմադրությունը, վայր դրեց զենքը և 6000 սպա ու զինվոր գերի հանձնվեցին։

89-րդ Թամանյան դիվիզիան Բեռլինի գրավման մարտերում աչքի ընկնելու համար պարգևատրվեց Կուտուզովի II աստիճանի շքանշանով և դարձավ եռակի շքանշանակիր դիվիզիա։

Մայիսի 3-ին հրապարակվեց Գերագույն գլխավոր հրամանատար Ի. Վ. Ստալինի հրամանը՝ Բեռլինի անկման մասին։ Այդ պատմական հրամանում բազմաթիվ հրամանատարների հետ հիշատակված էր տողերիս հեղինակի ազգանունը, գեներալ-մայոր Ս. Կարապետյանի, գեներալ-մայոր Ի. Գասպարյանի, գնդապետ Հ. Բաբաջանյանի (այժմ ՍՍՀՄ զինված ուժերի զրահատանկային զորքերի հրամանատար, զրահատանկային զորքերի մարշալ) ազգանունները, որոնց հրամանատարության ենթակա զորքերը մասնակցել են Բեռլինի գրոհին։

Բեռլինի պարտությունից հետո եղա Ռայխստագի կիսավեր շենքի առջև։ Ինձ մեծ ուրախություն պատճառեց, երբ շենքի պատերին, Սովետական Միու-

թյան բազմազգ ժողովուրդների զավակների ձեռքով գրված ազգանունների ու մակագրությունների կողքին կարդացի նաև մեսրոպյան տառերով գրված մակագրություններ և հայ ռազմիկների ազգանուններ։ Այդ մակագրությունները վկայություն էին այն բանի, որ մեր երկրի մեծ տան բոլոր զավակները կարմիր բանակի շարքերում հերոսաբար մարտնչել են ֆաշիզմի ջախջախման պատմական կռվում։

Պարտված Բեռլինը մեր թիկունքում է։ Արդեն Էլբայի ափին ենք։ Ռադիոյով լսեցինք Գերմանիայի անվերապահ կապիտուլյացիայի լուրը... տեղի ունեցավ անձնակազմի միտինգ՝ հաղթանակի օրվա առթիվ։ Տոնախմբություն էր բոլոր գնդերում... Ֆաշիստական Գերմանիայի դեմ տարած հաղթանակը ուրախությամբ էր համակել բոլորի սրտերը։ Էլբայի ափերից դիվիզիայի անձնակազմը նամակ-զեկուցագիր ուղարկեց հայ ժողովրդին՝ հայրենիքի հանդեպ իր պարտքը սրբությամբ կատարելու մասին։

Սովետական զինված ուժերը Հայրենական մեծ պատերազմն ավարտեցին հաղթանակով, որի շնորհիվ պահպանվեց մեր հայրենիքի ազատությունն ու երջանկությունը, և Եվրոպայի բազմաթիվ ժողովուրդներ իրենց ուսերից թոթափեցին ֆաշիզմի ծանր լուծը։

Հայրենական մեծ պատերազմից հետո սովետական ժողովուրդը ձեռնամուխ եղավ խաղաղ շինարարական աշխատանքի, պատերազմից ստացած վերքերի բուժմանը։

Սովետական ժողովուրդը մշտապես մեծարում է մեր հայրենիքի ազատության ու անկախության համար զոհված հերոսների հիշատակը։ Մեր հանրապետության բազմաթիվ քաղաքներում ու գյուղերում հուշարձաններ են կանգնեցրել այն ռազմիկների հիշատակին, որոնք զոհվել են մեծ հայրենականի ռազմաճակատներում։ Զոհված թամանցիների հիշատակը իրենց սրտերում հավերժ են պահում սևաստոպոլցիները, որոնք ՀՍՍՀ համապատասխան մարմինների հետ Սապուն գարայի բարձունքում հուշասյուն են կառուցել քաղաքի ազատագրման համար մղված մարտերում նահատակված հայ ռազմիկների հիշատակին։

Այն ժամանակ, երբ Սովետական Միությունը և ազատասեր բոլոր ժողովուրդները մտահոգված են աշխարհում տևական խաղաղության պահպանմամբ, իմպերիալիստական ռեակցիոն ուժերն իրենց ագրեսիվ քաղաքականությամբ վտանգ են սպառնում մարդկությանը։ Այսպիսի պայմաններում կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը բոլոր հնարավոր միջոցները գործադրում են մեր հայրենիքի անվտանգությունը պահպանելու և իմպերիալիստական ռեակցիոն ուժերի վտանգավոր գործողությունները ձախողելու համար։



# ՄԱՅԻՍՅԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ՀԻՍՆԱՄՅԱ ՏԱՐԵԼԻՑԸ

## ՆՈՐ ԿԱՐԳԵՐԻ ԱՅԳԱԲԱՑԸ

Վ. Ն. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր

Քաղաքացիական պատերազմի դպրոցն իզուր չի անցնում ժողովուրդների համար,— ասում է Վ. Ի. Լենինը։ Այդ դպրոցը սովորեցնում է ճնշված դասակարգերին քաղաքացիական պատերազմ վարելը, սովորեցնում է հաղթական հեղափոխություն (տե՛ս Երկեր, հ. 15, էջ 217)։ Դասակարգային պայքարում հաղթելու այդպիսի դպրոց էր 1920 թվականի մայիսյան ապստամբությունը, որը մի փայլուն փորձ էր դաշնակների բուրժուական ռեժիմը տապալելու և Հայաստանում սովետական իշխանություն հաստատելու համար։

Մայիսյան ապստամբությունը Հայաստանի աշխատավորության առաջին մասսայական, համաժողովրդական զինված հեղափոխական ելույթն էր, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթական երթի արձագանքը։ Այն իր մասսայականությամբ ու կատարած դերով աննախադեպ էր Հայաստանի հեղափոխական շարժումների պատմության մեջ։

Հաճելի է գիտակցել, որ այսօրվա մեր սքանչելի կոմունիստական ներկայի ստեղծման գործում իրենց անգնահատելի ավանդը ներդրեցին ոչ-հեռավոր անցյալի մեր նախորդները, հեղափոխական բանվորներն ու գյուղացիները, կոմունիստներն ու անկուսակցական բոլշևիկները, որոնք, իրենց արյունով ներկելով Հայաստանի հողը, նախապատրաստեցին հայ ժողովրդի ազատագրումը, նրա ազգային ու սոցիալական վերածնությունը։

* * *

Հոկտեմբերյան հեղափոխությունը նոր, հզոր թափ հաղորդեց բանվորական և ազգային-ազատագրական շարժումներին նաև Ռուսաստանի ծայրամասային շրջաններում, այդ թվում և Անդրկովկասում։ Սակայն իմպերիալիստական տերությունների օգնությամբ երկրամասի շահագործող դասակարգերին ու նրանց պաշտպաններին՝ վրաց մենշևիկյան, հայ դաշնակցական և ադրբեջանական մուսավաթիստական բուրժուական-ազգայնական կուսակցություններին, հաջողվեց ժամանակավորապես ճնշել հեղափոխական շարժումները, կազմել նախ՝ Անդրկովկասյան կոմիսարիատ ու սեյմ, ապա բուրժուական մարիոնետային կառավարություններ և Անդրկովկասը կտրել Սովետական Ռուսաստանից։ Դառնալով գերմանա-թուրքական, այնուհետև՝ անգլո-ֆրանս-ամերիկյան իմպերիալիստների հլու կամակատարը, նրանք անասելի ծանր վիճակի մեջ դրեցին երկրի ժողովրդական տնտեսությունն ու, մանավանդ, աշխատավոր մասսաներին։

Դաշնակների տիրապետության օրոք Հայաստանը դարձավ սովի, մահվան, արցունքի ու թշվառության երկիր։ Մուսավաթականների ու վրաց մենշևիկների նման դաշնակները հրահրում էին հայ-ադրբեջանական ու հայ-վրա-

ցական եղբայրասպան կռիվներ, որոնք նոր աղետներ էին պատճառում ժողովրդին։ Առանձնապես ծանր էր Արևմտյան Հայաստանից գաղթած ավելի քան կես միլիոն հայերի վիճակը, որոնք ոչնչանում էին սովից ու համաճարակներից։ Դաշնակցական խմբապետական բանդաներն ու «կանոնավոր» զորքերը պակասը լրացնում էին գյուղերը ավերելով ու թալանելով, բնակչությանը մասսայական տեռորի ենթարկելով։ Դաշնակցական կառավարությունը չլուծեց աշխատավորության շահերից բխող և ոչ մի հարց։ Գյուղացին ոչ միայն հող և ազատություն չէր ստանում, այլև զրկվում էր իր ունեցած հողից ու տրնքում էր ծանր հարկերի տակ։ Բաքվում լույս տեսնող «Կոմունիստ» հայատառ թերթը գրում էր. «Թերևս աշխարհի ոչ մի անկյունում այնպիսի արագությամբ չի աճում թշվառների, խեղճերի ու շահագործվողների բանակը, որպիսի արագությամբ այդ կատարվում է Հայաստանի գյուղերում» (1920 թ., № 2)։

Ծանր էր նաև բանվորների ու քաղաքային աշխատավորության դրությունը։ Բանվորներն աշխատում էին օրական 12—14 ժամ, չունեին ապրուստի շատ թե քիչ տանելի պայմաններ։ Գործազրկությունը մեծ չափերի էր հասնում, սովն ու համաճարակները հնձում էին նաև քաղաքի բնակչությանը։ Ծեծը, տուգանքները, ամեն տեսակ կամայականությունը բանվորների նկատմամբ սովորական երևույթ էր դաշնակցական Հայաստանում։ Գործադուլները ճնշվում էին, գործադուլավորներին անվանում էին «ազգի դավաճաններ»։

Ահավոր չափերով քայքայվում էր Հայաստանի տնտեսական կյանքը։ Կանգ էին առել Ալավերդու և Ղափանի պղնձահանքերն ու լեռնարդյունաբերական ձեռնարկությունները, թերբեռնվածությամբ էին գործում թեթև ու սննդարդյունաբերության առանց այն էլ սակավաթիվ ձեռնարկությունները։ Բավական է ասել, որ 1919 թ. դաշնակցական Հայաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը, 1913 թ. համեմատությամբ, կրճատվել էր մոտ 12, իսկ գյուղատնտեսությանը՝ մոտ 6 անգամ։ Սովի, համաճարակների ու անապահով կյանքի հետևանքով ոչնչացել էր երկրի բնակչության մեկ երրորդը։ Միայն Երևանում 1919 թ. սովից ու համաճարակներից մահացել էր մոտ 14 հազար մարդ։

Այսպիսի պայմաններում դաշնակցական պետական ապարատում իշխում էր կամայականությունը, կեղծիքը, կաշառակերությունը, թալանելու և կեղեքելու մոլուցքը։ Պետության թե՛ ներքին, թե՛ արտաքին քաղաքականությունն երկիրը տանում էր դեպի կործանում։ Դաշնակները գործում էին օտար պետությունների թելադրանքով, որոնց «հայկական հարցը» այնքան էր հետաքրքրում, որքան այն պետք էր իրենց իմպերիալիստական նպատակների իրագործման համար։

Ստեղծված դրությունից դուրս գալու միակ ելքը գոյություն ունեցող ռեժիմը տապալելու և սովետական իշխանություն հաստատելու մեջ էր։ Այստեղից էլ պարզ է, թե ինչու Հայաստանի բանվորները, գյուղացիները, հեղափոխական զինվորները, գիտակից աշխատավորությունը երբեք չէին դադարեցնում սովետական իշխանության համար մղվող պայքարը։

Այդ պայքարի ոգեշնչողներն ու կազմակերպիչները տեղական բոլշևիկյան կազմակերպություններն էին, որոնց գործունեությունը ղեկավարում էր ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեն։ Մտահոգված լինելով հայ ժողովրդի ազատագրմամբ՝ Վ. Ի. Լենինը, ՌԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեն ու Սովետական Ռուսաստանի կառավարությունը նույնիսկ քաղաքացիական կռիվների թեժ պահին անհրաժեշտ օգնություն էին ցույց տալիս նրան։ Ռուսաստանում գտնվող



հայ գաղթականներին օգնելուց բացի, նրանք կադրեր, հեղափոխական գրականություն և այլ միջոցներ էին տրամադրում Հայաստանին՝ ծավալվող ազատագրական պայքարն ուժեղացնելու և հաղթանակով պսակելու համար։

Հայաստանի հեղափոխական շարժումներն ամբողջ Անդրկովկասի հեղափոխական ազգային-ազատագրական շարժումների բաղկացուցիչ մասն էին։ ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեն 1918—20 թթ. բավականաչափ փորձված կուսակցական աշխատողներով ավելի ուժեղացրեց տեղական բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությունը։

1919 թ. հեղափոխական շարժումների նոր վերելք է սկսվում Հայաստանում։ Հանրապետության համարյա բոլոր գավառներում գործում էին բոլշևիկյան կոմիտեներ ու բջիջներ։ 1919 թ. ապրիլին ստեղծվում է Հայաստանի առաջին կոմունիստական երիտասարդական «Սպարտակ» կազմակերպությունը, որը սերտ կապեր է հաստատում հարևան հանրապետությունների երիտասարդ կոմունիստների հետ և բոլշևիկների ղեկավարությամբ պայքարում հանուն սովետական կարգերի հաղթանակի։ «Սպարտակ» միությունը ղեկավարում էին Ղ. Ղուկասյանը, Ա. Բուդաղյանը, Ա. Խանջյանը։ Միությունը նույնանուն թերթ հրապարակեց, բայց այն անհապաղ արգելվեց դաշնակների կառավարության կողմից։

ՌԿ(բ)Կ երկրային կոմիտեի նախաձեռնությամբ 1919 թ. սեպտեմբերին Երևանում կայացավ բոլշևիկների հանրապետական խորհրդակցություն, որն ունեցավ կոնֆերանսի նշանակություն։ Խորհրդակցությունը լսեց Ս. Կասյանի, Ա. Մռավյանի, Ա. Մելիքյանի և Ղ. Ղուկասյանի զեկուցումները կուսակցական աշխատանքի վիճակի և հերթական անելիքների, ինչպես նաև երիտասարդության շրջանում տարվող աշխատանքի ու նրա խնդիրների մասին։ Այնտեղ ընտրվեց ՌԿ(բ)Կ Հայաստանի կոմիտե (Արմենկոմ), որի անդամներն էին Ս. Կասյանը, Ա. Մռավյանը, Ս. Ալավերդյանը, Ղ. Ղուկասյանը, Ա. Մելիքյանը, Դ. Շահվերդյանը, Ս. Խանոյանը։ Արմենկոմը ՌԿ(բ)Կ Կովկասյան երկրային կոմիտեի ղեկավարությամբ եռանդուն գործունեություն ծավալեց։ Ամրապնդվեցին կուսկազմակերպությունները, ստեղծվեցին նոր կոմբջիջներ։ Նրա որոշմամբ Ս. Կասյանը գրեց Ո՞ւր է ելքը նշանավոր աշխատությունը, որով բոլշևիկները հայ ժողովրդի փրկության միակ ելքը համարում էին Հայաստանում սովետական կարգերի հաստատումը։

Արմենկոմը նախապատրաստեց Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների առաջին անլեգալ կոնֆերանսը, որը տեղի ունեցավ 1920 թ. հունվարին։ Կոնֆերանսը ներկայացնում էր հանրապետության բոլոր բոլշևիկյան կազմակերպություններին։ Այն քննեց կուսակցական և երիտասարդական կազմակերպությունների ընթացիկ ու հերթական աշխատանքի խնդիրները, ընդունեց զինված ապստամբության միջոցով դաշնակների տիրապետությունը տապալելու և սովետական իշխանություն հաստատելու դիրքորոշում։ Կոնֆերանսն ընտրեց Արմենկոմի նոր կազմ և կարևոր դեր խաղաց Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության կազմակերպական ձևավորման գործում։

Կարճ ժամանակում կոնֆերանսի որոշումները քննարկվեցին և հավանության արժանացան տեղերում։ Բոլշևիկների հեղափոխական ազդեցությունը խափանելու նպատակով, դաշնակցական կառավարությունը վճռեց բոլշևիկներին Հայաստանից արտաքսել։ Թեև ուժեղանում էին կոմունիստների հա-

լածանքները, սակայն անհնար էր կանխել հասունացող հեղափոխությունը։

1920 թվականի գարնանը Հայաստանում արագորեն ստեղծվում էր հեղափոխական իրադրություն, մոլեգնում էր համազգային ճգնաժամը, բուռն թափով ծավալվում էին գործադուլային պայքարն ու քաղաքական ցույցերը, աննախընթաց վերելք էին ապրում գյուղացիական շարժումները, զինվորների դասալքությունն ընդունում էր մասսայական բնույթ, հաճախակի փոփոխություններ էին տեղի ունենում կառավարության կազմում։ Երկրի ներքին ու արտաքին դրությունը կրիտիկական էր. ակներև էր, որ մասսաները չեն ուզում ապրել հին ձևով, ծայրաստիճան բարձրացել էր նրանց հեղափոխական տրամադրությունը, իսկ կառավարող շրջանները մեծագույն շփոթության մեջ էին։

* * *

Սովետական իշխանության ամրապնդումը Ռուսաստանում, քաղաքացիական կռիվներում կարմիր բանակի տարած փայլուն հաղթանակները, կարմիր զորքերի մոտենալը Անդրկովկասի սահմաններին և կուսկազմակերպությունների գործունեության բարելավումը նոր թափ հաղորդեցին Անդրկովկասի, այդ թվում Հայաստանի հեղափոխական շարժումներին։

Անդրկովկասում և Հայաստանում սովետական կարգերի հաստատման գործն զգալիորեն հեշտացավ, երբ 1920 թ. ապրիլի 28-ին Ադրբեջանի ապստամբ բանվորներն ու գյուղացիները, բոլշևիկների ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի, 11-րդ կարմիր բանակի օգնությամբ, տապալեցին մուսավաթական բուրժուական ռեժիմը և հաստատեցին սովետական իշխանություն։

Ադրբեջանում սովետական կարգերի հաղթանակի լուրը մեծ խանդավառություն առաջացրեց Հայաստանի բանվորա-գյուղացիական մասսաների շրջանում, որոնք այդ ժամանակ բոլշևիկների ղեկավարությամբ նախապատրաստվում էին Մայիսմեկյան տոնակատարությանը։ Բոլշևիկյան կազմակերպությունները երբեք այնքան լավ չէին կազմակերպել այս տոնակատարությունը, ինչպես 1920 թվականին։ Բոլշևիկյան կոչով ու ղեկավարությամբ, մայիսի 1-ին Հայաստանի համարյա բոլոր քաղաքներում և շրջաններում տեղի ունեցան բանվորների, գյուղացիների, զինվորների մասսայական-քաղաքական ցույցեր ու հակակառավարական ելույթներ, որոնք անցան Սովետական Ռուսաստանի, Ադրբեջանի հետ համերաշխության նշանաբանով և հակադաշնակցական ու հակաիմպերիալիստական լոզունգներով։

Մայիսմեկյան ցույցերը համեմատաբար ավելի կազմակերպված, մասսայական և սուր քաղաքական բնույթ էին կրում Երևանում, Ալեքսանդրապոլում, Ղարաքիլիսայում, Կարսում և Սարիղամիշում։ Երևանում մայիսմեկյան ցույցերն սկսվեցին վաղ առավոտյան (ժամը 8-ից) և տևեցին մոտ ութ ժամ։ Սկզբում հազարավոր ցուցարարներ ՌԿ(բ)Կ Հայաստանի և Երևանի կոմիտեների անդամների՝ Ստ. Ալավերդյանի, Ս. Մարտիկյանի, Ա. Խանջյանի, Ղ. Ղուկասյանի և ուրիշների ղեկավարությամբ, «Ինտերնացիոնալ» և հեղափոխական այլ երգեր երգելով, կարմիր դրոշակներով շարժվում են դեպի հրապարակ։ Դաշնակները նախ փորձում են ուժով ցրել ցույցը, բայց չեն կարողանում, այնուհետև նրանք խորամանկորեն կազմակերպում են զուգահեռ, ավելի ճիշտ, հակացույց, բայց դարձյալ ապարդյուն, քանի որ բոլշևիկյան ագիտացիայի ազդեցությամբ նրանց ցուցարարների մի մասը միանում է հեղափոխական մասսաներին։ Դաշնակցական պառլամենտի շենքի մոտ (այժմ երաժշտական կոմեդիայի թատրոնի շենքը) տեղի է ունենում բազմամարդ մի-



տինգ։ Դաշնակները դարձյալ փորձեր են անում վարկաբեկել բոլշևիկներին, սովետական իշխանությանը, փառաբանում են իմպերիալիստական տերությունների, հատկապես ԱՄՆ-ի քաղաքականությունը։ Բայց նրանց ելույթներին ժողովուրդը պատասխանում է թշնամանքով, սուլոցներով։ Միտինգն անցնում է բոլշևիկների ղեկավարությամբ, որոնք վայելում էին մասսաների ջերմ համակրանքը։ Նրանք անվախ հրապարակում էին «Կեցցե՛ Սովետական Ռուսաստանը», «Կեցցե՛ Սովետական Ադրբեջանը», «Կորչի՛ դաշնակների ավազակային կառավարությունը», «Կորչեն անգլո-ամերիկյան իմպերիալիստները», «Կեցցե՛ կարմիր բանակը», «Կեցցե՛ Սովետական Հայաստանը» և բոլշևիկյան այլ լոզունգներն ու կոչերը։ Միտինգի մասնակիցները ցնծությամբ ընկալեցին Արմենկոմի ներկայացուցիչ, բոցաշունչ հեղափոխական Ստ. Ալավերդյանի կրակոտ ճառը։ Մերկացնելով դաշնակների և նրանց օտարերկրյա տերերի հակաժողովրդական քաղաքականությունը, նա մասսաներին կոչ արեց տապալել Հայաստանում տիրող կարգերը և հաստատել սովետական իշխանություն։ Միտինգում Ալավերդյանի ճառն ընդհատելու դաշնակցականների փորձերն ապարդյուն անցան։ Այնուհետև ցուցարարները շարժվում են դեպի քաղաքի մյուս հրապարակը (Փանախանի— այժմ Ազիզբեկովի)։ Նրանց միանում են աշխատավորական նոր խմբեր։ Տեղի է ունենում միտինգ, որը դարձյալ անցնում է բոլշևիկների ղեկավարությամբ։

Ավելի կազմակերպված, մասսայական ու մարտական էր Ալեքսանդրապոլի աշխատավորության և կայազորի զինվորների մի զգալի մասի մայիսմեկյան համատեղ ցույցը։ Այն նախապատրաստել էր բոլշևիկների Ալեքսանդրապոլի կոմիտեն, որը միաժամանակ նախօրոք մեծ քանակությամբ մայիսմեկյան հատուկ կոչ էր հրապարակել։ Այնտեղ առաջ էր քաշված դաշնակցական, մուսավաթական ու մենշևիկյան բուրժուական կառավարությունների փլատակների վրա Անդրկովկասի բանվորների և գյուղացիների իշխանություն հաստատելու պահանջը։ Հակառակ դաշնակցականների հակասովետական պրովոկացիաների, մասսաները համախմբվեցին բոլշևիկների դրոշի տակ և ջերմորեն դիմավորեցին բոլշևիկ հռետորների՝ Բ. Ղարիբջանյանի, Ս. Մուսայելյանի, Ա. Նուրիջանյանի, Ե. Սևյանի, Ա. Գոգունցի և ուրիշների ելույթները։ Ցույցերն այնքան հաջող էին, որ կայազորի զինվորների զգալի մասը, կայազորի պետ գեներալ Խաչատուրովի հետ, անցավ ցուցարարների կողմը։ Դաշնակները ոչ մի հաջողություն չունեցան։ Ցուցարարների ընդհանուր միտինգը ողջույնի հեռագիր ուղարկեց Սովետական Ադրբեջանի ռազմահեղափոխական կոմիտեին, ողջունեց սովետական կարգերի հաղթանակը Ադրբեջանում, Հայաստանի աշխատավորության անունից հանդիսավոր խոստում տվեց՝ տապալել դաշնակների լուծը և կոմունիստական Ռուսաստանի հետ միասին գնալ դեպի պայծառ ապագան։

Ալեքսանդրապոլի աշխատավորության և զինվորների ցույցերը շարունակվում են մինչև երեկո, ցուցարարների թիվը հասնում էր ավելի քան 5000 մարդու։

Բազմամարդ էին նաև Կարսի, Սարիղամիշի և Ղարաքիլիսայի մայիսմեկյան ցույցերը։ Ղարաքիլիսայի ցույցերին մասնակցում էին շրջակա Հաջիղարա (այժմ Լեռնապատ), Վոսկրեսենովկա (Լերմոնտովո), Յաղուբլի (Մեղրուտ), Վարդանլի (Խնձորուտ) և բազմաթիվ այլ գյուղերի գյուղացիներն ու երկաթուղային կայարանների բանվորները։ Հաջիղարայի գյուղացիների բազմությու-

նը, կոմունիստների ղեկավարությամբ, մինչև Ղարաքիլիսա ոտքով գնաց՝ կարմիր դրոշակը պարզած և բարձր տրամադրությամբ։ Այստեղ ցուցարարների թիվը հասնում էր ավելի քան 2000 մարդու։ Տոնականորեն զարդարված գնացքով շարժվելով Սանահին՝ նրանք համարյա բոլոր կայարաններում միտինգներ անցկացրին։ Ղարաքիլիսայում, ինչպես նաև Սարիղամիշում զինվորների զգալի մասը մասնակցություն ունեցավ մայիսմեկյան ցույցերին։

Մեծ էր մայիսմեկյան ցույցերի նշանակությունը Հայաստանում։ ՌԿ(բ)Կ Հայաստանի կոմիտեի (Արմենկոմ)՝ Ադրբեջանի հեղկոմին ուղղած ողջույնի հեռագրից և ՌԿ(բ)Կ երկրային կոմիտեին ուղարկած զեկուցագրերից երևում է, թե Հայաստանի աշխատավորությունն ինչպիսի ոգևորությամբ ընդունեց սովետական կարգերի հաղթանակը Ադրբեջանում, լայն մասսաների շրջանում որքան խոր արմատներ էին գցել բոլշևիկյան գաղափարները, ինչպես էր հասունանում և օրակարգի հարց դառնում իշխանության գրավման խնդիրը։

Մայիսմեկյան քաղաքական ցույցերը մասսաների հեղափոխական տրամադրության գագաթնակետն էին։ Դաշնակցության կուսակցության ու կառավարության ղեկավար շրջանները շփոթության մեջ էին։ Չկարողանալով կասեցնել դեպքերի հասունացումը՝ նրանք խարդախությամբ ու խորամանկությամբ միջոցներ ձեռնարկեցին՝ վերահաս ապստամբությունը ճնշելու համար։ Դաշնակները արձակեցին Ա. Խատիսյանի գլխավորած կաբինետը և դրա փոխարեն ստեղծեցին Հ. Օհանջանյանի կաբինետը, ցրեցին պառլամենտը, օրենք հրատարակեցին մահապատիժների մասին, արգելեցին գործադուլները, կոմկուսակցությունը օրենքից դուրս հայտարարեցին, պատժիչ արշավախմբեր ուղարկեցին տեղերը և այլն։ Դաշնակցականների խորհրդատուներն էին ԱՄՆ-ի զինվորական միսիայի ներկայացուցիչները. նրանց օգնում էին բուրժուական և մանրբուրժուական ազգայնական կուսակցությունները՝ ռամկավարները, էսեռները և հակահեղափոխական մյուս ուժերը։

Չնայած այդ բոլորին, մայիսյան ցույցերին հաջորդեցին ժողովրդական մասսաների հուժկու զինված ելույթները, որոնք ուժգնորեն ցնցեցին դաշնակցական ռեժիմի խարխուլ հիմքերը։

Դեռ մայիսի 2-ին Ալեքսանդրապոլի կայարանը և կայարանամերձ շրջանը փաստորեն գտնվում էր ապստամբ բանվորների ու զինվորների ձեռքում։ Այստեղ էր «Վարդան զորավար» զրահագնացքը, որն իր հրամանատար, բոլշևիկ Սարգիս Մուսայելյանի գլխավորությամբ անցել էր ապստամբների կողմը։ Շարժումը գլխավորում էր ՌԿ(բ)Կ Ալեքսանդրապոլի կոմիտեն, որը երկու անգամ (մայիսի 3-ին և 5-ին) Արմենկոմից զինված ապստամբություն սկսելու թույլտվություն խնդրեց։ Մայիսի 7-ին «Վարդան զորավար» զրահագնացքում տեղի ունեցավ Արմենկոմի և Ալեքսանդրապոլի, Կարսի, Սարիղամիշի, Քավթառլուի, Դիլիջանի ու Ղարաքիլիսայի կուսկազմակերպությունների ներկայացուցիչների խորհրդակցություն, որը քննեց զինված ապստամբություն կազմակերպելու հարցը։ Ինչպես Արմենկոմում, այստեղ էլ տարաձայնություններ առաջացան այն հարցի շուրջը, թե որտեղից պետք է սկսել ապստամբությունը՝ Ղազախի՞ց, թե՞ Ալեքսանդրապոլից։ Խորհրդակցությունը որոշեց ապստամբությունն սկսել Ալեքսանդրապոլից, ընտրեց Հայաստանի ռազմա-հեղափոխական կոմիտե, որի կազմում էին Ս. Մուսայելյանը, Ա. Նուրիջանյանը, Ա. Գոգունցը, Գ. Սարգսյանը, Ա. Տեր-Սահակյանը, Լ. Ուլիբեկյանը, Պ. Պետրոսյանը և Արմենկոմի ներկայացուցիչներ Դր. Տեր-Սիմոնյանն ու Ա. Մելքոնյանը։



Մայիսի 10-ին սկսվեց զինված ապստամբությունը։ Ապստամբության դրոշն առաջինը բարձրացրին Ալեքսանդրապոլի աշխատավորությունն ու կայազորի զինվորները։ Այդ օրն իշխանությունը վերցնելով իր ձեռքը՝ Հայաստանի ռազմահեղափոխական կոմիտեն Հայաստանը հռչակեց սովետական և տապալված հայտարարեց դաշնակցական կառավարությունը։ Այնուհետև, Հեղկոմը ձեռնամուխ եղավ նոր պետական ապարատի ստեղծմանը, ձևավորեց կարմիր գվարդիա, կարմիր բանակ, միջոցներ ձեռնարկեց հակահեղափոխական ուժերի ջախջախման, նրանց քայքայիչ գործունեության կանխման, բնակչության պարենավորման համար և այլն։ Քաղաքի պաշտպանության գործում մեծ դեր խաղացին Սարգիս Մուսայելյանի գլխավորած կարմիր բանակի ջոկատները, հատկապես «Վարդան զորավար» զրահագնացքի զինվորները, Ե. Սևյանի հրամանատարությամբ գործող կարմիր գվարդիական ջոկատը, էսկադրոնի հրամանատար, այժմ Սովետական Միության մարշալ Հովհաննես Բաղրամյանի հեծյալները։

Ալեքսանդրապոլի օրինակին հետևեցին Քավթառլուի և շրջակա գյուղերի աշխատավորները։ Մայիսի 10-ին շրջանի ռազմահեղափոխական կոմիտեի (Ա. Փանյան, Ն. Կուրղինյան, Ա. Մովսիսյան) ղեկավարությամբ նրանք ապստամբեցին և տապալեցին տեղական իշխանությունը։ Նույն օրը ոտքի ելան Կարսի աշխատավորներն ու կայազորի զինվորները. իշխանությունն անցավ նորաստեղծ ռազմա-հեղափոխական կոմիտեի (Ղ. Ղուկասյան, Ա. Նազարյան, Գ. Բայթունի, Դ. Մելիկով, Վ. Ղազանչյան) ձեռքը։ Այդ օրը տապալվեց նաև Սարիղամիշի դաշնակցական տեղական իշխանությունը, և դրության տերը դարձան բոլշևիկները, ռազմա-հեղափոխական կոմիտեն (Ա. Ճուղուրյան, Լ. Մխչյան, Պ. Կուխմալայկին, Պ. Մատիչկո և ուրիշներ)։

Մայիսի 13-ին հեղկոմի անդամները, Հ. Սարուխանյանի, Բ. Բատիկյանի, Ս. Մակարյանի և ուրիշների գլխավորությամբ, ապստամբություն են սկսում Նոր Բայազետի (Կամո) գավառում։ Մայիսի 14-ին ապստամբում են Շամշադինի, 19-ին՝ Իջևանի, 21-ին՝ Դիլիջանի շրջանների աշխատավորները։ Ղազախ-Շամշադինի շրջանների ապստամբությունը գլխավորում է գավառային ռազմա-հեղափոխական կոմիտեն, որի կազմում էին Շ. Ամիրխանյանը, Ե. Մկրտումյանը, Ա. Բերբերյանը, Գ. Հարությունյանը, Կ. Այվազյանը։ Այստեղ ապստամբներին հաջողվում է կապվել Սովետական Ադրբեջանի և կարմիր բանակի հետ ու շոշափելի օգնություն ստանալ։

Մայիսի երկրորդ կեսին ապստամբության բոցերը տարածվում են նաև Զանգեզուրում, որտեղ շարժումը ղեկավարում էր ՌԿ(բ)Կ Զանգեզուրի կենտրոնական կոմիտեն՝ Հ. Կամարու գլխավորությամբ։ Ապստամբության ղեկավարներից էին Բագրատ Հարությունյանը, Մակիչ Մաշուրյանը, Քրիստափոր Մկրտչյանը և ուրիշներ։ Այստեղ էլ, Ղազախ-Շամշադինի նման, ապստամբությունը երկար տևեց։ Ապստամբներին օգնում էին կարմիր բանակի փոքրաթիվ զորամասերը։ Բայց ապստամբները միաժամանակ արյունալի կռիվներ էին մղում Դրոյի ու Նժդեհի հրոսակախմբերի դեմ։

Դաշնակներին հաջողվեց ապստամբությունը կանխել միայն Սուրմալուի և Ղարաքիլիսայի շրջաններում. նրանք նախօրոք ձերբակալեցին տեղական ռազմահեղափոխական կոմիտեի անդամներին և կուսկազմակերպությունների ղեկավարությանը։ Չնայած դրան, մայիսյան ապստամբությունն արդեն ընդունել էր համաժողովրդական բնույթ։

Սակայն, դաշնակներին, այնուամենայնիվ, հաջողվեց արևմտյան, հատ-

կապես, ԱՄՆ-ի իմպերիալիստների, ինչպես նաև ռուսական սպիտակգվարդիականների ու Անդրկովկասի հակահեղափոխական ուժերի օգնությամբ, արյան մեջ խեղդել Հայաստանի բանվորների, գյուղացիների ու հեղափոխական զինվորների մայիսյան հերոսական ապստամբությունը և դաժան հաշվեհարդար տեսնել նրա ղեկավարների ու մասնակիցների հետ։ Բանտերը լցվեցին հարյուրավոր կոմունիստներով, ամենուրեք մոլեգնում էր դաշնակների կամայականությունը, սպանություններն ու կատաղի տեռորը հնձում էին Հայաստանի բոլշևիկների շարքերը։ Դաշնակները գազանաբար խոշտանգեցին ու սպանեցին Ստ. Ալավերդյանին, Բ. Ղարիբջանյանին, Ս. Մուսայելյանին, Հ. Սարուխանյանին, Ա. Փանյանին, Ա. Ճուղուրյանին, Պ. Կուխմալյկինին, Պ. Մատիչկոյին, Ս. Ոսկանյանին, Ե. Մկրտումյանին, Ե. Սևյանին և ուրիշների։ Սովետական իշխանության համար մղված մարտերում հերոսաբար զոհվեցին Ղ. Ղուկասյանը, Բ. Բատիկյանը, Վ. Ալեքսեևը, Ք. Մկրտչյանը, Վ. Հովսեփյանը, Բ. Հարությունյանը, Վ. Ռադիոնովը, Մ. Մաշուրյանը, Ա. Մելքոնյանը և շատ ուրիշներ։ Նրանք ընկան՝ հաստատ համոզված լինելով, որ կոմունիզմի գաղափարների հաղթանակն անխուսափելի է։ Մահից առաջ Ստ. Ալավերդյանը դաշնակ դահիճների երեսին շպրտել է. «Լավ հիշեցեք, հեղափոխության գործը չի մեռնի։ Հայաստանի բանվորներն ու գյուղացիները տեր կդառնան իշխանությանը»։ «Հայաստանի հողը մեր արյունով կներկվի և կդառնա կարմիր,— ասել է Բ. Ղարիբջանյանը։— Մի մոռանաք իմ խոսքերը։ Հայաստանը խորհրդային կդառնա։ Կեցցե Խորհրդային Հայաստանը»։ Իսկ Մուսայելյանը ցասկոտ բացականչել է. «Ես մահից վախեցող չեմ։ Սպանեցեք ինձ հենց այստեղ, բայց դուք չեք կարող խափանել անխուսափելին, այն, որ Հայաստանն ազատ կլինի և մեր գործը չի մեռնի» (տե՛ս Մայիսյան ապստամբությունը Հայաստանում, Երևան, 1930 թ., էջ 136)։

Սովետական Ռուսաստանի ու Ադրբեջանի կառավարությունների, Կոմինտերնի գործկոմի, ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի, երկրամասի կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունների և ամբողջ աշխատավորության վճռական բողոքները՝ դաշնակների կառավարության վարած տեռորի և կամայականության քաղաքականության դեմ, կասեցրին դաշնակցական զնդաններում տառապող շատ կոմունիստների ֆիզիկական ոչնչացումը։ Հալածված դաշնակների տեռորից՝ ապստամբության շատ մասնակիցներ նույնիսկ ընտանիքներով հեռացան Հայաստանից և ապաստան գտան եղբայրական Ադրբեջանում։

Այսպիսով, մայիսյան ապստամբությունը, չնայած իր համաժողովրդական բնույթին, հերոսականությանը, պարտվեց։ Բազմաթիվ են ապստամբության պարտության պատճառները։ Այն պարտվեց, առաջին հերթին, այն պատճառով, որ թշնամիներն ավելի ճկուն գտնվեցին ու ավելի շուտ վերախմբավորեցին իրենց ուժերը, քան ապստամբները։ Նրանք, ինչպես նման դեպքերում վարվում են հակահեղափոխական ուժերը, սովի ոսկրոտ ձեռքն օգտագործեցին հեղափոխության դեմ։ Ապստամբ շրջանները, զրկված պարենային մատակարարումից և անկարող լինելով կանոնավորելու պարենային գործը, ընկան նեղ վիճակի մեջ։ Այդ տեսակետից իրենց բացասական դերը խաղացին ԱՄՆ-ի միսիան և մենշևիկյան Վրաստանը։ Պարենավորելով դաշնակներին՝ ԱՄՆ-ը միջոցներ չխնայեցին ապստամբ շրջանների պարենային գործը ձախողելու, ապստամբներին սովահարության ենթարկելու համար։ Իսկ մենշևիկյան Վրաստանը փակում էր Ռուսաստանի ու Ադրբեջանի կողմից ապստամբ շրջաններին օգնություն ցույց տալու տրանզիտային ճանապարհները։



Ապստամբության պարտության գլխավոր պատճառներից մեկը նրա շարժիչ ուժերի՝ բանվոր դասակարգի և չքավոր գյուղացիության, դաշինքի թուլությունն էր։ Բանվոր դասակարգը բավականաչափ կազմակերպված չգտնվեց՝ իր ետևից տանելու չքավոր գյուղացիներին և ամբողջ աշխատավորությանը։ Նրանց գործողությունների մեջ չկար բավականաչափ միասնություն։ Դա էլ իր հերթին բացատրվում է ապստամբության ղեկավար շտաբի թույլ տված սխալներով և տեղական կուսկազմակերպությունների աշխատանքի լուրջ թերություններով։ ՌԿ(բ)Կ Արմենկոմը մայիսյան ցույցերից հետո ժամանակին չնկատեց, որ զինված ապստամբությունը դարձել է օրակարգի հարց։ Նա անհարկի տատանումներ ցուցաբերեց։ Միայն գավառային կազմակերպությունների համառ պահանջներից հետո Արմենկոմը համաձայնեց նահանջի տակտիկայից անցնել հարձակողականի և զինված ապստամբության սանկցիա տալ։ Սակայն այդ ժամանակ էլ նա չկարողացավ իր ձեռքը վերցնել Հայաստանում զինված ապստամբության նախապատրաստման ու անցկացման նախաձեռնությունն ու ղեկավարությունը։ Արմենկոմի անդամների ոչ-բավականաչափ փորձվածությունը նրանց հնարավորություն չտվեց արագ կողմնորոշվել, ճկուն օգտագործել հեղափոխական իրադրությունը, Երևանում ևս նախապատրաստել ու անցկացնել զինված ապստամբություն։

Մայիսյան ապստամբությունը Հայաստանի հեղափոխական շարժումների պայծառ էջերից մեկն է, ամենամասսայական զինված ելույթը ռեակցիայի սև ուժերի դեմ։ Այն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթարշավի կոնկրետ դրսևորումն էր Հայաստանում և ապացույցն այն բանի, որ հայ ժողովուրդը երես էր դարձնում իր շահերի մշտական ոտնահարողից, իր ոխերիմ թշնամուց՝ դաշնակցությունից և բուրժուական-կապիտալիստական կարգերից։ Ապստամբությունը միաժամանակ կոմունիստական կուսակցության ու սովետական իշխանության հանդեպ Հայաստանի աշխատավորության ունեցած սիրո ու համակրանքի ամենավառ արտահայտությունն էր։ Ապստամբությունն Հայաստանի աշխատավորության համար քաղաքական պայքարի մեծ դաս հանդիսացավ։ Նա քաղաքացիական կռիվ վարելու, հաղթական հեղափոխություն կատարելու փորձ ձեռք բերեց։

Մայիսյան ապստամբության հերոսների թափած արյունն իզուր չանցավ։ Շուտով հեղափոխական նոր վերելք սկսվեց։ 1920 թ. նոյեմբերի 29-ին Հայաստանի ապստամբ բանվորները, գյուղացիները, զինվորները, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ռուս մեծ ժողովրդի և 11-րդ կարմիր բանակի օգնությամբ, տապալեցին դաշնակների ու նրանց անգլո-ամերիկյան տերերի արյունոտ լուծը և հաստատեցին սովետական իշխանություն։

Հայ ժողովուրդը թևակոխեց իր կյանքի սովետական ուղին, ձեռք բերեց պետականություն և ստացավ ազգային ու սոցիալական վերածնության սոցիալիստական հնարավորություններ։ Սովետական ժողովուրդների մեծ ու հզոր ընտանիքում հայ ժողովուրդը պատմական կարճ ժամանակամիջոցում տնտեսական, քաղաքական ու կուլտուրական աննախընթաց ծաղկում ապրեց։

# ԵՐՋԱՆԻԿ ԿՅԱՆՔԻ ՀԱՄԱՐ

Խոր կսկիծով եմ հիշում մայիսյան ապստամբության պարտությունը Նոր Բայազետում: Ուղիղ կես դար է անցել այդ օրից, բայց հիմա էլ, ասես, աչքերիս առջև հառնում են նահատակված հեղափոխականները՝ տանջահար դեմքերով, խոշտանգված մարմիններով, բայց գալիքի նկատմամբ հավատով լեցուն հրաբորբ աչքերով: Ու միաժամանակ հպարտությամբ է համակվում սիրտս, որ գործել եմ նրանց հետ, նրանց ղեկավարությամբ արել հեղափոխական առաջին քայլերս: Այդ նրանք իմ մեջ վառեցին հեղափոխության անշեջ կրակը, ինձ մեկընդմիշտ կապեցին կոմունիստական կուսակցության հետ:

...Հեղափոխականների ընտանիք էր մեր ընտանիքը: Եղբայրներս՝ Բատիկ, Բագրատ և Հայկ Բատիկյանները սոցիալ-դեմոկրատական կազմակերպության ակտիվ անդամներ էին: Մեր տունը գաղտնի ժողովատեղի էր դարձել: Հավաքվում էին, սեղանին մոմեր դնում, սկսում նարդի խաղալ ու խորհրդակցել: Բատիկն ինձ հանձնարարում էր.

— Աչոն ջան, դռանը հսկիր, հենց որ մարդ երևա, կհազաս:

Ես հանությամբ հսկում էի և ներքուստ հպարտանում, որ ավագ եղբայրս ինձ վստահում, գործ է հանձնարարում: Դա 1917 թվականին էր: Ես 15-ամյա աղջիկ էի ու, ինչպես ասում են, աշխարհի գործերից գրեթե բան չէի հասկանում: Բայց ինձ համար հետաքրքիր էր, թե ինչո՞ւ են հավաքվում, ի՞նչ են ուզում անել: Բատիկը ձեռքը դնելով ուսիս, մի օր ինձ ասաց.

— Տեսնո՞ւմ ես, հարուստների աղջիկները բրդյա զգեստ ու կոշիկներ են հագնում, զուգված-զարդարված գնում դպրոց, իսկ մյուսները՝ ոչ: Ուզում ենք այնպիսի կարգեր ստեղծել, որ բոլորը լավ հագնվեն:

Հետո նա էլի շատ բաներ պատմեց...

Այդ ժամանակ Նոր Բայազետում գործում էին դաշնակցականների և սոցիալ-դեմոկրատների ակումբներ, որտեղ հաճախում էին նաև երիտասարդ տղաներն ու աղջիկները: Ես ևս սկսեցի հաճախել: Մենք հանդես էինք գալիս ներկայացումներով ու համերգներով, ժողոված գումարը հանձնում սոցիալ-դեմոկրատական կազմակերպությանը: Այդ ժամանակ էլ ընդունվեցի ակումբին կից երիտասարդական միության մեջ: Միության անդամները կոչվում էին ծածկանուններով. ինձ կոչեցին «Ուտկինա»:

Մեր տանը մի քանի կտոր գիրք կար: Ես տնօրինում էի դրանք, տալիս սոցիալ-դեմոկրատական ու երիտասարդական կազմակերպությունների անդամներին: Եվ շուտով ինձ կնքեցին «գրադարանապետ»:

Մի օր (1919 թ. ապրիլ) «Սպարտակ» միությունից նամակ ստացանք, ծանոթացանք, և մեր կազմակերպությունը վերածվեց «Սպարտակ» միության: Նախագահ ընտրեցինք Պետիկ Պետրոսյանին:

Կարճ ժամանակից հետո, երբ բոլշևիկները պատրաստվում էին անջատվել մենշևիկներից, Բատիկը «Սպարտակի» անդամներին հավաքեց, հայտնեց այդ մասին և ասաց, որ «Սպարտակը» պետք է կից լինի բոլշևիկներին: Հետո երիտասարդական կազմակերպության բոլոր անդամներս գնացինք սոցիալ-դեմոկրատների ժողովին: Բատիկ Բատիկյանը զեկուցեց և ասաց, որ անջատումը հրամայական պահանջ է: Ժողովին մասնակցում էին նաև մենշևիկներ Մաքրուհի և Սերգո Բոշնաղյանները, Լիզա Գասպարյանը, Վաղարշակ Բուդումյանը, Խաչատուր Ստոնյանը և ուրիշներ: Մաքրուհի Բոշնաղյանն առարկեց.



— Առանց այն էլ մեր կազմակերպությունը փոքրաթիվ է, ի՞նչ կարիք կա անջատվելու:

Բատիկն իսկույն վրա բերեց.

— Հարցը թվի մեջ չէ, այլ՝ սկզբունքի:

«Սպարտակի» բոլոր անդամներս քվեարկեցինք հօգուտ այն բանի, որ մեր կազմակերպությունը կից լինի բոլշևիկներին:

Այդ նույն տարվա աշնանը Նոր Բայազետ եկավ Ղուկաս Ղուկասյանը: Նա միության անդամների համար զեկուցեց մեր խնդիրների մասին: Նրա ելույթը բոլորիս վրա մեծ տպավորություն գործեց: Հետո Բագրատը, Գերասիմ Թելումյանը և Պետիկ Պետրոսյանը նրան սայլով գաղտնի տարան Ելենովկա (այժմ՝ Սևան):

Անհանգիստ օրեր, մեծ դեպքեր էին սպասվում: Նոր Բայազետի բոլշևիկ հեղափոխականները նախապատրաստվում էին դրանց: Այդ ժամանակ Հովհաննես Սարուխանյանի և Բատիկ Բատիկյանի ազդեցության տակ էր գավառային զեմստվոյի լուսբաժնի վարիչ Մարուքե Դուրգարյանը: Վերջինս նրանց խորհրդով բացեց ուսուցչական կարճատև դասընթացներ, որտեղ ընդգրկվեցին հիմնականում բոլշևիկյան կազմակերպության և «Սպարտակի» անդամները: Ապա մեզ ուսուցչական աշխատանքի ուղարկեցին Ղարանլուխի (այժմ՝ Մարտունի) և Բասարգեչարի (այժմ՝ Վարդենիս) շրջանների գյուղերը: Ինձ և Աղաբեկ Սիրունյանին բաժին ընկավ Ալիղորխ գյուղը (ներկայիս Աստղաձոր): Մեր խնդիրը, իհարկե, ուրիշ էր. ստեղծել բոլշևիկյան բջիջներ, բացատրական աշխատանք տանել գյուղացիների շրջանում: Մենք զրույցներ էինք անցկացնում, բացատրում, որ նոր կարգերն անխուսափելի են, բերում էինք Ռուսաստանի օրինակը:

Մայիսյան դեպքերի նախօրեին գյուղական ուսուցիչներս նամակ ստացանք Հովհաննես Սարուխանյանի, Բատիկ Բատիկյանի ստորագրությամբ: Նրանք մեզ հանձնարարում էին հավաքվել, խորհրդակցել և ուժեղացնել կապը գյուղացիների հետ, աշխատանք տանել նրանց շրջանում: Մենք հավաքվեցինք Գյոզալդարա (ներկայիս Վարդենիկ) գյուղում, խմբովի կարդացինք առաջիկա զինված ապստամբության վերաբերյալ այդ նամակը և ապա, վերադառնալով տեղերը, սկսեցինք ավելի ակտիվացնել մեր գործունեությունը:

Որոշ ժամանակ անց, նորից հավաքվեցինք Գյոզալդարայում: Այս անգամ արդեն Հովհաննես Սարուխանյանին և Բատիկ Բատիկյանին ընտրեցինք Հայաստանի բոլշևիկյան կուսակցության I կոնֆերանսի պատգամավորներ:

Հետո վրա հասան դպրոցական արձակուրդի օրերը, և մենք կամա, թե ակամա վերադարձանք մեր բնակավայրերը:

Երբ ապստամբությունն սկսվեց, ես արդեն Նոր Բայազետում էի: Մայիսի 13-ին Հ. Սարուխանյանը, գեներալ Սիլիկովի զորամասի (բազավորված էր Ղարանլուխ գյուղում) զինվորների և զինված գյուղացիների գլուխ անցած, մտավ Նոր Բայազետ: Տարբեր տեղերից լսվեցին կրակահերթեր, որոնք ազդարարում էին ապստամբության սկիզբը գավառային կենտրոնում: Ընդհարումները տևեցին երեք օր, և Նոր Բայազետն անցավ Հովհ. Սարուխանյանի մարտիկների ձեռքը: Դաշնակցական զեմստվոյականները փախան:

Սակայն հաղթանակի բերկրանքը կարճ տևեց: Երևանից օժանդակ ուժեր եկան, և ապստամբությունը ճնշվեց: Դաշնակցականներն սկսեցին սպանությունները և ջարունակեցին ապստամբությունից առաջ ծայր առած ձերբակալությունները: Ամենաչնչին հանցանշաններ ունեցողներն անգամ բանտ էին նետվում: Նրանք գազանաբար սպանեցին հեղափոխության աննկուն մարտիկ Հովհ. Սարուխանյանին և ուրիշների, հիվանդ վիճակում բանտ նետեցին Բատիկ Բատիկյանին: Այնուհետև բանտարկեցին նաև ինձ և «Սպարտակի» մի շարք ակտիվ անդամների՝ Գերասիմ Թելումյանին, Շավարշ Պետրոսյանին, Գրիգոր Շառոյանին, Սահակ Մարինոսյանին, Գոգո Մարինոսյանին (Սահակի տղան): Ինձ հարցաքննում էր գավառային կոմիսար Միշա Մովսիսյանը: Նա ջանում էր ինձնից դուրս կորզել մեր կազմակերպության հետ կապված բոլոր գաղտնիքները, իմանալ մեր կապերի, ժողովների անցկացման տեղի և այլնի մասին: Ես հրաժարվում էի, իսկ մի անգամ էլ անորոշ պատասխանեցի.

— Ովքեր կային միության մեջ, բոլորն էլ ձերբակալված են:

— Որտեղի՞ց գիտես,— զարմանքից չռած աչքերը գամելով դեմքիս՝ հարցրեց քննիչը:

— Տղաներն առավոտյան լվացվում են, իսկ ես տեսնում եմ:

Ծանր, անչափ ծանր էր բանտարկյալներիս կյանքը: Կիսաքաղց էին պահում. մեր օրական բաժինը մի պատառ հաց էր և մեկ կարտոֆիլ: Իմ խցիկը նեղ, խոնավ ու մութ էր: Երբ մկները շարժվում էին ու կրծում կոշիկներս, ասես, թևաթափ էի լինում, երբեմն մտածում. «Ամեն ինչ ասել ու ազատվել այս տանջանքից»: Բայց երբ դուրս էի գալիս խցիկից, ճաշակում լույսն ու արևը, միանգամից գոտեպնդվում էի, ուժ ու եռանդ ստանում և հարցաքննության ժամանակ ինձ համարձակ պահում:

Բանտից ազատվեցի 1920 թվականի դեկտեմբերի սկզբներին: Դեռ նոր էինք ազատ շունչ քաշել, երբ տեղի ունեցավ դաշնակցականների փետրվարյան ավանտյուրան: Նոր Բայազետը ձեռքից ձեռք էր անցնում: Ինձ համար նորից անհանգիստ օրեր սկսվեցին: Ես թաքնվում էի, խուսափում դաշնակցական խմբապետ Նժդեհի զինվորների հետապնդումներից: Վերջապես սովետական կարգերը հիմնավորապես ամրապնդվեցին: Ես աշխատանքի անցա Նոր Բայազետի գավկոմի կինբաժնում և եռանդով գործի կպա՝ նոր կյանքի համար, հանուն որի իրենց կյանքը նվիրաբերեցին մայիսյան ապստամբության աննկուն ղեկավարներ Հովհաննես Սարուխանյանն ու Բատիկ Բատիկյանը, մյուս բոլշևիկ հեղափոխականները:

Գաղափարական հերոս նահատակների գեղեցիկ կյանքի և անձնուրաց պայքարի օրինակը ոգեշնչման անսպառ աղբյուր է ներկա և գալիք սերունդների համար:

ԱՐԾՎԻԿ ԲԱՏԻԿՅԱՆ

*1920 թ. ՍՄԿԿ անդամ, անհատական կենսաթոշակառու*

## ՀԱՎԵՏ ԱՆՄՈՌԱՑ

Իմ հիշողության մեջ տակավին թարմ են մայիսյան ապստամբության ու դրան նախորդած դեպքերն Ալեքսանդրապոլում:

Ես այն ժամանակ գրաշար էի Մալխասյանի, ապա՝ Ղասաբյանի տպարաններում: Բոլշևիկյան ընդհատակյա կոմիտեի հանձնարարությամբ գաղտնի տպագրում էինք թռուցիկներ՝ ուղղված դաշնակցականների տիրապետության և ազգամիջյան կռիվների դեմ: Իսկ հաճախ էլ շարվածքը մաս-մաս դուրս էինք հանում տպարանից և թռուցիկները տպագրում բոլշևիկների գաղտնի շենքում:

Հետաքրքրական էր մեր աշխատանքը Ղասաբյանի տպարանում: Վերջինս մեռել էր. տպարանի տնօրենը կինն էր՝ գեղեցկադեմ Հայաստանը, որն անձնական մտերիմ կապերի մեջ էր դաշնակցական պարագլուխների հետ: Մեր ղեկավարն աննկուն բոլշևիկ, գրաշար Գևորգ Հանեսօղլյանն էր: Նրա խորհրդով օգտագործում էինք այդ հանգամանքը և ահաբեկում տպարանի տնօրենին: Նրան սպառնում էինք.

— Հարս-խանում, թող տպարանում աշխատենք, ինչպես մենք ենք ցանկանում, թե չէ մերոնք կգան, գործդ վատ կլինի, տպարանդ կխլենք:

— Ինչ կուզեք էրեք, մենակ թե իմ տպարանին ձեռք չտաք,— պատասխանում էր նա և չտեսնելու տալիս մեր «կողմնակի» աշխատանքը:

Մենք ահաբեկում էինք նաև դաշնակցականներին հարող գրաշար Աղասի Գրիգորյանին և տպագրիչ Միսակ Գևորգյանին: Եվ նրանք ևս լռելյայն հանդուրժում էին մեր գործունեությունը:

Այսպիսով, նրանց օգտագործելով, անարգել տպագրում էինք բոլշևիկյան թռուցիկներ, փաստաթղթեր, նույնիսկ՝ կոնստոմսեր:

Մայիսմեկյան տոնի նախօրյակին մենք ակտիվացրինք մեր գործունեությունը. բոլշևիկյան քաղաքային կոմիտեի հանձնարարությամբ տպագրեցինք մեծ քանակությամբ լոզունգներ: Նույնիսկ խաղ խաղացինք դաշնակցականների գլխին: Նրանց քաղաքային կոմիտեի օրգան «Շիրակի աշխատավոր» թերթը ևս մենք էինք տպագրում: Թերթի ճակատին սովորաբար գրվում էր. «Սոցիալիստական ինտերնացիոնալի հայկական հատված»: Գևորգ Հանեսօղլյանի նախաձեռնությամբ մի անգամ մենք այն դարձրինք՝ «Կապիտալիստական ինտերնացիոնալի հայկական հատված»: Թերթն այդպես էլ լույս տեսավ ու տարածվեց: Բայց այդ օրերին դաշնակների վիճակն այնպես անկայուն էր, որ նրանք չհամարձակվեցին մեզ ձեռք տալ:

Մայիսի մեկից հետո, ընդհուպ մինչև 10-ը, քաղաքում դրության տերը բոլշևիկներն էին: Այդ օրերին նրանց թիկունք էր մեր բանվորա-գյուղացիական երիտասարդական կազմակերպությունը, որի նախագահն էի ես: Մինչև մայիսյան օրերը, մենք, բոլշևիկյան կազմակերպության հանձնարարությամբ, կարողացել էինք «Վասպուրական», «Ալագյազի զավակունք» և դաշնակցական երիտասարդական մյուս կազմակերպությունների մեծ թվով երիտասարդների գրավել մեր կողմը: Մայիսյան օրերին ես և մեր կազմակերպության ակտիվիստները բացատրական աշխատանք էինք տանում երիտասարդության շրջանում: Բանվորական շրջաններից զատ, լինում էինք նաև Արդության օրիորդաց միջնակարգ, առևտրական, Սահականույշյան օրիորդաց դպրոցներում, կազմակերպում հավաքույթներ, երիտասարդությանը նպատակամղում դեպի զինված ապստամբություն: Այդ ժամանակ արդեն ստեղծվել և գործում էր Ալեքսանդրապոլի ռազմա-հեղափոխական խորհուրդը:

Դաշնակցականների վիճակն անհուսալի էր: Նրանք գլխակորույս ելք էին որոնում: Հիշում եմ մի այսպիսի դեպք. մայիսի 6-ին 50—60 խանութպանների մի խառնամբոխ, մոլի դաշնակցական, բժիշկ Բ. Բաղդասարյանի գլխավորությամբ, դաշնակցական երգեր երգելով, գնում էր երկաթուղային կայարան, որպեսզի ազդեր Սարգիս Մուսայելյանի վրա՝ զրահագնացքը Երևան տանելու համար:

Երբ այդ մասին իմացա, շտապեցի կայարան, գտա Ս. Մուսայելյանին և նրան իրազեկ պահեցի դաշնակցականների մտադրությանը: Մուսայելյանն անմիջապես մարտական պատրաստության բերեց անձնակազմը և ոտքի հանեց երկաթուղային բանվորների կարմիր գվարդիան՝ Եգոր Սևյանի գլխավորությամբ: Դաշնակցական խառնամբոխին մնում էր գլխիկոր հեռանալ: Ինչպես ժողովրդական իմաստությունն է ասում. «Գնում էր խուզելու, բայց ետ դարձավ խուզված»:

Մայիսի 10-ին բռնկվեց բոլշևիկների զինված ապստամբությունը: Երիտասարդական կազմակերպության անդամներս մինչև այդ օրը հսկում էինք զենքի ու պարենի պահեստները, իսկ հետո զենք ստացանք և մասնակցեցինք զինված ընդհարումներին: Սակայն, մի շարք օբյեկտիվ և սուբյեկտիվ պատճառներով, ապստամբությունը ճնշվեց: Երևանից եկած խմբապետ Սեպուհի հրոսակախմբերն սկսեցին հաշվեհարդար տեսնել նրա մասնակիցների հետ, կատարել մասսայական ձերբակալություններ:

Բնավ չեմ մոռանում մայիսի 14-ի դեպքը. դաշնակները ձերբակալել էին Բագրատ Ղարիբջանյանին ու Ռուբեն Սաֆարյանին և տանում էին բանտ: Վերջիններիս դեմքերն արնաշաղախ էին, երևում էր՝ դաշնակները խոշտանգել էին նրանց: Բայց նրանք քայլում էին հպարտ, զգացվում էր, որ չեն կորցրել հոգու արիությունը: Նրանց աչքերում ինչ-որ վեհություն կար ու հավատ: Ես շտապեցի տպարան, որպեսզի զգուշացնեմ տպարանային գործերի կոմիսար և կուսակցության քաղկոմի անդամ Գևորգ Հանեսօղլյանին՝ թաքնվելու համար: Կես ճանապարհին, սակայն, մաուզերիստներն ինձ կանգնեցրին: Նրանց ղեկավարը, որն ալեքսանդրապոլցի էր և գիտեր իմ ով լինելը, հրամայեց ձերբակալել ինձ:

Հետո սկսվեցին տաղտկալի հարցաքննությունները: Ինձ հարցաքննում էր դաշնակցական արտակարգ դատարանի դատախազի տեղակալ Արամ Ալչաջյանը: Ես, իհարկե, հրաժարվում էի տալ ինձ ծանոթ բոլշևիկների անունները:

— Ի՞նչ համոզմունքի տեր ես,— հարցրեց ինձ դատախազի տեղակալը:

— Համակրել եմ բոլշևիկներին և պիտի համակրեմ,— պատասխանեցի ես:

Նա սպառնաց՝ դու խաղում ես քո բախտի հետ, վիճակդ վատ կլինի:

Բանտում մեզ պահում էին ահ ու սարսափի մեջ, սպառնում էին: Ապստամբության պարտությունից երկու օր

հետո բանտ եկավ խմբապետ Սեպուհը: Նա զայրացել էր, որ մենք բողոքում ենք բանտային ծանր պայմաններից:

— Դուք,— թունոտ հոխորտում էր նա,— ծախված մարդիկ եք, ազգի դավաճաններ: Կարծում եք Ադրբեջանում սովետական կարգե՞ր են: Մուսավաթականներն են իշխանության գլուխ: Նրանք խաբում են ռուսներին: Եթե մեկ էլ անկարգություններ անեք, բոլորիդ էլ ճանճի նման կկոտորեմ:

Մենք սուլոցով դիմավորեցինք Սեպուհի սպառնալիքներն ու հորդորները: Դրանք ոչ մի ազդեցություն չգործեցին մեզ վրա: Դեռ ավելին, երբ արտակարգ դատարանը որոշեց գնդակահարել ապստամբության ղեկավարներին, մենք հացադուլ հայտարարեցինք: Շարունակ երգում էինք «Մահվան քայլերգը» և «Ինտերնացիոնալը»: Բանտապետն անմիջապես այդ մասին հայտնեց արտակարգ դատարանի դատախազ, բժիշկ Բ. Բաղդասարյանին, որը հաջորդ օրը հատուկ շքախմբով եկավ բանտ ու դարձյալ սպառնաց.

— Վաղը դուք կտեսնեք. գնդացիրները շարելու եմ: Փոքր անկարգության դեպքում բոլորիդ կկոտորեմ:

Երեք ամիս ճաշակեցի բանտային դառնությունները, ենթարկվեցի դաշնակցականների ծաղր ու ծանակին: Բանտից ազատվեցի դիպվածով: Արտակարգ դատարանի նախագահ Մակեդոն Մելիք-Միրզախանյանը կարճ ժամանակում մտերմիկ կապեր էր հաստատել տիկին Հայաստան Ղասաբյանի հետ: Երբ մի օր նա դատարանի գործերը տանում է տպարան, վերջինս դժգոհում է, որ բանվոր չունի, և դրժվարանում է կատարել պատվերները: Հետո խնդրում է ազատել ինձ: Շուտով ինձ ազատեցին, բայց այն պայմանով, որ մինչև դատն սկսվելը յուրաքանչյուր շաբաթ օր ներկայանամ գավառային կոմիսարիատ: Սակայն, ինչպես ասում են, «ուրբաթը շաբաթից շուտ եկավ». դաշնակների տիրապետությունը տապալվեց: Ալեքսանդրապոլում ևս սովետական կարգեր հաստատվեցին: Եվ ես, մեր սերնդի մարդկանց հետ միասին, լծվեցի ստեղծագործ աշխատանքի՝ սրտումս վառ պահելով մայիսյան ապստամբության հերոսների հավետ անմոռաց անունները:

Գ. Ա. ՋՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ

*Մայիսյան ապստամբության մասնակից, 1917 թ. ՍՄԿԿ անդամ,*



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԵՎ ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՓՈՒԼԸ

Ս. Շ. ՋՈՒՐԱԲՅԱՆ

Ժամանակակից աշխարհի ամենաբնորոշ գիծը համաշխարհային երկու սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի միջև տեղի ունեցող պայքարն ու մրցությունն է: Կուսակցության X կոնֆերանսում (1922 թ.) Վ. Ի. Լենինը նշում էր, որ տնտեսական «ասպարեզն է փոխադրվել պայքարը համաշխարհային մասշտաբով», կամ թե, «Այժմ միջազգային հեղափոխության վրա մենք մեր գլխավոր ներգործությունն անում ենք մեր տնտեսական քաղաքականությամբ» (Երկեր, հ. 32, էջ 562):

Սոցիալիզմի և կապիտալիզմի համաշխարհային սիստեմների տնտեսական մրցության ասպարեզում սոցիալիզմի ձեռք բերած նվաճումները հնարավոր է ճշտորեն պատկերացնել, եթե, մի կողմից՝ ելակետ ընդունվի պատմական այն իրադրությունը, որից սկսվել է այդ մրցությունը, մյուս կողմից՝ հաշվի առնվեն այն փոփոխություններն ու տեղաշարժերը, որոնք ներկայումս տեղի են ունենում զարգացած կապիտալիստական երկրների էկոնոմիկայում:

Սովետական մարդկանցից, հատկապես երիտասարդներից ոմանք, երբեմն հարց են տալիս, թե ինչո՞ւ մինչև այժմ տնտեսապես չենք հասել և անցել գլխավոր կապիտալիստական երկրներից, հատկապես ԱՄՆ-ից. չէ՞ որ, ասում են նրանք, սովետական իշխանությունը գոյություն ունի արդեն կես դարից ավելի: Այդ հարցի պատասխանն է, որ պետք է տրվի:

Հայտնի է, որ մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը սոցիալիզմի և կապիտալիզմի մրցությունը տեղի էր ունենում ՍՍՀՄ և կապիտալիստական զարգացած երկրների, իսկ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո՝ սոցիալիզմի և կապիտալիզմի երկու համաշխարհային սիստեմների միջև: 1969 թվականին սոցիալիզմի համաշխարհային սիստեմն ընդգրկում էր ամբողջ աշխարհի տերիտորիայի մոտ 26, բնակչության՝ 34,4, իսկ արդյունաբերական արտադրանքի՝ 39 տոկոսը, նախապատերազմյան 17, 9 և 10 (համապատասխանորեն) տոկոսի դիմաց: Այս փաստերը ցույց են տալիս, թե պատմական կարճ ժամանակամիջոցում ինչպիսի հզորության է հասել սոցիալիզմը:

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմում Սովետական Միությունն առաջին սոցիալիստական երկիրն էր, որն սկսեց մրցումը կապիտալիզմի հետ։ Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը հաղթանակեց ցարական Ռուսաստանում, որն ագրարային-արդյունաբերական երկիր էր և տեխնիկա-տնտեսական մակարդակով մեծ չափով ետ էր մնում կապիտալիստական զարգացած երկրներից։ Դեռ 1913 թվականին Ինչպե՞ս ավելացնել ամեն մի շնչի սպառման չափերը Ռուսաստանում հոդվածում Վ. Ի. Լենինը նշում էր, որ 1911 թվականին չուգունի սպառումը, բնակչության մեկ շնչի հաշվով, կազմում էր՝ ԱՄՆ-ում՝ 233 կգ, Գերմանիայում՝ 136, Բելգիայում՝ 173, Անգլիայում՝ 105, իսկ Ռուսաստանում միայն 25 կգ։ «...Ռուսաստանը մնում է անհավատալիորեն, չտեսնված կերպով հետամնաց երկիր, աղքատ ու կիսավայրենի, որը սարքավորված է ժամանակակից արտադրության միջոցներով չորս անգամ ավելի վատ, քան Անգլիան, հինգ անգամ ավելի վատ, քան Գերմանիան, տասն անգամ ավելի վատ, քան Ամերիկան» (Երկեր, հ. 19, էջ 353—354)։ Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության նախօրեին, Սպառնացող աղետը և ինչպես պայքարել նրա դեմ աշխատությունում Վլադիմիր Իլյիչը գրում էր. «...կա՛մ կործանվել, կա՛մ հասնել առաջավոր երկրներին և նրանցից առաջ անցնել նաև տնտեսապես»։ «Կործանվել կամ ամբողջ թափով առաջ սլանալ։ Պատմությունն այսպես է դրել հարցը» (Երկեր, հ. 25, էջ 466, 467)։

Առաջին համաշխարհային պատերազմը, Սովետական Ռուսաստանի դեմ իմպերիալիստական պետությունների ինտերվենցիան և ներքին հակահեղափոխական ուժերի սանձազերծած քաղաքացիական պատերազմը քայքայել էին երկիրը։ 1920 թվականին Սովետական Ռուսաստանի արդյունաբերության արտադրանքի ծավալը կազմում էր 1913 թվականի միայն 14, երկաթուղիների բեռնաշրջանառությունը՝ 20, իսկ գյուղատնտեսական արտադրանքինը՝ 67 տոկոսը։ Ահա թե ինչպիսի մակարդակից սկսեց ՍՍՀՄ իր տնտեսական մրցումը կապիտալիզմի հետ։ Սրան պետք է ավելացնել նաև երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին ֆաշիստական Գերմանիայի հասցրած հսկայական վնասները։ Ֆաշիստական զավթիչներն ամբողջովին կամ մասնակիորեն ոչնչացրին մեր երկրի հարյուրավոր քաղաքներ, տասնյակ հազարավոր գյուղեր ու ավաններ, քայքայեցին 31850 արդյունաբերական ձեռնարկություն, 65 հազար կմ երկաթգիծ, 98 հազար կոլտնտեսություն, 1876 սովխոզ, 2890 մեքենատրակտորային կայան, կուլտուրայի և արվեստի բազմաթիվ օջախներ։ Մեր երկրին հասցված միայն անմիջական վնասը կազմեց (նախապատերազմյան հաշվումներով) 679 մլրդ ռուբլի։ Ժողովուրդը կորցրեց նաև 20 միլիոն մարդ։ Այս խոշորագույն և աղետալի փաստերն, իրենց հերթին, դժվարացրին և զգալի չափով կասեցրին սոցիալիզմի նվաճումները կապիտալիզմի հետ տարվող տնտեսական մրցման ասպարեզում։ Սակայն անհրաժեշտ է նշել, որ Ֆաշիստական Գերմանիայի կատարած հսկայական ավերումները վերացվեցին միայն մեկ հնգամյակի, և ոչ թե տասնյակ տարիների ընթացքում, ինչպես կարծում էին ո՛չ միայն սոցիալիզմի թշնամիները, այլև մեր բարեկամներից ոմանք։

Երբ խոսում ենք սոցիալիզմի և կապիտալիզմի տնտեսական մրցության մասին, ապա, առաջին հերթին, նկատի ունենք ՍՍՀՄ, որպես սոցիալիզմի



ամենահզոր և ԱՄՆ-ի՝ կապիտալիստական աշխարհի ամենազարգացած երկրների միջև տեղի ունեցող տնտեսական մրցությունը։ Եթե ՍՍՀՄ այդ մրցությունը սկսել ու իրագործել է վերը նշած անբարենպաստ պայմաններում, ապա ԱՄՆ այն ժամանակ էլ տեխնիկա-տնտեսապես ամենազարգացած երկիրն էր աշխարհում։ Բացի այդ, ԱՄՆ XIX դարից հետո իր երկրում պատերազմ չի տեսել, որևէ չափով չի ավերվել և քայքայվել, այլ, ընդհակառակը, թե՛ առաջին և թե՛ երկրորդ համաշխարհային պատերազմների տարիներին, օգտվելով իր համար ստեղծված բարենպաստ պայմաններից, տնտեսապես ավելի է ուռճացել ու մեծացրել եկամուտները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկները տեսականորեն և գիտականորեն հիմնավորել են սոցիալիստական պլանային տնտեսության մեծագույն առավելությունները կապիտալիստականի նկատմամբ, իսկ ՍՍՀՄ և մյուս սոցիալիստական երկրների տնտեսական զարգացման փորձը հաստատել է այդ տեսության իրավացիությունը։ Արտադրամիջոցների հասարակական սեփականությունը, ամբողջ ժողովրդական տնտեսության պլանաչափ ու համամասնական զարգացումը, գերարտադրության տնտեսական ճգնաժամերի, տնտեսության ցիկլային զարգացման և գործազրկության վերացումը, աշխատանքի, արտադրամիջոցների նկատմամբ աշխատավորների նոր, գիտակցական վերաբերմունքն այնպիսի կարևորագույն գործոններ են, որոնք հանգեցնում են սոցիալիստական տնտեսության մեծագույն առավելություններին կապիտալիստականի համեմատությամբ։ Այդ իր արտահայտությունն է գտնում սոցիալիստական տնտեսության աճի ավելի բարձր տեմպերի մեջ։ Տեմպերի հարցը սոցիալիզմի և կապիտալիզմի տնտեսական մրցման վճռական ցուցանիշն է։ Այդ մասին հստակ պատկերացում են տալիս տվյալները, որոնք վերաբերում էին ԱՄՆ-ի և ՍՍՀՄ տնտեսական զարգացման 1951—1968 թթ. միջին տարեկան տեմպերին (տոկոսներով)[1]։

| | ԱՄՆ | ՍՍՀՄ |
|---|---|---|
| Ազգային եկամուտ | 3,75 | 8,8 |
| Արդյունաբերական արտադրանք | 4,5 | 10,4 |
| Գյուղատնտեսական արտադրանք | 1,85 | 4,2 |
| Տրանսպորտի բոլոր տեսակների բեռնաշրջանառություն | 2,3 | 9,1 |
| Կապիտալ ներդրումներ | 3,0 | 10,1 |

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, ՍՍՀՄ այս տնտեսական հիմնական ցուցանիշների աճի տեմպերով զգալի չափով գերազանցում է ԱՄՆ-ին։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը ևս, ամբողջովին վերցրած, իր տնտեսության աճի տեմպերով գերազանցում է կապիտալիզմին։ 1950—1968 թթ. Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների արդյունաբերության արտադրանքն աճել է 5,9, իսկ կապիտալիստական երկրներինը՝ 2,6 անգամ (Мир социализма в цифрах и фактах 1968, справочник, 1969, стр. 13)։

Եթե սոցիալիստական տնտեսության համար բնորոշ են նրա աճի ո՛չ միայն բարձր և կայուն տեմպերը, այլև անընդհատ, առանց ցիկլերի զարգացումը, ապա կապիտալիստականի համար բնորոշ է ցիկլային, խիստ տատանումներով և անհամաչափ զարգացումը ո՛չ միայն ըստ արտադրության ճյուղերի, այլև՝ առանձին երկրների։ Այդ տեսակետից բնորոշ են ԳՖՀ և Ճապոնիայի արդյունաբերության արտադրանքի աճի տեմպերի տատա-

[1] Народное хозяйство СССР в 1968 году, стр. 144.

նումները (տոկոսներով, նախորդ տարվա համեմատությամբ) (Экономическое положение капиталистических и развивающихся стран, обзор за 1968 и начала 1969 года, стр. 9)։

| | 1964 թ. | 1965 թ. | 1966 թ. | 1967 թ. | 1968 թ. |
|---|---|---|---|---|---|
| ԳՖՀ | 8,0 | 5,6 | 1,8 | —1,7 | 12,0 |
| Ճապոնիա | 16,0 | 3,4 | 13,3 | 19,1 | 17,3 |

Այս տվյալները ցույց են տալիս, որ այդ երկու խոշոր կապիտալիստական երկրների արդյունաբերության աճի տեմպերն առանձին տարիներին բավական բարձր են, իսկ Ճապոնիայում 1967 թ. նույնիսկ կազմել է 19,1 տոկոս։ Սակայն, դրա հետ միասին, աչքի են ընկնում աճի խիստ տատանումները։

Ճապոնիայի, ինչպես նաև ԳՖՀ արդյունաբերության որոշ ժամանակաշրջանի աճի բարձր տեմպերը պայմանավորված են երկրորդ համաշխարհային պատերազմից հետո այդ երկրների առանձնահատուկ վիճակով՝ կապված ժամանակակից գիտա-տեխնիկական հեղափոխության հետ, և կրում են ժամանակավոր, կոնյուկտուրային բնույթ։ Հենց այդ են վկայում ԳՖՀ արդյունաբերության աճի նվազման տենդենցները վերջին ժամանակաշրջանում։ 1969 թվականից Ճապոնիան արդյունաբերական արտադրանքի ծավալով կապիտալիստական երկրների մեջ գրավեց երկրորդ տեղը (ԱՄՆ-ից հետո), իր վրա հրավիրելով քաղաքական գործիչների, գիտնականների, տնտեսագետների ուշադրությունը։ Պատահական չէ, որ 1969 թվականին Մոսկվայում, Համաշխարհային էկոնոմիկայի և միջազգային հարաբերությունների ինստիտուտում, հատուկ քննության և բանավեճի առարկա դարձավ Ճապոնիայի տնտեսական զարգացման հարցը (տե՛ս «Мировая экономика и международние отношения» № 8, 1969)։

Որո՞նք են Ճապոնիայի արդյունաբերության այդպիսի բարձր տեմպերով աճի հիմնական գործոնները։ 1) Ճապոնիան երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, որպես պարտված պետություն, կապիտալիստական մյուս զարգացած երկրների մրցակցության և իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզման պայմաններում մոբիլիզացրեց իր ներքին հնարավորությունները. 2) Ճապոնիայի բանվորների համեմատաբար ցածր աշխատավարձը (մանավանդ մինչև վերջին տարիները), շահագործման բարձր աստիճանը, հնարավորություն տվեցին կապիտալիստներին և պետությանը մեծ չափով կուտակումներ կատարել և դրա հաշվին զարգացնել արդյունաբերությունն ու նրա ողջ տեխնիկան։ 1958—1965 թթ. կուտակման բաժինն ազգային եկամուտում Ճապոնիայում կազմում էր 32, ԳՖՀ-ում՝ 25, Իտալիայում՝ 21, Ֆրանսիայում՝ 20, Անգլիայում՝ 16, իսկ ԱՄՆ-ում՝ 17 տոկոս։ Այսինքն՝ կուտակման նորման Ճապոնիայում մոտ երկու անգամ բարձր էր, քան Անգլիայում և ԱՄՆ-ում. 3) ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխությունը և Ճապոնիայի էկոնոմիկայի կառուցվածքային փոփոխությունները, իրենց հերթին, խոշոր դեր կատարեցին արդյունաբերության զարգացման գործում։ Խոշորագույն կապիտալիստներն արտասահմանյան երկրներից տեխնիկական նոր գյուտերի շատ արտոնագրեր (պատենտներ) են գնում և ներդնում արտադրության մեջ։ Միայն 1968 թվականին դրանց համար վճարված գումարը, նախորդ տարվա համեմատությամբ, աճեց 33 տոկոսով և հասավ 113 մլրդ իենի։ Սակայն, վերջին ժամանակներս ճապոնական գործարար շրջաններում և մամուլում ահազանգեր են հնչում այն մասին, թե այդպիսի քաղաքականությունը, ինչպես նշում է «Ասախի» թերթը, «լուրջ պրոբլեմ է հարուցում» և բացասա-



բար է անդրադառնում «նոր տեխնիկայի զարգացման ասպարեզում սեփական ջանքերի վրա» (տե՛ս «Правда», 14 հունվարի 1970 թ., № 4), երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Ճապոնիայի ռազմական ծախսերն զգալիորեն ցածր են կապիտալիստական մյուս խոշոր պետությունների համեմատությամբ։ Սա, իր հերթին, նպաստել է Ճապոնիայի էկոնոմիկայի զարգացմանը, թեպետ վերջերս միլիտարիստական տենդենցներն ուժեղանում են և այստեղ. 5) պետական մոնոպոլիստական կապիտալիզմի ուժեղացումը, պետության կողմից էկոնոմիկայի զարգացման ծրագրավորումը, պետության դերի մեծացումը կապիտալ ներդրումների և գիտության զարգացման ասպարեզում նույնպես այնպիսի գործոններ են, որոնք ազդում են Ճապոնիայի էկոնոմիկայի զարգացման վրա։

Սակայն այս կամ այն կապիտալիստական երկրի արդյունաբերության աճի այդպիսի բարձր տեմպերը չեն կարող երկարատև, առավել ևս հարատև բնույթ կրել, այլ պայմանավորված են այս կամ այն երկրի յուրահատուկ, ժամանակավոր պայմաններով։ Կապիտալիստական էկոնոմիկայի հակասությունների սրումը վերջ ի վերջո հանգեցնում է աճի տեմպերի նվազեցմանը, ինչպես դա ցույց տվեց ԳՖՀ օրինակը։ Սակայն, պետք է նկատի ունենալ, որ կապիտալիստական տնտեսությունը և, առաջին հերթին արդյունաբերությունը երկրորդ համաշխարհային պատերազմից հետո, ընդհանուր առմամբ վերցրած, ավելի բարձր տեմպերով է աճում, քան մինչև այդ՝ կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի առաջին և երկրորդ էտապներում։ Սա, իհարկե, երկարաձգում է սոցիալիզմի՝ կապիտալիստական երկրներին հասնելու և անցնելու պրոբլեմի լուծումը։ Անցյալում մեզ մոտ սխալ պատկերացումներ կային ո՛չ միայն գլխավոր կապիտալիստական երկրների տնտեսական զարգացման վերաբերյալ, երբ ժխտվում էր երկրորդ համաշխարհային պատերազմից հետո այդ երկրներում ընդլայնված վերարտադրության հնարավորությունը, այլև այդ պրոբլեմի լուծման պատմական ժամանակաշրջանի մասին։ Հետևաբար երկու սիստեմների մրցության հարցը դիտելիս պետք է նկատի ունենալ ո՛չ միայն սոցիալիստական տնտեսության առավելությունները և հնարավորությունները, այլև կապիտալիզմի էկոնոմիկայի այս կամ այն չափով զարգացումը, դրա ապագա հնարավորություններն ու հեռանկարները։

Արդեն ցույց տվեցինք սոցիալիստական արտադրության աճի ավելի բարձր տեմպերը կապիտալիստական տնտեսության համեմատ։ Սակայն հայտնի է, որ տնտեսության զարգացման տեմպերի հիմքում ընկած են աշխատանքի արտադրողականության աճի տեմպերն ու մակարդակը։ Սոցիալիստական տնտեսության համար հատկանշական է նաև աշխատանքի արտադրողականության բարձր տեմպերով աճը։ Դա երևում է հետևյալ տվյալներից. եթե 1950 թվականն ընդունենք որպես ելակետային (100), ապա 1968 թվականին աշխատանքի արտադրողականության աճը ՍՍՀՄ-ում կազմեց 302, ԱՄՆ-ում՝ 176, Անգլիայում՝ 159, Ֆրանսիայում՝ 230, ԳՖՀ-ում՝ 229 տոկոս (Народное хозяйство СССР в 1968 г., стр. 148)։ Ինչպես տեսնում ենք, աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի տեսակետից ևս ՍՍՀՄ գերազանցում է կապիտալիստական երկրներին։ Սակայն հարցը միայն աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը չեն, այլ դրա մակարդակը։ Աշխատանքի արտադրողականության մակարդակի տեսակետից զգալի չափով նվազել է ՍՍՀՄ և ԱՄՆ-ի միջև եղած մեծ տարբերությունը։ Արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության մակարդակը ցարական Ռուս-

սաստանում կազմում էր ԱՄՆ-ի մակարդակի մոտ 11 տոկոսը, իսկ 1968 թվականին ՍՍՀՄ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը՝ ԱՄՆ-ի մոտ 50, գյուղատնտեսության մեջ՝ 20—25, շինարարությունում՝ ավելի քան 60 տոկոսը։ Այս փաստերը ցույց են տալիս, որ անցյալի համեմատությամբ, մեծ չափով փոքրացել է ՍՍՀՄ և ԱՄՆ-ի աշխատանքի արտադրողականության մակարդակների միջև եղած տարբերությունը։ Սակայն տարբերությունը դեռևս զգալի է։ Այդ հետևանք է առաջին հերթին այն բանի, որ ԱՄՆ-ի տնտեսության տեխնիկական զինվածությունն ու աշխատանքի էլեկտրազինվածությունն ավելի բարձր է։

Բացի այդ, այստեղ կարևոր դեր են կատարում նաև արտադրության մասնագիտացման և կազմակերպման, աշխատանքի ինտենսիվության աստիճանները, արդյունաբերության որոշ ճյուղերում (քարածխի, երկաթահանքի և այլն) բնական ավելի բարենպաստ պայմանների առկայությունը ԱՄՆ-ում, աշխատուժի կառուցվածքային տարբերությունները և այլն։ Բայց և այնպես, այն վճռական փաստը, որ աշխատանքի արտադրողականության աճի տեմպերով ՍՍՀՄ գերազանցում է կապիտալիստական երկրներին, այդ թվում նաև ԱՄՆ-ին, վկայում է, որ ոչ հեռավոր ժամանակաշրջանում ՍՍՀՄ կհասնի և կանցնի ԱՄՆ-ից նաև աշխատանքի արտադրողականության մակարդակով։

Երկու սիստեմների տնտեսական մրցության մեջ կարևոր ցուցանիշներ են նաև համախառն արտադրանքի և ազգային եկամտի ծավալը, արտադրանքի հիմնական տեսակների միջին տարեկան բացարձակ աճը, որոնք իրենց արտահայտությունն են գտնում բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի ծավալում։

Սովետական Միությունն արդյունաբերական արտադրանքի ծավալով վաղուց է Եվրոպայում գրավել առաջին, իսկ աշխարհում՝ երկրորդ տեղը (ԱՄՆ-ից հետո)։ Եթե 1913 թվականին ցարական Ռուսաստանի արդյունաբերության արտադրանքի ծավալը կազմում էր ԱՄՆ-ի միայն 12,5 տոկոսը, ապա 1950 թվականին ՍՍՀՄ-ինը՝ մոտ 30 տոկոս էր, իսկ 1968 թվականին՝ 70։ 1968 թվականին ՍՍՀՄ ազգային եկամուտը կազմում էր ԱՄՆ-ի ազգային եկամտի մոտ 64, էլեկտրաէներգիայի արտադրանքը՝ 43 տոկոս (1913 թվականի 8 տոկոսի դիմաց), ցեմենտինը՝ 127, պողպատի ձուլումը՝ 87 (1913 թվականի 15 տոկոսի դիմաց), բամբակե գործվածքեղենը՝ 89 (1913 թվականի 40-ի դիմաց), գյուղատնտեսական արտադրանքը՝ (1964—1968 թթ. միջինը) 78 (1909—1913 թթ. 7-ի դիմաց), բոլոր տեսակի տրանսպորտի բեռնաշրջանառությունը՝ 93 (1913 թվականի 19-ի դիմաց), այդ թվում երկաթուղային տրանսպորտինը՝ 208, կապիտալ ներդրումների ծավալը՝ մոտ 95 տոկոս (1950 թվականի 30-ի դիմաց և այլն) (Народное хозяйство СССР в 1968 г., стр. 143)։

Ինչպես տեսնում ենք, արտադրանքի այդ տեսակներով մեծ չափով նվազել են ՍՍՀՄ և ԱՄՆ-ի միջև եղած տարբերությունները. արտադրանքի մի շարք տեսակներով ՍՍՀՄ ընդհուպ մոտեցել, իսկ առանձին տեսակներով (ցեմենտ, երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառություն և այլն) նույնիսկ գերազանցել է ԱՄՆ-ին։ 1970 թվականին չուգունի արտադրությունը ՍՍՀՄ-ում կհասնի 85,3 մլն տոննայի, որը 2,3 մլն տոննայով ավելի կլինի, քան ԱՄՆ-ը արտադրել էին 1968 թվականին և 10 մլն-ով ավելի, քան Անգլիան, ԳՖՀ-ն, Ֆրանսիան, Իտալիան և Շվեդիան՝ միասին վերցրած։ 1970 թվականին ՍՍՀՄ էլեկտրաէներգիայի արտադրությունը կհասնի մինչև 740 մլրդ/կժ, դա ավելի



կլինի, քան 1968 թվականին արտադրել էին Անգլիան, ԳՖՀ-ն, Ֆրանսիան, Իտալիան, Նիդեռլանդիան, Բելգիան, Ավստրիան, Դանիան միասին վերցրած։

Տնտեսական զարգացման և երկու սիստեմների միջև մրցության տեսակետից կարևորագույն ցուցանիշ է նաև արտադրանքի հիմնական տեսակների տարեկան բացարձակ աճի ծավալի հարաբերակցությունը։ Հետաքրքրական է ՍՍՀՄ և ԱՄՆ-ի համեմատությունը։

Արտադրանքի միջին տարեկան բացարձակ աճը 1951—1968 թթ.
(— նշանակում է արտադրանքի կրճատում)[1]

| | ՍՍՀՄ | ԱՄՆ |
|---|---|---|
| Էլեկտրաէներգիայի համախառն արտադրանքը | 30,4 մլրդ կ/ժ | 60,6 մլդ կ/ժ |
| Նավթ | 15,1 մլն տոննա | 10,2 մլրդ տոննա |
| Գազ | 9,1 մլրդ $մ^3$ | 19,2 մլրդ $մ^3$ |
| Քարածուխ | 16,4 մլն տոննա | —0,5 մլն տոննա |
| Չուգուն | 3,3 » » | 1,1 » » |
| Պողպատ | 4,4 » » | 1,5 » » |
| Երկաթահանք | 7,6 » » | —0,7 » » |
| Հանքային պարարտանյութ | 0,5 » » | 0,6 » » |
| Մետաղահատ հաստոցներ և էլեկտրաքարշեր | 83 հատ | —138 հատ |
| Տրակտորներ (բացի այգեբանջարամշակմաններից) | 17,5 հազար հատ | —15,1 հազար հատ |
| Սղոցանյութեր | 3,3 մլն $մ^3$ | —0,3 մլն $մ^3$ |
| Ցեմենտ | 4,3 մլն տոննա | 1,7 մլն տոննա |
| Բամբակե գործվածքեղեն | 203 մլն $մ^2$ | —95,3 մլն $մ^2$ |
| Բրդե գործվածքեղեն | 16,7 մլն գծամետր | —11,4 մլն գծամետր |
| Կաշվե կոշիկ | 21,9 մլն զույգ | 7,3 մլն զույգ |
| Շաքար-շաքարավազ (հայրենական հումքից) | 361 հազար տոննա | 117 հազար տոննա |
| Յուղ կենդանական | 38 » » | —11,4 » » |

Փաստերը ցույց են տալիս, որ ԱՄՆ էլեկտրաէներգիայի, գազի, որոշ չափով հանքային պարարտանյութերի, ինչպես նաև արտադրանքի մի շարք այլ տեսակների (քիմիական մանրաթել, ավտոմեքենաներ և այլն) տարեկան բացարձակ աճի ծավալով գերազանցում է ՍՍՀՄ-ին, իսկ վերը բերված արտադրանքների շատ տեսակների բացարձակ աճով ՍՍՀՄ գերազանցում է ԱՄՆ-ին. արտադրանքի մի շարք տեսակների արտադրությունը (քարածուխ, երկաթահանք, ջերմաքարշեր, էլեկտրաքարշեր, տրակտորներ, սղոցանյութ, բամբակե և բրդե գործվածքներ, կենդանական յուղ) նշված ժամանակաշրջանում ԱՄՆ-ում նվազել է։ Այս փաստերը, արտադրության բարձր տեմպերով զարգացման հետ միասին, այն բանի ցուցանիշն են, որ ՍՍՀՄ արագորեն մոտենում է ԱՄՆ-ի արտադրանքի ծավալին, դրա հիման վրա բարձրանում է բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի ծավալը։

Բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի ծավալը յուրաքանչյուր երկրի տնտեսական զարգացման մակարդակի կարևորագույն ցուցանիշն է։ Սակայն սխալ կլիներ այս կամ այն երկրի տնտեսական հզորության չափանիշը վերցնել միայն բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքը, որովհետև մի փոքր երկիր բնակչության մեկ շնչին ընկնող առանձին արտադրանքի

[1] Народное хозяйство СССР в 1968 г. стр. 153.

*ծավալով կարող է գերազանցել մի հզոր երկրի, սակայն նրանից տնտեսապես հզոր լինել չի կարող։ Բայց բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի ծավալը, մանավանդ խոշոր պետությունների տնտեսական զարգացման մակարդակների համեմատության համար, կարևորագույն նշանակություն ունի։ Սակայն պետք է նկատի ունենալ, որ այս հարցում, բացի արտադրանքի ընդհանուր բացարձակ ծավալը, կարևոր նշանակություն ունեն նաև տվյալ երկրի բնակչության թիվը և նրա աճի տեմպերը։ Հասկանալի է, որ մի որևէ արտադրանքի միևնույն բացարձակ ծավալի պայմաններում ՍՍՀՄ բնակչության մեկ շնչին ավելի քիչ արտադրանք կընկնի, քան ԱՄՆ-ում, քանի որ ՍՍՀՄ բնակչության թիվը զգալի չափով գերազանցում է ԱՄՆ-ի բնակչությանը։*

*Ինչպես վերը նշված տնտեսական ցուցանիշներով, այնպես էլ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի ծավալով զգալի չափով կրճատվել են ՍՍՀՄ և ԱՄՆ-ի միջև գոյություն ունեցող տարբերությունները։ Դա պարզ երևում է աղյուսակի տվյալներից (տե՛ս* «Мировая экономика и международные отношения» 1964, стр. 6, «Народное хозяйство СССР в 1968 году, стр. 158—161։ *Հաշվարկների մի մասը կատարված է մեր կողմից)։*

ՍՍՀՄ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի ծավալը ԱՄՆ-ի համեմատ

| Արտադրանքի տեսակը | 1963 թ. | 1968 թ. Մեկ շնչին ընկնող արտադրանքը — ԱՄՆ | 1968 թ. Մեկ շնչին ընկնող արտադրանքը — ՍՍՀՄ | 1968 թ. ՍՍՀՄ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքը ԱՄՆ-ի նկատմամբ (տոկոսներով) |
|---|---|---|---|---|
| Էլեկտրաէներգիա | 33 | 7456 կժ | 2686 կժ | 36 |
| Նավթ | 47 | 2239 կգ | 1300 կգ | 57 |
| Քարածուխ | — | 2483 » | 2322 » | 93,3 |
| Չուգուն | 75 | 403 » | 331 » | 82 |
| Պողպատ | 67 | 606 » | 448 » | 74 |
| Հանքային պարարտանյութ | — | 321 » | 183 » | 57 |
| Ցեմենտ | 88 | 342 » | 368 » | 107,6 |
| Բամբակե գործվածք | 63 | 37,3 մ² | 27,9 մ² | 74 |
| Բրդե գործվածք | 119 | 1,1 » | 1,9 » | 173 |
| Մետաքսե գործվածք | — | 19,9 » | 4,5 » | 22,6 |
| Կոշիկ կաշվե | 66 | 3,2 զույգ | 2,5 զույգ | 78 |
| Շաքար-շաքարավազ (հայրենական հումքից) | 101 | 25,4 կգ | 38 կգ | 149,46 |
| Ձկան որսը | — | 11,9 » | 28,5 » | 239,5 |
| Յուղ կենդանական | — | 2,7 » | 4,9 » | 181 |
| Միս (սպանդային քաշով) | — | 113 » | 49 » | 43,3 |
| Կաթ | — | 264 » | 345 » | 131 |

*Այս տվյալներից երևում է, թե բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի ծավալով ՍՍՀՄ որքան է կրճատել ԱՄՆ-ի նկատմամբ եղած տարբերությունները։ Եթե բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի մի շարք տեսակների ծավալի տարբերությունը ՍՍՀՄ և ԱՄՆ-ի միջև դեռ բավական մեծ է (էլեկտրաէներգիա, նավթ, մետաքսե գործվածքեղեն, միս, հանքային պարար-*



*տանյութ և այլն), ապա արտադրանքի մի շարք կարևոր տեսակներով (քարածուխ, չուգուն, կաշվե կոշիկ և այլն) ՍՍՀՄ ընդհուպ մոտեցել է ԱՄՆ-ին, իսկ մի շարք արտադրանքներով (ցեմենտ, բրդե գործվածքեղեն, շաքար, ձուկ, կաթ, կենդանական յուղ և այլն) գերազանցում է նրանցից։*

*Սոցիալիզմի նպատակն է աշխատավորների, մարդկանց կենսամակարդակով ևս գերազանցել բոլոր կապիտալիստական երկրների աշխատավորների կենսամակարդակը։ Դրա տնտեսական հիմքը ազգային եկամտի, նրա ծավալի ու աճի տեմպերն են։ Այս ասպարեզում ևս սոցիալիզմն ի հայտ է բերել իր առավելությունները կապիտալիզմի նկատմամբ։ Եթե վերցնենք բնակչության մեկ շնչին ընկնող ազգային եկամտի աճը, ապա 1968 թվականին 1950 թվականի համեմատ այն ՍՍՀՄ-ում կազմել է 348%, իսկ ԱՄՆ-ում՝ 147, Անգլիայում՝ 148, Ֆրանսիայում՝ 191, ԳՖՀ-ում՝ 239, Իտալիայում՝ 232, Ճապոնիայում՝ 431[1]։ Սակայն, բացի ազգային եկամտի աճի տեմպերը, պետք է նկատի ունենալ նաև նրա ամբողջ ծավալի մեծությունը և բնակչության մեկ շնչին ընկնող ազգային եկամուտը։*

*Թեպետև ՍՍՀՄ իր ազգային եկամտի աճի տեմպերով զգալիորեն գերազանցել է բոլոր զարգացած կապիտալիստական երկրներին, սակայն բնակչության մեկ շնչին ընկնող ազգային եկամտի ծավալով նա դեռ զգալի չափով ետ է մնում ԱՄՆ-ից, որտեղ 1968 թվականին այն կազմում էր 2552 դոլար, իսկ ՍՍՀՄ 1373 դոլար, կամ ԱՄՆ-ի մոտ 54%-ը[2]։ Այս տեսակետից ԱՄՆ-ը դեռևս ունի առավելություն, որը առաջին հերթին կապված է վերը ցույց տրված այն տարբերության հետ, որը դեռ գոյություն ունի ՍՍՀՄ և ԱՄՆ-ի տնտեսական մակարդակների, հատկապես աշխատանքի արտադրողականության մակարդակների միջև։ Սակայն կապիտալիստական և սոցիալիստական երկրների աշխատավորների կենսամակարդակների հարաբերակցության մասին բնակչության մեկ շնչին ընկնող ազգային եկամտի ծավալը դեռ ճիշտ պատկեր չի տալիս։ Հարցը այն է, թե ինչպես է բաշխվում ազգային եկամուտը նախ կուտակման և սպառման նպատակին, և երկրորդ, ինչպե՞ս է բաշխվում ազգային եկամտի սպառման ֆոնդը տվյալ հասարակարգի դասակարգերի և սոցիալական խմբերի միջև։*

*Ազգային եկամտի մեջ կուտակման բաժինը ՍՍՀՄ-ում ավելի մեծ է, քան զարգացած կապիտալիստական երկրներում (բացի ներկայիս Ճապոնիայից)։ Սակայն ազգային եկամուտը բուրժուական երկրներում բաշխվում է կապիտալիստորեն, այսինքն՝ նրա ավելի ու ավելի մեծ մասն է ընկնում կապիտալիստներին, իսկ աշխատավորների բաժինն ազգային եկամտում տենդենց ունի նվազելու, այսինքն՝ տեղի է ունենում բանվոր դասակարգի և ամբողջ աշխատավորության դրության* հարաբերական *վատթարացում։ Ազգային եկամտի այդպիսի բաշխման հետևանքով է, որ, օրինակ, ԱՄՆ-ում բնակչության 1%-ը տիրապետում է երկրի ազգային հարստության* $^2/_3$*-ին, իսկ 99%-ը միայն* $^1/_3$*-ին, Անգլիայում բնակչության 1%-ը տիրապետում է ազգային հարստության կեսին, իսկ նրա ամենահարուստ խավը, որը կազմում է երկրի ամբողջ բնակչության 0,2%-ը, տիրապետում է ազգային հարստության 25%-ին։ Նման պատկեր գոյություն ունի նաև մյուս զարգացած կապիտալիստական երկրներում։ Այստեղից հետևում է, որ բուրժուական, ռեֆորմիստական գաղափարախոսների բարբաջանքները «եկամուտների բաշխման մեջ հեղափոխության»,*

[1] Народное хозяйство СССР в 1968 году, стр. 144—145.

[2] *Նույն տեղը, էջ 146։*

«ժողովրդական», «դեմոկրատական», «ընդհանուր բարեկեցության» կապիտալիզմի մասին, մի նպատակ ունեն՝ կեղծել իրականությունը, կոծկել ժամանակակից կապիտալիզմի արմատական հակասությունները, մթագնել բանվոր դասակարգի, գյուղացիության և բոլոր աշխատավորների գիտակցությունը և նրանց հեռու պահել հեղափոխական պայքարից։

Սոցիալիստական աշխարհն այժմ թևակոխել է զարգացման մի այնպիսի ժամանակաշրջան, երբ հնարավորություն է ստեղծվել առավել լիակատար չափով օգտագործել նոր հասարակարգի ընդերքում գտնվող հարուստ ռեզերվները։ Սոցիալիստական հասարակության տնտեսական կարգն օբյեկտիվ պայմաններ և հնարավորություններ է ստեղծում արտադրուժերի զարգացման համար։ Խնդիրն այդ հնարավորությունների և ռեզերվների բացահայտումն ու օգտագործումն է։ Սովետական Միությունում և Եվրոպայի մյուս սոցիալիստական երկրներում կիրառվող տնտեսական ռեֆորմը հենց այդ նպատակին է ծառայում, այն է՝ բարձրացնել ժողովրդական տնտեսության արդյունավետությունը, ավելի արագացնել դրա աճի տեմպերը և նոր հաղթանակներ տանել կապիտալիզմի հետ տարվող տնտեսական մրցության մեջ։

Սոցիալիստական երկրների տնտեսական սերտ համագործակցության ուժեղացումը՝ աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման զարգացման հիման վրա, մեծ չափով աջակցելով տնտեսության արդյունավետության բարձրացմանը, գիտատեխնիկական նվաճումների ավելի լրիվ և ռացիոնալ օգտագործմանը, ամրապնդում է սոցիալիզմի դիրքերը կապիտալիզմի հետ մրցության ասպարեզում։ ՍՍՀՄ տնտեսության զարգացման բնորոշ գիծը և կարևորագույն ուղղությունը, ինչպես նշված է Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում, դա արտադրության ինտենսիվացումն է, որը պահանջում է խոր որակական փոփոխություններ ամբողջ ժողովրդական տնտեսությունում։

Այսպիսով, համառոտակի և հիմնական գծերով ցույց տվեցինք սոցիալիզմի, հատկապես ՍՍՀՄ հսկայական նվաճումները կապիտալիստական տնտեսական սիստեմի համեմատ։ Այդ նվաճումներն ունեն խոշոր, պատմական նշանակություն։ Սակայն դեռ մեծ աշխատանք և ջանքեր են պետք կապիտալիստական զարգացած երկրներին տնտեսական և տեխնիկական բոլոր հիմնական ցուցանիշներով և արտադրատեսակների որակով հասնելու ու անցնելու համար։

Կարող ենք վստահ ասել, որ, ինչպես սոցիալիզմի համաշխարհային սիստեմն ամբողջովին վերցրած, այնպես էլ ՍՍՀՄ նորանոր հաղթանակների կհասնեն սոցիալիզմի և կապիտալիզմի միջև այս պատմական մրցությունում ու պայքարում։



# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԵՐԿՈՒ ՍՏՈՐԱԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԻ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

Շ. Ս. ՄԱՐԳԱՐՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

Արտադրամիջոցների և սպառման առարկաների արտադրության հարաբերակցությունը սոցիալիստական ընդլայնված վերարտադրության կարևորագույն համամասնություններից է։ Ընդլայնված վերարտադրության օրինաչափությունների վերլուծության համար սկզբունքային նշանակություն ունեցավ հասարակական ամբողջ արդյունքը, հետևաբար և արտադրությունը բնաձևով երկու մասի՝ արտադրամիջոցների (I ստորաբաժանում) և սպառման առարկաների (II ստորաբաժանում) արտադրության միջև տրոհելու Կ. Մարքսի կատարած հայտնագործությունը։ Վ. Ի. Լենինը համամիտ է այն մտքին, ըստ որի՝ «Մենակ այս բաժանման մեջ թեորիական ավելի շատ իմաստ կա, քան նախընթաց բոլոր բանակռիվներում՝ շուկաների թեորիայի վերաբերյալ» (Երկեր, հ. 3, էջ 41)։

Մարտնչելով հասարակական վերարտադրության վերաբերյալ մարքսիստական դրույթների անաղարտության համար, Վ. Ի. Լենինը ստեղծագործաբար զարգացրեց ու մի նոր աստիճանի բարձրացրեց վերարտադրության տեսությունը, այդ թվում՝ երկու ստորաբաժանումների հարաբերակցության հարցը։

Հասարակական արտադրությունը երկու ստորաբաժանումների բաժանելն ունի սոցիալ-տնտեսական խոշոր նշանակություն։ Այն բնութագրում է տվյալ հասարակարգի արտադրահարաբերություններին համապատասխան հասարակական ամբողջական արդյունքի բաղադրամասերի շարժումը արտադրության, բաշխման, փոխանակության ու սպառման ոլորտներում։ Կապիտալիստական հասարակարգում արտադրամիջոցների ու սպառման առարկաների բաշխման դասակարգային բնույթն այն է, որ արտադրամիջոցները բաժին են ընկնում միայն կապիտալիստներին, իսկ սպառման առարկաները բաշխվում են բանվորների ու կապիտալիստների միջև։ Սոցիալիստական հասարակարգում արտադրամիջոցներն ու սպառման առարկաները հանդես են գալիս որպես աշ-

խատավորների սեփականություն, և առաջինները բաշխվում են արտադրության նյութական ծախսերի փոխհատուցման ու ընդլայնված վերարտադրություն իրականացնելու համար, իսկ երկրորդը՝ անձնական ու հասարակական սպառման ձևով՝ բնակչության աճող պահանջմունքները բավարարելու նպատակով։

Կապիտալիստական վերարտադրության օրինաչափությունների ուսումնասիրության մարքս-լենինյան մեթոդոլոգիան ու հետևությունները իրենց նշանակությունը պահպանում են նաև սոցիալիստական ընդլայնված վերարտադրության օրինաչափությունների ուսումնասիրության համար։ Սոցիալիզմի ժամանակ երկու ստորաբաժանումների հարաբերակցության վերլուծության հիման վրա ընդլայնված վերարտադրության օրինաչափությունների ուսումնասիրությունը գիտականորեն հիմնավորված պլանավորման կարևոր պայմաններից է։ Ժողովրդական տնտեսության աճող ու զարգացող ճյուղերի փոխադարձ կապն ու պայմանավորվածությունն ավելի ակնառու է դարձնում սոցիալիստական ընդլայնված վերարտադրության պայմանների պլանաչափ սահմանումը երկու ստորաբաժանումների վերլուծության հիման վրա կատարելու անհրաժեշտությունը։ Իհարկե, գնալով ավելի է մեծանում վերարտադրության օրինաչափությունների ուսումնասիրության գործում միջճյուղային կապերի դերն ու նշանակությունը։ Առանց այդ կապերի խոր ու բազմակողմանի վերլուծության այժմ անհնար է ընդլայնված վերարտադրության համամասնությունների ճշգրիտ պլանավորումը։ Սակայն միջճյուղային կապերի վերլուծությունը երբեք չի կարող փոխարինել հասարակական վերարտադրության երկու ստորաբաժանումների հիման վրա կատարվող վերլուծությանը։ Ընդ որում, հասարակական արտադրության երկու ստորաբաժանումները և միջճյուղային համամասնությունները սերտորեն կապված և փոխադարձորեն պայմանավորում են միմյանց։ Այդ փոխադարձ կապի մեջ առաջնայինը երկու ստորաբաժանումների հարաբերակցությունն է, քանի որ դրանով է պայմանավորված միջճյուղային համամասնությունների փոփոխությունը։

Այսպիսով, աշխատանքի հասարակական բաժանման խորացման հիման վրա տնտեսության բազմաթիվ ճյուղերի միջև ծավալվող համակողմանի կապերի աճին զուգընթաց, մեծանում է սոցիալիստական տնտեսության պլանային ղեկավարությունն իրականացնելու նպատակով հասարակական ամբողջական արդյունքը ճշգրիտ ձևով երկու ստորաբաժանումների տրոհելու և դրա վերլուծության միջոցով ժողովրդական տնտեսության համամասնությունների սահմանման նշանակությունը։

Հասարակական արտադրության երկու ստորաբաժանումների հարաբերակցության պրոբլեմի գլխավոր բովանդակությունը ընդլայնված վերարտադրության ընթացքում դրանց զարգացման աճի տեմպերի փոխհարաբերությունն է։ Սոցիալիզմի ժամանակ այդ հարցն անմիջականորեն կապված է ինչպես արտադրության զարգացման ու տեխնիկայի կատարելագործման, այնպես էլ բնակչության բարեկեցության բարձրացման խնդիրների կենսագործման հետ։ Առանց սպառման միջոցների նկատմամբ արտադրամիջոցների արտադրության առավել բարձր տեմպերով աճի, հնարավոր չէ ստեղծել ծանր ինդուստրիա, որն ընդհանրապես սպառման առարկաների արտադրության ավելացման, բնակչության բարեկեցության բարձրացման և երկրի պաշտպանունակությունը համապատասխան մակարդակի վրա պահելու նյութական հիմքն է։ Անմիջական կապ գոյություն ունի ժողովրդական տնտեսության մեջ աշխա-



տանքի տեխնիկական զինվածության և արտադրողականության աճի, արտադրության օրգանական կազմի բարձրացման և արտադրամիջոցների առավել արագ տեմպերով աճի տնտեսական օրենքի միջև։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման շնորհիվ ինչպես միավոր արտադրանքի, այնպես էլ հասարակական համախառն արտադրանքի վրա կատարվող աշխատանքի ծախսումները կրճատվում են։ Ըստ որում, ինչպես կենդանի, այնպես էլ առարկայացած աշխատանքի ծախսումները կրճատվում են այնպիսի հարաբերությամբ, որ արժեքի մեջ անցյալ աշխատանքի ծախսումները նոր ստեղծվածի համեմատությամբ մեծանում են։ Դրա պատճառով հասարակական ամբողջական արդյունքի մեջ ավելանում է նյութական ծախսումների տեսակարար կշիռը և օբյեկտիվ անհրաժեշտություն է դառնում ծախսումները փոխհատուցելու և ընդլայնված վերարտադրություն իրականացնելու համար արտադրամիջոցների արտադրության առավել աճի տնտեսական օրենքի գոյությունը։

Վ. Ի. Լենինը, հենվելով ընդլայնված վերարտադրության Կ. Մարքսի տեսության վրա, հիմնավորեց տեխնիկական առաջադիմության պայմաններում ընդլայնված վերարտադրության ժամանակ սպառման առարկաների արտադրության նկատմամբ արտադրամիջոցների արտադրության առավել արագ տեմպերով աճի անհրաժեշտությունը։ Ընդլայնված վերարտադրության ժամանակ ծախսված արտադրամիջոցների փոխհատուցումն ու արտադրաֆոնդերի կուտակումը կատարվում է արտադրամիջոցների հաշվին։ Որքան արտադրամիջոցներն ավելի մեծ չափով են գերազանցում փոխհատուցման ֆոնդը, այնքան մեծանում է արտադրությունն ընդլայնելու հնարավորությունը. արագանում են տեխնիկական առաջադիմության տեմպերը, բարձրանում է աշխատանքի արտադրողականությունը։ Արտադրամիջոցների արտադրության առավել աճն, առաջին հերթին, պայմանավորված է տեխնիկական առաջադիմությամբ, աշխատանքի ֆոնդազինվածության, էլեկտրազինվածության մակարդակով։ Վ. Ի. Լենինը գրում է. «Որքան ավելի է զարգանում տեխնիկան, այնքան ավելի է արտամղվում մարդու ձեռքի աշխատանքը, մի շարք ավելի ու ավելի բարդ մեքենաներով փոխարինվելով. երկրի ընդհանուր արտադրության մեջ ավելի ու ավելի մեծ տեղ են բռնում մեքենաները և նրանց արտադրման համար անհրաժեշտ առարկաները» (Երկեր, հ. 1, էջ 115)։ Այսպիսով, Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ արտադրամիջոցների առավել աճի անհրաժեշտությունը պայմանավորված է տեխնիկայի առաջադիմությամբ, իսկ տեխնիկական առաջադիմությունն անվերջ պրոցես է, ինչպես արտադրաուժերի զարգացումը։ Հետևապես I ստորաբաժանման արագ տեմպերով աճի օրենքը տեխնիկական առաջադիմության արդյունք է, «...որովհետև արագորեն զարգացող «արտադրության միջոցների» գլխավոր մասը կազմված է նյութեղենից, մեքենաներից, գործիքներից, շենքերից և զանազան այլ հարմարանքներից, որոնք անհրաժեշտ են խոշոր և հատկապես մեքենային արտադրության համար» (Երկեր, հ. 3, էջ 47)։

Տեխնիկական առաջադիմության ու հասարակական աշխատանքի արտադրողականության շնորհիվ ամբողջ արդյունքի մեջ հարաբերականորեն մեծանում է արտադրամիջոցների ծախսերի գումարը (կենդանի աշխատանքի համեմատությամբ)։ Քանի որ արտադրամիջոցները թողարկվում են I ստորաբաժանման կողմից, ապա դրա արդյունքը, տեխնիկական առաջադիմությանը զուգընթաց, ավելի արագ տեմպերով է աճում հասարակական համախառն արդյունքի և II ստորաբաժանման արտադրանքի համեմատ։ Արտադրամի-

ջոցների արտադրության առավել բարձր տեմպերով աճի տնտեսական օրենքի գոյությունը Վ. Ի. Լենինը համարեց ինքնին հասկանալի, ելնելով տեխնիկական առաջադիմության հիման վրա կապիտալի օրգանական կազմի աճի վերաբերյալ Կ. Մարքսի դրույթից։ Նա բացահայտեց այդ օրենքի էությունը, նշելով. «Արտադրության միջոցների ամենաարագ աճման այդ օրենքի ամբողջ իմաստն ու ամբողջ նշանակությունն էլ հենց միայն այն է, որ ձեռքի աշխատանքը մեքենային աշխատանքով փոխարինելը,— առհասարակ տեխնիկայի պրոգրեսը մեքենային ինդուստրիայի ժամանակ,— պահանջում է ուժգնապես զարգացնել քարածխի ու երկաթի, այդ իսկական «արտադրության միջոցների համար, արտադրության միջոցների» հանույթի արտադրությունները» (Երկեր, հ. 1, էջ 114)։

Հայտնի է, որ ընդլայնված վերարտադրության իր սխեմայում Կ. Մարքսը կապիտալի օրգանական կազմն ընդունեց որպես հաստատուն և անփոփոխ մեծություն, որի շնորհիվ I և II ստորաբաժանումներն աճում են հավասար տեմպերով։ Վ. Ի. Լենինը, ընդլայնված վերարտադրության Կ. Մարքսի սխեմայում մտցնելով տեխնիկական առաջադիմության, կապիտալի օրգանական կազմի փոփոխության տարրը, հանգեց այն եզրակացության, ըստ որի՝ արտադրամիջոցների արտադրությունն ավելի արագ տեմպերով պետք է աճի սպառման առարկաների համեմատությամբ։ Կ. Մարքսը Կապիտալի I հատորում ապացուցել է, որ տեխնիկական առաջադիմությունն իր արտահայտությունը գտնում է փոփոխուն ու հաստատուն կապիտալի նվազող հարաբերության մեջ։ Վ. Ի. Լենինը, տեխնիկական առաջադիմության հետևանքով հաստատուն ու փոփոխուն կապիտալի հետզհետե աճող գործոնը տեղադրելով Կ. Մարքսի ընդլայնված վերարտադրության սխեմայում, առաջինը կատարեց կարևոր նշանակություն ունեցող այն եզրակացությունը, ըստ որի՝ «...ամենից արագ աճում է արտադրության միջոցների համար արտադրության միջոցների արտադրությունը, ապա սպառման միջոցների համար արտադրության միջոցների արտադրությունը և ամենից ավելի դանդաղ՝ սպառման միջոցների արտադրությունը» (Երկեր, հ. 1, էջ 91)։

Վ. Ի. Լենինի ձևակերպած այս կարևորագույն օրինաչափությունն իր ուժը պահպանում է նաև սոցիալիստական ընդլայնված վերարտադրության համար, քանի որ այն նույնպես տեղի է ունենում տեխնիկական առաջադիմության, արտադրության օրգանական կազմի աճի պայմաններում։ Արտադրամիջոցների արտադրության առավել աճի օրենքին կարելի է հանգել «...նաև առանց «Կապիտալի» 2-րդ հատորում Մարքսի կատարած հետազոտությունների՝ այն օրենքի հիման վրա, որ հաստատուն կապիտալը փոփոխականից ավելի արագ աճելու տենդենց ունի. արտադրամիջոցների ամենաարագ աճման վերաբերյալ դրույթն այդ օրենքի հասարակ ֆրազափոխությունն է ամբողջ հասարակական արտադրության համեմատ» (նույն տեղը, էջ 91—92)։ Այսպիսով Վ. Ի. Լենինը սպառման միջոցների նկատմամբ արտադրամիջոցների արտադրության ավելի արագ աճի տնտեսական օրենքի գոյությունը համարում է արտադրության բարձր զարգացած տեխնիկայի ստեղծման հանրահայտ դրույթի ուղղակի հետևանք։

Արտադրամիջոցների արտադրության առավել աճի տնտեսական օրենքի գործունեությունը կապված է մի կողմից՝ տեխնիկական առաջադիմության, ձեռքի աշխատանքը մեքենայով փոխարինելու, երկու ստորաբաժանումների համար թողարկվող մեքենաների ու սարքավորումների կատարելագործման,



արտադրամիջոցներն արտադրության մեջ գործելու տևողության կրճատման և մյուս կողմից՝ արտադրանքի նյութատարության ու ֆոնդատարության իջեցման, արտադրության անընդհատության ու սարքավորումների հերթափոխության գործակցի աճի ու արտադրական կուտակման արդյունավետությունը բարձրացնելու այլ գործոնների հետ։

Նշված գործոնների փոխազդեցությունից, վերջին հաշվով, ձևավորվում է I և II ստորաբաժանումների աճի տեմպերի հարաբերակցությունը։ Արտադրամիջոցների արտադրության առավել աճի տնտեսական օրենքը ժխտողները գտնում են, որ այդ գործոններից վերջիններս, որոնք նպաստում են I ստորաբաժանման աճի տեմպերի դանդաղեցմանը, չեզոքացնում են մյուս գործոնների ազդեցությունը, առաջատար նշանակություն են ստանում, դրա համար վերանում է I ստորաբաժանման բարձր տեմպերով աճի անհրաժեշտությունը։ Սակայն հասարակական արտադրության շղթայի բոլոր օղակները դիտելիս ակնհայտ է դառնում այն օրինաչափությունը, որ կենդանի ու անցյալ աշխատանքի ուղղակի և անուղղակի խնայողության նպատակով տեխնիկական առաջադիմություն իրականացնելու համար արտադրամիջոցների լրացուցիչ պահանջարկը գերազանցում է դրանց խնայողությանը, որի հետևանքով սպառման միջոցների նկատմամբ արտադրամիջոցների առավել աճն ինտենսիվ զարգացող տնտեսության համար անհրաժեշտություն է։

Արտադրամիջոցների արտադրության առավել աճի օրենքի նյութական հիմքը՝ տեխնիկական առաջադիմությամբ պայմանավորված արտադրության օրգանական կազմի աճը, ձեռքի աշխատանքը մեքենայականով փոխարինելը, գոյություն ունի և սոցիալիստական հասարակարգում։ Հետևապես, այդ օրենքի գոյությունը սոցիալիզմի ժամանակ օբյեկտիվ անհրաժեշտություն է։

Այդ օրենքի առկայությունը ժխտողների փաստարկներից մեկն այն է, որ, վերջին հաշվով, դրա գործունեությունը կհանգեցնի I ստորաբաժանման արտադրանքի տեսակարար կշռի անսահման բարձրացմանը հասարակական համախառն արդյունքի մեջ (օրինակ, 99,9 տոկոս), դուրս կմղի II ստորաբաժանումը և կստացվի արտադրություն արտադրության համար։ Այդպիսի հարցադրումը՝ բնության, հատկապես հասարակական երևույթներին ու օրինաչափություններին մեխանիկական բացատրություն տալը, գիտական համարել չի կարելի։ Առաջին ստորաբաժանման առավել աճի տնտեսական օրենքի գործողությամբ երբեք չի կարող դուրս մղվել սպառման առարկաների արտադրությունը, որովհետև այն առանց վերջինի զարգանալ չի կարող։

Արտադրամիջոցների արտադրության մեջ աշխատողների և ամբողջ հասարակության աճող պահանջմունքները բավարարելու համար անհրաժեշտ են լրացուցիչ սպառման առարկաներ, իսկ սպառման առարկաների արտադրության աճի համար՝ արտադրության լրացուցիչ միջոցներ։ Սոցիալիզմի ժամանակ արտադրամիջոցների զարգացման նպատակը, ի վերջո, սպառման առարկաների ավելացումն է, որն ուղղակի կախման մեջ է I ստորաբաժանումից ստացվող արդյունքների չափերից ու որակից։ Արտադրամիջոցները կարող են աճել, եթե II ստորաբաժանումն ապահովում է I ստորաբաժանման աշխատողների վարձատրության ֆոնդի դիմաց անհրաժեշտ կենսամիջոցների թողարկումը։

Բացի այդ, օրենքներն ու օրինաչափությունները միշտ գործում են հակազդող գործոնների ազդեցության ներքո և տենդենցի բնույթ են ստանում։ Օրինակ, գյուղատնտեսության ինտենսիվացման հիման վրա հողի բերքա-

տվության բարձրացման հնարավորությունից չի կարելի այնպիսի հետևություն անել, որ իբր գյուղատնտեսական արտադրությունը կարելի է կենտրոնացնել մեկ հեկտար հողի վրա կամ կապիտալիզմի ժամանակ շահույթի նորմայի անկման տենդենցի օրենքից չի կարելի եզրակացնել, որ այն կարող է հավասարվել զրոյի։ Այդպես էլ I ստորաբաժանման առավել բարձր տեմպերով աճի օրենքից չի կարելի հետևեցնել, որ այն դուրս կմղի II ստորաբաժանումը և սպառման առարկաներ չեն արտադրվի։

Վ. Ի. Լենինը կռահեց այդպիսի հարցադրման հնարավորությունը։ Նա գրեց, եթե ընդունում ենք, որ V-ի հարաբերությունը C+V-ին շարունակ նվազում է, ապա ինչո՞ւ չընդունել, որ V-ն դառնում է զրոյին հավասար։ Այն ժամանակ հավելյալ արժեքի կուտակվող մասը կմիանա առաջին ստորաբաժանման հաստատուն կապիտալին, արտադրությունը կաճի բացառապես արտադրամիջոցների համար արտադրամիջոցների հաշվին և լիովին կանգ կառնի երկրորդ ստորաբաժանումը։ «...այդ կլիներ արդեն սխեմաներն ի չարը գործադրել, որովհետև այդպիսի հետևությունը հիմնված է անհավանական ենթադրությունների վրա, ուստի և ճիշտ չէ» (Երկեր, հ. 1, էջ 92)։ Տեխնիկական առաջադիմությունը չի կարող բացառել երկրորդ ստորաբաժանման ընդլայնումը, II ստորաբաժանումը չի կարող կանգ առնել։ Ընդգծելով երկու ստորաբաժանումների փոխադարձ կապն ու պայմանավորվածությունը և առաջին ստորաբաժանման ավելի բարձր տեմպերով աճի անհրաժեշտությունը, Վ. Ի. Լենինը տվեց այդ հարցի գիտական ու սպառիչ պատասխանը։ Նա նշեց. «...հասարակական պրոդուկցիայի առաջին ստորաբաժանումը (արտադրության միջոցների պատրաստումը) կարող է և պետք է զարգանա ավելի արագ, քան երկրորդը (սպառման առարկաների պատրաստումը)։ Բայց այստեղից, հասկանալի է, բնավ չի հետևում, թե արտադրության միջոցների պատրաստումը կարող էր զարգանալ սպառման առարկաների պատրաստումից բոլորովին անկախ և առանց նրա հետ որևէ կապակցություն ունենալու... Վերջին հաշվով, արտադրողական սպառումը (արտադրության միջոցների սպառումը) միշտ կապված է անհատական սպառման հետ, միշտ կախվածության մեջ է» (Երկեր, հ. 4, էջ 63—64)։

Վ. Ի. Լենինը տեսականորեն հիմնավորեց ինտենսիվ ձևով զարգացող ընդլայնված վերարտադրության ժամանակ սպառման առարկաների արտադրության նկատմամբ արտադրամիջոցների արտադրության առավել աճի տնտեսական օրենքը։ Այդ օրենքի պահանջները հաշվի են առնվել ու առնվում սոցիալիստական շինարարության պրակտիկայում՝ ժողովրդական տնտեսության զարգացման պլանները կազմելիս։

Մեր երկրում, ընդհանրապես արտադրության բարձր տեմպերով աճին զուգընթաց, արտադրամիջոցների արտադրության աճի տեմպերը առաջ են անցել սպառման առարկաների աճի տեմպերից։ Արտադրամիջոցների արտադրության առավել աճի օրենքի պահանջի իրականացման շնորհիվ ՍՍՀՄ կարճ ժամանակաշրջանում դարձավ ընդուստրիալ հզոր տերություն։ Մեր երկրի արտադրության զարգացման արդի բարձր մակարդակն անհնար կլիներ առանց արտադրամիջոցների արտադրության բարձր տեմպերով աճի։

Արտադրամիջոցների և սպառման առարկաների տեմպերի հարաբերակցության մասին պատկերացում է տալիս արդյունաբերության արտադրանքի «Ա» և «Բ» խմբերի զարգացման հարաբերակցությունը։

Արդյունաբերության արտադրանքի մեջ, արտադրամիջոցների առավել



աճի շնորհիվ, աստիճանաբար բարձրացավ «Ա» խմբի արտադրանքի տեսակարար կշիռը։ Այսպես, եթե 1913 թ. ցարական Ռուսաստանի արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ արտադրամիջոցների տեսակարար կշիռը 35,1 տոկոս էր, ապա ՍՍՀՄ արդյունաբերության մեջ 1940-ին՝ 61,2, 1950 թ.՝ 68,8, 1960 թ.՝ 72,5, իսկ 1967-ին՝ 74,4 տոկոս։ Հայկական ՍՍՀ-ում արդյունաբերության մեջ արտադրամիջոցների տեսակարար կշիռը 1940 թ. 41 տոկոս էր, 1960 թ. 64, իսկ 1967-ին՝ 69 տոկոս։ Մեր երկրում արտադրամիջոցների տեսակարար կշռի աճը տեղի է ունեցել մեքենաշինության ու մետաղամշակման, քիմիական ու նավթաքիմիայի արդյունաբերության, էլեկտրաէներգիայի և առաջատար այլ ճյուղերի բարձր տեմպերով աճի շնորհիվ։

Արտադրամիջոցների արտադրության առավել աճի օրենքը սերտորեն կապված է ժամանակակից արտադրամիջոցների բարձր տեմպերով աճի հետ։ Կենդանի աշխատանքի զինումը մեքենաներով և դրանց օգնությամբ աշխատանքի առարկաների ավելի մեծ զանգված մշակելը հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր ցուցանիշն է։ Հետևապես, արտադրամիջոցների արտադրության առավել աճն անհրաժեշտ է ոչ միայն երկրի ինդուստրացման, այլև հետագա ժամանակաշրջանում։

Արտադրամիջոցների արտադրության առավել աճի օրենքն իր ուժը կպահպանի նաև կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ժամանակաշրջանում։ Սակայն ճիշտ չէր լինի այդ օրենքի գործողության բնույթի նախկին ձևով մեկնաբանությունը, ըստ որի, արտադրամիջոցների արտադրության առավել աճի օրենքը բացարձակացվում է։ Այժմ հնարավորություն է ստեղծվել ժողովրդական տնտեսության զարգացման պլանները մշակելիս ավելի մեծ չափով հաշվի առնել բնակչության բարեկեցության բարձրացման պահանջները։ Խնդիր է դրված արագացնել սպառման առարկաների արտադրության աճի տեմպերը բնակչության աճող պահանջմունքները բավարարելու նպատակով։ Արտադրական ավելի փոքր կարողություններով և հարաբերականորեն ավելի քիչ արտադրամիջոցներով ավելի շատ սպառման առարկաների արտադրության ապահովումն արդի ժամանակաշրջանի կարևորագույն խնդրի՝ հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր պայմանն է։

ՍՄԿԿ XXIII համագումարում խնդիր դրվեց և գործնականում կենսագործվում է երկու ստորաբաժանումների աճի տեմպերի մերձեցումը։ Ի տարբերություն ինդուստրացման ու ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինման ժամանակաշրջանի, երբ առաջին ստորաբաժանման արտադրանքի աճի տեմպերն անհամեմատ բարձր էին սպառման առարկաների նկատմամբ, այժմ զգալիորեն մեծացել է այն գործոնների դերն ու նշանակությունը, որոնք հնարավորություն են ընձեռում երկարատև ժամանակաշրջանում մերձեցնել երկու ստորաբաժանումների աճի տեմպերը։

Սոցիալիզմի ժամանակ արտադրամիջոցների արտադրության առավել աճի տնտեսական օրենքը դրսևորվում է մի շարք առանձնահատկություններով։ Ընդլայնված վերարտադրության նյութական նախադրյալներն ստեղծվում են պլանաչափ զարգացման տնտեսական օրենքի հիման վրա. Աշխատանքի արտադրողականության անշեղ վերելք ապահովելու համար տեղի է ունենում աշխատանքի տեխնիկական զինվածության անընդհատ աճ և ստեղծվում է անմիջական կապ արտադրության ու սպառման միջև։ Այդ կապի դրսևորման համար արտադրության զարգացման ժամանակակից մակարդակն ավելի լայն

հնարավորություն է ստեղծել։ Այժմ արտադրության վրա սպառման ակտիվ ազդեցության, սպառման առարկաների հարաբերականորեն արագ աճի ավելի մեծ հնարավորություն կա, քանի որ արտադրության համամասնությունների սահմանման գործում ավելի ու ավելի կարևոր նշանակություն ունեն բնակչության բարեկեցության բարձրացման խնդիրները։ Եվ դա կարող է կենսագործվել միայն արտադրության զարգացման որոշակի մակարդակի հիման վրա։ Մեր երկրի զարգացման արդի մակարդակն օբյեկտիվ պայմաններ է ստեղծել ընդլայնված վերարտադրության համամասնությունների կատարելագործման համար։

ՍՍՀՄ էկոնոմիկայի նախընթաց զարգացումն օբյեկտիվ նախադրյալներ է ստեղծել, որպեսզի հիմնական արտադրաֆոնդերի վերականգնումն ու ընդլայնումը կատարվի ավելի նվազ ծախսումներով և մեծ ուշադրություն նվիրվի երկրորդ ստորաբաժանման զարգացմանը։ Ժողովրդական տնտեսության զարգացման արդի մակարդակը հնարավորություն է ընձեռում առանց կաշկանդելու առաջին ստորաբաժանման արտադրանքի աճի տեմպերը, բարձրացնել երկրորդինը, մերձեցնելով այն արտադրամիջոցների արտադրության աճի տեմպերին։ Երկու ստորաբաժանումների աճի տեմպերի մերձեցման օբյեկտիվ հիմքը երկրի արտադրական կարողության աճն է, որն, ի դեպ, ստեղծվել է արտադրամիջոցներ արտադրող առաջատար ճյուղերի բարձր տեմպերով աճի շնորհիվ։

Ժողովրդական տնտեսության զարգացման մակարդակի բարձրացմանը զուգընթաց երկու ստորաբաժանումների աճի տեմպերի մերձեցումը համարվում է ընդհանուր օրինաչափություն։ Օրինակ, մեր երկրում արդյունաբերական արտադրանքի «Ա» խմբի առաջանցիկ գործակիցը «Բ» խմբի նկատմամբ 1928—1940 թթ. 2,4 էր, յոթնամյակի տարիներին՝ 1,5, իսկ ընթացիկ հնգամյակում պլանով նախատեսված է 1,1։ Քանի որ 1966 և 1967 թվականներին, պլանով նախատեսվածի համեմատությամբ, «Ա» խումբն ավելի արագ է աճել, ապա հնգամյակում նախատեսված հարաբերակցությունը պահպանելու համար, 1968 թ. «Բ» խումբն աճեց 8,3, իսկ «Ա»-ն՝ 8 տոկոսով։ Բնակչության բարեկեցության բարձրացման նախատեսված միջոցառումները կենսագործելու նպատակով արդյունաբերության «Ա» խմբի նկատմամբ «Բ» խմբի առաջնային աճ տեղի ունեցավ նաև 1969 թ.։ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1970 թ. պլանով ևս «Բ» խմբի արտադրանքի աճը (6,8 տոկոս) կգերազանցի «Ա» խմբի (6,1 տոկոս) աճին։

Երկու ստորաբաժանումների աճի տեմպերի հարաբերակցության փոփոխությունը սերտորեն կապված է արտադրության զարգացման որակական ցուցանիշների՝ ֆոնդազինվածության, ֆոնդահատույցի, աշխատանքի արտադրողականության և այլնի հետ։ Օրինակ, յոթնամյակի տարիներին արտադրության արդյունավետությունը բնորոշող մի շարք ցուցանիշների իջեցմամբ արտադրամիջոցներն աճեցին նախատեսվածից ավելի բարձր տեմպերով, արդյունաբերության արտադրանքի «Ա» և «Բ» խմբի միջև ստեղծվեց անհամամասնություն։ Ֆոնդահատույցի բարձրացումը հարաբերականորեն իջեցնում է արտադրամիջոցների լրացուցիչ պահանջը, որը նպաստում է երկու ստորաբաժանումների աճի տեմպերի մերձեցմանը։ Աշխատանքի առարկաների ծախսումների կրճատումը ևս նպաստում է այդ պրոցեսին։

Երկու ստորաբաժանումների տեմպերի մերձեցումը պայմանավորված է նաև արտադրական կուտակման արդյունավետության բարձրացմամբ։ Արտա-



դրաֆոնդերի ռացիոնալ օգտագործումը հարաբերականորեն կրճատում է դրանց փոխհատուցման ու ընդլայնման համար հասարակական համախառն արդյունքից այդ նպատակին հատկացվող միջոցների չափը։ Արտադրամիջոցների արտադրության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ իջնում է դրանց արժեքը և հնարավորություն ստեղծվում՝ կուտակման նախկին կամ կրճատվող նորմայի դեպքում, մեծացնել արտադրաֆոնդերը։

Երկու ստորաբաժանումների աճի տեմպերի մերձեցման կարևոր ուղի է նաև արտադրամիջոցների որակի բարձրացումը։ Որքան բարձր է աշխատամիջոցների որակը, դրանց արդյունավետությունը, այնքան քիչ միջոցներ են պետք սպառման առարկաների արտադրանքի մեկ միավորի արտադրության համար և ավելի մեծ հնարավորություններ են ստեղծվում երկրորդ ստորաբաժանման աճի տեմպերն արագացնելու համար։ Աշխատամիջոցների ու առարկաների միևնույն քանակով, դրանց որակը բարձրացնելիս, ավելի շատ արտադրանք կարելի է թողարկել։ Օրինակ, ՍՍՀՄ-ում, սև մետաղագործության արտադրանքի որակի բարձրացման միջոցով նրբաթերթ ու բարձրորակ պողպատների արտադրության տեսակարար կշիռն ավելացնելով, զգալիորեն կարելի է ավելացնել մեքենաշինության արտադրանքի ծավալը։ Մեքենաշինության մեջ մետաղը ճշգրիտ մեթոդներով մշակելու շնորհիվ միլիոնավոր տոննաներով մետաղ կարելի է տնտեսել լրացուցիչ արտադրանք թողարկելու համար։

Այսպիսով, արտադրամիջոցների և սպառման առարկաների աճի տեմպերի հարաբերակցությունը սերտորեն կապված է արտադրության արդյունավետության, արտադրամիջոցների որակի բարձրացման պրոբլեմի հետ։ Զարգացման բարձր մակարդակ ունեցող տնտեսության մեջ երկու ստորաբաժանումների աճի տեմպերի հարաբերակցության սահմանման համար վճռական նշանակություն ունի արտադրանքի որակի բարձրացումը։ Արտադրամիջոցների և սպառման առարկաների համամասնությունները ոչ միայն քանակական, այլև արտադրության արդյունավետության, դրա ինտենսիվության բարձրացման հետ կապված համամասնություններ են։

Սպառման առարկաների արտադրության ետ մնալը հաղթահարելու համար անհրաժեշտ է արագ տեմպերով զարգացնել գյուղատնտեսությունը։

Կարևոր նշանակություն ունի նաև ծանր արդյունաբերության ճյուղերում սպառման առարկաների արտադրության հետագա մեծացումը։ Այժմ երկրորդ ստորաբաժանման ճյուղերում տեխնիկական հագեցվածության ետ մնացող մակարդակի բարձրացումը առաջնահերթ խնդիրներից է։ Իսկ դա հնարավոր չէ կատարել առանց արտադրամիջոցների արտադրության արագ տեմպերով զարգացման։ Մինչդեռ, վերջին շրջանում արդյունաբերական արտադրանքի մեջ զգալիորեն կրճատվել է երկրորդ ստորաբաժանման համար թողարկվող արտադրանքի տեսակարար կշիռը։ Այսպես, եթե 1950 թ. արդյունաբերության մեջ արտադրամիջոցների արտադրանքից երկրորդ ստորաբաժանմանը հատկացվող բաժինը կազմեց 28 տոկոս, ապա 1967 թ.՝ միայն 18 տոկոս։ Դա այն դեպքում, երբ սպառման առարկաներ թողարկող արտադրության ճյուղերը դեռևս անբավարար են հագեցած արտադրամիջոցներով։ Այժմ խնդիր է դրված գյուղատնտեսությունը, թեթև ու սննդի արդյունաբերությունը հագեցնել ժամանակակից առաջավոր տեխնիկայով, բարձրացնել այդ ճյուղերի ֆոնդազինվածությունը, որը դեռևս ցածր է ժողովրդական տնտեսության միջին մակարդակից։

Սպառման առարկաների արտադրությունն ավելի մեծ չափով տեխնիկապես զինելու համար առաջիկայում արտադրամիջոցների արտադրության և սպառման առարկաների արտադրամիջոցների արտադրության հարաբերակցությունը կփոխվի հօգուտ վերջինի։ Ուրեմն, երկրորդ ստորաբաժանման արտադրամիջոցների աճի տեմպերը որոշ ժամանակ կարող են ավելի արագ տեմպերով զարգանալ (առաջին ստորաբաժանման արտադրամիջոցների արտադրության աճի տեմպերի համեմատ)։ Այլ խոսքով, սպառման առարկաների աճի տեմպերն արագացնելու համար օպտիմալ համամասնություն պետք է լինի արտադրամիջոցների արտադրության կազմում առաջին և երկրորդ ստորաբաժանումների համար թողարկվող արտադրամիջոցների միջև։

Ընդգծելով արտադրամիջոցների և սպառման առարկաների արտադրության փոխադարձ կապը՝ Վ. Ի. Լենինը նշել է. «...վերջին հաշվով արտադրության միջոցների պատրաստումն անհրաժեշտորեն կապված է սպառման առարկաների պատրաստման հետ, որովհետև արտադրության միջոցները պատրաստվում են ոչ թե հենց իրենց՝ արտադրության միջոցների համար, այլ միայն նրա համար, որ սպառման առարկաներ պատրաստող արդյունաբերության ճյուղերում գնալով ավելի ու ավելի շատ արտադրության միջոցներ են պահանջվում» (Երկեր, հ. 4, էջ 201—202)։

Հասարակական արտադրության երկու ստորաբաժանումների աճի տեմպերի մերձեցումը կատարվում է այդ ստորաբաժանումներից յուրաքանչյուրի ճյուղային կառուցվածքում կատարվող փոփոխությունների շնորհիվ։ Առաջիկայում ավելի արագ տեմպերով են զարգանալու մեքենաշինությունը, քիմիան, էներգետիկան և տեխնիկական առաջադիմություն ապահովող մյուս ճյուղերը։

Արտադրամիջոցների առավել աճի անհրաժեշտությունը թելադրվում է նաև գործող արտադրական ապարատը ավելի կարճ ժամկետում փոխելու և նորացնելու պահանջով։ Գիտության ու տեխնիկայի աճի տեմպերի զարգացումը պահանջում է կրճատել գործող սարքավորումների շահագործման ժամկետները, բարձր արտադրողականություն ապահովելու համար պարբերաբար նորացնել դրանք։

Սպառման առարկաների աճի տեմպերի նկատմամբ արտադրամիջոցների առավել աճի օրինաչափությունը երկարատև ժամանակաշրջանի համար գործում է նաև ինդուստրիալ զարգացման բարձր մակարդակ ունեցող երկրում։ Արտադրանքի ֆոնդատարության, նյութատարության կրճատումը, ինչպես նաև կուտակման նորմայի իջեցումը և արտադրության արդյունավետության բարձրացումը բնորոշող այլ գործոններ չեն փոխում այդ օրենքի էությունը։ Այն առանձնահատուկ ձևով դրսևորվում ու իր արտահայտությունն է գտնում երկրի էկոնոմիկայի զարգացման տարբեր էտապներում, իսկ այժմ՝ երկու ստորաբաժանումների աճի տեմպերի մերձեցման միջոցով։

Երկու ստորաբաժանումների աճի տեմպերի հարաբերության վերաբերյալ Վ. Ի. Լենինի մշակած դրույթներն այժմ էլ ուղենիշ են հասարակական վերարտադրության տեսական ու գործնական կարևոր նշանակություն ունեցող հարցերում ճիշտ կողմնորոշվելու, ժողովրդական տնտեսության զարգացման պլաններում օպտիմալ համամասնություն սահմանելու համար։



# ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ԵՎ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐՆԵՐԸ

ՅՈՒ. Ս. ԽՈՋԱՄԻՐՅԱՆ

Հայկական ՍՍՀ պետպլանի նախագահի տեղակալ

Լենինյան ազգային քաղաքականության կենսագործման շնորհիվ Սովետական Միության հանրապետությունների եղբայրական ընտանիքում Սովետական Հայաստանը վիթխարի հաջողությունների է հասել գիտության, կուլտուրայի, լուսավորության, առողջապահության, ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։

Պատմական կարճ ժամանակամիջոցում՝ 50 տարում, Հայաստանը ցարական Ռուսաստանի ագրարային հետամնաց երկրից վերածվեց զարգացած արդյունաբերություն և գյուղատնտեսություն ունեցող առաջավոր հանրապետության, դարձավ երկրի խոշորագույն գիտական կենտրոններից մեկը։ Այժմ Հայաստանում գործում են ավելի քան 120 գիտական հաստատություն ու լաբորատորիա՝ 25 հազար աշխատողով, որոնցից 11 հազարը գիտաշխատողներ են։ Գիտության տարբեր ճյուղերում թեկնածուների թիվը հասնում է ավելի քան 3 հազարի, դոկտորներինը՝ 400-ի։ Միայն ընթացիկ հնգամյակի չորս տարիներում (1966—1969) Հայաստանում ստեղծվել են 15 գիտական նոր հաստատություն, դրանց թվում՝ Հայկական ՍՍՀ ԳԱ ֆիզիկական հետազոտությունների, ագրոքիմիական պրոբլեմների և հիդրոպոնիկայի, փորձարարական բիոլոգիայի, փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտները, հանրապետության պետպլանի պլանավորման ու էկոնոմիկայի գիտահետազոտական ինստիտուտը և այլն։

Հայաստանի գիտական հաստատությունների այդպիսի լայն ցանցը գլխավորում է Հայկական ՍՍՀ ԳԱ-ն, որն ունի 30 գիտական ստորաբաժանում և միավորում է հանրապետության ամենանշանավոր գիտնականներին։

Հատկանշական է, որ եթե առաջ Հայաստանում հիմնականում զարգանում էին գյուղատնտեսական, բժշկական, հասարակական գիտությունները, ապա վերջին տասնամյակներում և, հատկապես, Հայրենական մեծ պատերազմից հետո, հիշյալ բնագավառների խոշոր նվաճումների հետ մեկտեղ, հանրապետությունում մեծ չափով զարգացան նաև ֆիզիկա-մաթեմատիկական, տեխնիկական, քիմիական, երկրահանքաբանական և այլ գիտություններ։ Հայաստանի՝ հատկապես կիրառական բնույթի գիտական հիմնարկու-

թյունների ցանցի ընդլայնումը սերտորեն համակցված է ժողովրդական տնտեսության զարգացման հետ։ Արտադրության որևէ ճյուղի զարգացումը թելադրում է գիտական համապատասխան ստորաբաժանման ստեղծում, որն, իր հերթին, նպաստում է արտադրության տվյալ բնագավառի առավել զարգացմանը։ Կարելի է բազում այդպիսի օրինակներ բերել։ Այսպես, եթե հանրապետության զարգացող էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը հանգեցրեց գործարանի լաբորատորիաների բազայի վրա սկզբում ֆիլիալի, հետագայում՝ կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի ստեղծմանը, ապա այժմ այդ ինստիտուտի հետազոտությունների արդյունքները լայնորեն ներդրվում են արտադրության մեջ և զգալի չափով նպաստում նրա զարգացմանը։ Համանման պայմաններում ստեղծվեցին և արդյունաբերության համապատասխան ճյուղի զարգացման վրա դրականորեն են ներազդում նաև պոլիմերների համամիութենական, Հայաստանի մեքենաշինական գիտահետազոտական և այլ ինստիտուտներ։ Կիրառական պրոֆիլի ինստիտուտների ստեղծման և գործունեության այդ եղանակը ամենաճիշտն ու արդյունավետն է։

Հայաստանում կիրառական, բնական և հասարակական գիտությունների շատ ճյուղերում ստեղծվել են գիտական կայուն դպրոցներ։ Համաշխարհային ճանաչում է գտել ակադեմիկոս Վ. Համբարձումյանի՝ աստղաֆիզիկայի գիտական դպրոցը. հանրահայտ են և հաջողությամբ են զարգանում նաև մաթեմատիկայի, մեխանիկայի, օրգանական քիմիայի, երկրաբանության, հնագիտության, պատմության և գիտության այլ ճյուղերի գիտական դպրոցները։

Գիտական շատ հաստատությունների գիտահետազոտական աշխատանքների բարձր մակարդակը, անտարակույս ապահովվում է հանրապետությունում մի շարք առաջավոր գիտնական-հետազոտողների առկայությամբ, որոնք գլխավորում են գիտական կոլեկտիվները։ Կատարվող հետազոտությունների հաջողության գրավականը տվյալ գիտական նեղ բնագավառի ճիշտ ընտրությունն է, և կոլեկտիվի ջանքերի այդ ուղղությամբ կենտրոնացումը։ Ինքնին հասկանալի է, որ բնական, տեխնիկական, կիրառական և այլ գիտական հաստատություններ պետք է ունենան ժամանակակից պահանջներին համապատասխան փորձարարական բազա։ Ի հաստատումն այդ ամենի բերենք հետևյալ օրինակները։ Հայկ. ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս, սոցիալիստական աշխատանքի հերոս Ա. Լ. Մնջոյանի հիմնադրած և տարիներ շարունակ գլխավորած նուրբ օրգանական քիմիայի ինստիտուտը հաջողությամբ ուսումնասիրում է բնական և ֆիզիոլոգիապես ակտիվ սինթետիկ նյութերի քիմիայի բնագավառը։ Ինստիտուտում սինթեզվել են ինքնատիպ շատ պրեպարատներ, որոնք լայնորեն օգտագործվում են սրտանոթային, տուբերկուլյոզի, ներվային և այլ հիվանդությունների բուժման ու պրոֆիլակտիկայի համար։ Ընդ որում, անհրաժեշտ է ընդգծել, որ այնտեղ ստեղծվել է փորձա-արտադրական ժամանակակից բազա, որը հնարավորություն է ընձեռում ո՛չ միայն փորձա-արտադրական մասշտաբներով մշակելու սինթեզի տեխնոլոգիան, այլև երկիրն ապահովելու մի շարք դեֆիցիտային ու արդյունավետ պրեպարատներով։ Ինստիտուտի աշխատանքները հիմք կհանդիսանան Հայաստանում ստեղծվող դեղագործական արդյունաբերության համար։

Գործնական մեծ նշանակություն ունեն Հայկական ՍՍՀ ԳԱ միկրոբիոլոգիայի ինստիտուտում կատարվող հետազոտությունները, որոնք դարձան խիստ հեռանկարային մի բնագավառի՝ միկրոբիոլոգիայի արդյունաբերու-



թյան ստեղծման գիտական բազա։ Հանրապետությունում ձեռնարկություններ են կառուցվում ամինաթթու-լիզինի, բակտերիական ինսեկտիցիդների (միջատասպան) և բիոքիմիական այլ կարևորագույն պրեպարատների արտադրության համար։ Հայկական ՍՍՀ ԳԱ ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ինստիտուտում կատարվում են գործնական մեծ նշանակություն ունեցող արժեքավոր աշխատանքներ։ Ինստիտուտի կոլեկտիվը, կենտրոնացնելով ուժերը գերբարձր հաճախականության ռադիոֆիզիկայի ուղղությամբ, նշանակալի հաջողությունների հասավ ռադիոաստղագիտական գերզգայուն գործիքների, ռադիոընդունիչ սարքերի ստեղծման, կիսահաղորդչային էլեկտրոնիկայի հետազոտման ասպարեզում։ Ինստիտուտն ունի ժամանակակից փորձա-լաբորատոր բազա, որը հնարավորություն է ընձեռում հետազոտությունները կատարելու տեսական ու փորձարարական բարձր մակարդակով։

Հանրապետության ճյուղային գիտական շատ հաստատություններից ուշագրավ է Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի աշխատանքը։ Կարճ ժամանակամիջոցում երիտասարդ կոլեկտիվը մշակեց ու սերիական արտադրության հանձնեց մի շարք ժամանակակից էլեկտրոնային-հաշվիչ մեքենաներ (Հրազդան—2, Հրազդան—3, Նաիրի, Նաիրի—2 և այլն)։ Իրենց բարձր հատկություններով համաշխարհային ստանդարտի մակարդակ ունեցող այդ մեքենաները լայն ճանաչում են գտել Միությունում և արտասահմանում։ Իր փորձա-արտադրական պատշաճ բազայի շնորհիվ ինստիտուտը էլեկտրոնային հաշվիչ մեքենաների ստեղծմամբ դարձավ առաջատար գիտական հաստատություն։

Կարելի է թվարկել գիտահետազոտական այլ ինստիտուտներ ևս, որոնց հետազոտությունների թեմատիկան անմիջականորեն բխում է հանրապետության ժողովրդական տնտեսության համապատասխան ճյուղի առջև ծառացած խնդիրներից, և որոնց հետազոտությունների արդյունքները հաջողությամբ ներդրվում են արտադրության մեջ։ Դրանցից են՝ վերը հիշատակված կոմպլեքսային էլեկտրասարքավորումների համամիութենական ինստիտուտը, պոլիմերների, էներգետիկայի, գյուղատնտեսության մինիստրության՝ հողագիտության ու ագրոքիմիայի, խաղողագործության, գինեգործության և պտղաբուծության, առողջապահության մինիստրության մի քանի գիտահետազոտական ինստիտուտներ և այլն։

Անվիճելի են Սովետական Հայաստանի գիտության վիթխարի նվաճումները։ Սակայն այժմ, երբ կոմունիստական կուսակցությունը մեր առաջնահերթ խնդիրն է համարում գիտահետազոտական առաջընթացի ապահովումը ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում, հանրապետության գիտնականները չպետք է հանգստանան ձեռք բերածով։ Անհրաժեշտ է վեր հանել գիտական հետազոտությունների կազմակերպման, դրանց արդյունքներն արտադրության մեջ ներդնելու գործում եղած թերությունները, բոլոր ուժերը համախմբել՝ դրանց վերացման, Հայաստանի գիտության առջև ծառացած բարդ խնդիրները պատվով լուծելու համար։

Գիտական կազմակերպությունների աշխատանքի էական թերություններից մեկը կիրառական պրոֆիլ ունեցող գիտահետազոտական որոշ ինստիտուտների կտրվածությունն է հանրապետության ժողովրդական տնտեսության խնդիրներից։ Ընդ որում, նման երևույթ նկատվում է ո՛չ միայն գիտությունների ակադեմիայի առանձին ինստիտուտների գործունեության մեջ, այլև որոշ ճյուղային ինստիտուտներում։ Այսպես, ակադեմիայի օրգանական քի-

միայի ինստիտուտը, որ որակյալ գիտաշխատողներ ունեցող գիտական հիմնարկություն է, վերջին տարիներս հիմնականում զբաղվում է տեսական հետազոտություններով։ Արտադրության մեջ լայնորեն ներդրվում է այդ ինստիտուտի ստեղծած սորուն նյութերի փոխադրման պնևմատրանսպորտը միայն, որը, ըստ էության, խիստ արժեքավոր է, բայց նրա պրոֆիլի հետ ոչնչով չի առնչվում։ Ինստիտուտը կոչված է անմիջականորեն օգնելու հանրապետության քիմիական արդյունաբերությանը, մշակելով ու ներդնելով քիմիական նոր պրոցեսները, սինթեզված պոլիմերային նյութերը։ Ինստիտուտի այդ մեկուսացածությունը խորանում է նրա փորձա-արտադրական բավարար բազայի բացակայությամբ, որի հետևանքով շատ ուսումնասիրություններ ավարտվում են միայն լաբորատոր փորձերով, որը, անշուշտ, խիստ անբավարար է դրանք արտադրության մեջ ներդնելու համար։

Ճյուղային շատ ինստիտուտներ ստեղծվել են հանրապետության արդյունաբերության համապատասխան բնագավառի գիտատեխնիկական բազայի ամրապնդման նպատակով։ Սակայն, ցավոք, ներկայումս դրանք ևս կտրված են հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների խնդիրներից։ Այսպես, Կիրովականի ավտոմատիկայի գիտահետազոտական ինստիտուտը, աշխատելով մեր Միության (Հեռավոր Հյուսիսից մինչև Ուրալ) ձեռնարկությունների համար, փաստորեն ոչինչ չի անում հօգուտ հանրապետության քիմիական արդյունաբերության և գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների ավտոմատացման, այսինքն՝ ինչի համար այն ստեղծվել է։

Առավել վառ օրինակ է Կիրովականի պոլիմերային սոսինձների (նախկին Հայքիմնախագիծ) գիտահետազոտական ինստիտուտը։ Այն ստեղծված էր գիտական փորձա-արտադրական և նախագծային ստորաբաժանումներով և կոչված էր կատարելու կոմպլեքսային ամբողջական աշխատանք— գիտական հետազոտություններ, տեխնոլոգիական ռեգլամենտի մշակում, նախագծերի հանձնում։ Սակայն մինչև օրս ինստիտուտի ստորաբաժանումները զատ-զատ են գործում։ Պոլիմերային սոսինձների պրոբլեմը, անկասկած, ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունի. այդուհանդերձ, ինստիտուտի և հանրապետության քիմիական արդյունաբերության կապերը թույլ են։ Նույնը կարելի է ասել հանրապետության մեքենաշինության գիտահետազոտական ինստիտուտի, թեթև և տեքստիլ մեքենաշինության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի Երևանի ֆիլիալի և գիտական մի շարք այլ կազմակերպությունների մասին։ Անտարակույս, արտադրությունից ինստիտուտների կտրվածության վրա ազդում է դեռևս նկատվող գիտատեխնիկական առաջադիմության նկատմամբ որոշ ձեռնարկությունների անտարբերությունը և քարացածությունը։

Հայաստանի գիտական կազմակերպությունների աշխատանքում նկատվող մյուս կարևոր թերությունը հանրապետության ժողովրդական տնտեսության խնդիրներից բխող պրոբլեմների կոմպլեքսային, միջճյուղային ուսումնասիրությունների գրեթե բացակայությունն է։ Մինչդեռ հանրապետության ժողովրդական տնտեսության առջև ծառացած են կարևորագույն խնդիրներ, որոնց լուծման համար պահանջվում են տարբեր բնագավառների գիտնականների խորազնին հետազոտությունները։ Դրանցից են՝ մթնոլորտի և ջրերի պաշտպանումը արդյունաբերական աղականումից, Հայաստանի հանքային բնական հարստությունների օգտագործումը, մի շարք արտադրությունների կոմպլեքսային ավտոմատացումը և այլն։ Վերոհիշյալ



խնդիրները պահանջում են գիտնականների՝ քիմիկոսների, բիոլոգների, էլեկտրիկների, տնտեսագետների, ինժեներների և ուրիշների ջանքերի միավորում։

Կոմպլեքսային հետազոտությունների նախաձեռնողներն ու կազմակերպիչները կարող են լինել Հայաստանի գիտությունների ակադեմիան (որը գիտական հետազոտությունների բազմապրոֆիլ միավորում է), պոլիտեխնիկական ինստիտուտը կամ համալսարանը (որոնք նույնպես ունեն տարբեր մասնագիտության լավագույն գիտնականներ)։ Այդ հարցում, անշուշտ, կազմակերպական կարևոր դեր ունեն հանրապետության պետական օրգանները։

Հայաստանի գիտական հաստատությունների գործունեության էական թերություններից է նաև գիտական հետազոտություններում ժամանակակից հաշվիչ տեխնիկայի ոչ միշտ արդյունավետ օգտագործումը, էլեկտրոնային հաշվիչ մեքենաների անբավարար ներդրումը տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատ ղեկավարման սիստեմներում, ժողովրդական տնտեսության առանձին ճյուղերում կամ ձեռնարկություններում։

Տարօրինակ է, բայց փաստ է, որ մեր հանրապետությունում, ուր զգալի հաջողություններ են ձեռք բերվել էլեկտրոնային հաշվիչ մեքենաների, էլեկտրոնային և ավտոմատ մի շարք սարքերի ու սարքավորումների ստեղծման և արտադրության ասպարեզում, ավտոմատացման այդ հնարավորությունները խիստ սահմանափակ են օգտագործվում։ Չնայած տարբեր պրոֆիլ ունեցող բազմաթիվ գիտական հաստատությունների առկայության, Հայաստանում փաստորեն չկա մի այնպիսի գիտական ստորաբաժանում, որն օգտագործելով ավտոմատացման ժամանակակից միջոցները, ունակ լինի մշակելու և ներդնելու ղեկավարման ավտոմատացման սիստեմներ։

Հանրապետության գիտահետազոտական հաստատություններում, չնայած վերջին տարիներս կիրառված միջոցառումներին, երբեմն շարունակվում է գիտական աշխատանքների բազմաթեմայությունը, որը խանգարում է ջանքերը հիմնական խնդրի վրա կենտրոնացմանը։ Այդպես է գիտությունների ակադեմիայի առանձին ինստիտուտներում և, հատկապես, առողջապահության մինիստրության մի քանի գիտական հիմնարկություններում, որտեղ թեմատիկ պլանները հաճախ հարմարեցվում են գիտաշխատողների դիսերտացիաներին։ Դեռևս լիովին արմատախիլ չեն արվել հետազոտությունների չպատճառաբանված զուգահեռականությունները։ Գիտական շատ հաստատությունների թեմատիկ պլաններում դեռևս մեծ տեղ են գրավում երկրորդական թեմաները, որոնց վրա հարկ է լինում մեծ ջանքեր ու միջոցներ վատնել։ Այսպես, բավական է նշել, որ 1970 թ. հանրապետության կողմից ֆինանսավորվող կազմակերպությունները գիտական հետազոտությունների համար հատկացված ծախսումների ընդհանուր ծավալի 36 տոկոսն են հատկացրել գիտատեխնիկական, բնական և հասարակական հիմնական պրոբլեմների այն հարցերի ուսումնասիրմանը, որոնք հաստատված են պետպլանի, գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի, ՍՍՀՄ ԳԱ կողմից։ Հայաստանի գիտական հաստատությունները գրեթե չեն զբաղվում այնպիսի կարևոր պրոբլեմով, ինչպիսին աշխատանքի արտադրողականության տեմպերի արագացումն է հանրապետության արդյունաբերության տարբեր ասպարեզներում։

Եթե ծանոթանանք կիրառական նշանակություն ունեցող մի շարք գիտական հաստատությունների ավարտված աշխատանքների ցանկին, կհամոզ-

վենք, որ դրանց զգալի մասը կարևոր նշանակություն ունենալով ժողովրդական տնտեսության համար, տարիներ շարունակ չի ներդրվում։

Արդյո՞ք այդ ամենը հետևանք է արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարների անուշադրության կամ ընթացիկ հարցերով զբաղված լինելու։ Ուշադիր զննումները ցույց են տալիս, որ բանն ամենևին դրանում չէ։ Մեծ մասամբ ձեռնարկությունը հիմնականում շահագրգռված է ներդրմամբ, բայց չի կարողանում այն իրականացնել, քանի որ հետազոտությունը կա՛մ ավարտվել է լաբորատոր պայմաններում, առանց փորձա-արտադրական մշակման, կա՛մ տնտեսապես հիմնավորված չէ։ Այսինքն՝ հաճախ այն, ինչ ինստիտուտն ավարտված է համարում, իրականում պահանջում է հետագա տքնաջան աշխատանք։ Բերենք միայն մեկ օրինակ։ Հայկական ՍՍՀ ԳԱ օրգանական քիմիայի ինստիտուտը մի քանի տարի է, ինչ ստացել է շատ արժեքավոր սոսնձող նյութեր՝ պոլիտրիեն և քլորոպոլիտրիեն պոլիմերները։ Սակայն դրանց ներդրումը ձգձգվում է, որովհետև տեխնոլոգիան բավարար չափով մշակված չէ, և արտադրության արժեքը դեռևս շատ բարձր է։

Հետազոտությունների անավարտությունը մեծ մասամբ հետևանք է պատշաճ փորձա-արտադրական բազայի բացակայության (ինչպես օրգանական քիմիայի ինստիտուտում)։ Պետք է մեծ ուշադրություն նվիրել գիտական հիմնարկություններում լաբորատոր բազայի ստեղծմանը. ամեն տարի պետությունն զգալի գումարներ է հատկացնում գիտական հիմնարկությունների կապիտալ շինարարության համար։ Սակայն, ցավոք, շինարարական կազմակերպությունների անբարեխիղճ վերաբերմունքի և պատվիրատուների անբավարար հետևողականության պատճառով տարիներ շարունակ այդ հատկացումները չեն յուրացվում։ Այսպես՝ միայն հանրապետության գիտությունների ակադեմիայի հիմնարկությունների շինարարության համար տարեկան 3,5—4 միլիոն ռուբլի կապիտալ ներդրումներ են հատկացվում։ Ակադեմիան կապիտալ շինարարության պլանները կատարում է, միջին հաշվով, 70 տոկոսով, այսինքն՝ յուրաքանչյուր երեք տարում մենք կորցնում ենք մեկ տարվա շինարարության համար նախատեսված կապիտալ ներդրումները։ Տարիներ շարունակ ձգձգվում է օրգանական քիմիայի, միկրոբիոլոգիայի, հասարակական գիտությունների, ֆիզիկական հետազոտությունների ինստիտուտների և շատ այլ օբյեկտների կառուցումը։ Մինչդեռ հանրապետության առջև ծառացած խնդիրները պահանջում են լուրջ ուշադրություն նվիրել գիտական հիմնարկությունների շինարարությանը, տեղին օգտագործել ներդրված հատկացումները, թույլ չտալ միջոցների փոշիացում։

Գիտական հիմնարկությունների գործունեությունն զգալի չափով պայմանավորված է գիտական բարձրորակ կադրերով։ Հայկական ՍՍՀ-ում, ինչպես վերը նշվեց, կան բարձր որակավորում ունեցող գիտության շատ թեկնածուներ ու դոկտորներ, որոնք կազմում են գիտական հաստատությունների աշխատողների ընդհանուր թվի մոտ 14 տոկոսը, այսինքն՝ ստեղծված է միանգամայն կանոնավոր համամասնություն— յուրաքանչյուր դոկտոր կամ թեկնածու իր ձեռքի տակ կարող է ունենալ գիտական կոչում չունեցող մոտ 6 աշխատող։ Սակայն, եթե վերլուծենք գիտական կադրերով ապահովվածության վիճակը, ապա կպարզվի, որ դրությունն ամենևին էլ մխիթարական չէ։ Գիտական հաստատությունների ավելի քան 12 հազար գիտաշխատողներից ֆիզիկա-մաթեմատիկական ու տեխնիկական գիտությունների թեկնածու և դոկտոր է ընդամենը 5 տոկոսը, մինչդեռ բժշկագիտության բնագավառում՝ 30, իսկ



պատմության, փիլիսոփայության, բանասիրական, մանկավարժական գիտությունների բնագավառում՝ մոտ 35 տոկոսը։

Ամենևին չնսեմացնելով հումանիտար գիտությունների վիթխարի նշանակությունը, կամ բժշկագիտության շատ կարևոր դերը, միաժամանակ անհրաժեշտ է նշել, որ գիտության այդ բնագավառներում մեզ մոտ կոչումներ ունեցող գիտական կադրերի որոշ գերարտադրություն է նկատվում։ Մինչդեռ ֆիզիկա-մաթեմատիկական, տեխնիկական, քիմիական, երկրաբանա-հանքաբանական գիտությունների բնագավառում նրանց խիստ պակաս է զգացվում։ Մի՞թե տարօրինակ չէ, որ էլեկտրատեխնիկական արդյունաբերության և սարքաշինության ասպարեզում իր բացառիկ ցուցանիշներով երկրում երրորդ տեղը գրավող հանրապետությունն էլեկտրամեքենաների, հաշվիչ տեխնիկայի, ռադիոտեխնիկայի բնագավառում գիտության ոչ մի դոկտոր չունի։ Իսկ գիտությունների ակադեմիան, մինիստրություններն ու գերատեսչություններն այդ կարևոր հարցին պատշաճ ուշադրություն չեն նվիրում։ Ակադեմիան ամեն տարի չի կատարում ասպիրանտների ընդունելության ու շրջանավարտման պլաններն այնպիսի մասնագիտությունների գծով, որպիսիների պակասն ու կարիքն առավել զգալի է հանրապետությունում։

Գիտական հետազոտությունների արդյունավետության տնտեսագիտական վերլուծությունը, գիտության մեջ ներդրված միջոցների փոխհատուցման հարցերին նվիրված սովետական և արտասահմանյան մի շարք գիտնականների աշխատություններն ապացուցում են, որ գիտությունը գործունեության տնտեսապես առավել արդյունավետ բնագավառ է, որի համար կատարված ծախսերի դիմաց որոշակի ժամանակում տասնապատիկ շահույթ է ստացվում։

Գիտական հիմնարկությունների ֆինանսավորման ծավալը միայն հանրապետության բյուջեից 1970 թվականին կազմում է մոտ 25 միլիոն ռուբլի, որը 35 տոկոսով գերազանցում է 1965 թվականի ֆինանսավորման ծավալը։ Այդ գումարների զգալի մասը գործադրվում է տեսական և հետազոտական բնույթ կրող բնական ու հասարակական գիտությունների բնագավառների հետազոտությունների համար։ Առանց նման հետազոտությունների, անշուշտ, անհնար է ժամանակակից գիտության զարգացումը։ Սակայն Հայկական ՍՍՀ գիտությանը հատկացվող միջոցների հիմնական բաժինը ծախսվում է կիրառական գիտական հետազոտությունների վրա, և մենք իրավունք ունենք այդ պրոֆիլի գիտահետազոտական կազմակերպություններից պահանջելու՝ բարձրացնել հետազոտությունների արդյունավետությունը և ապահովել ներդրված միջոցների փոխհատուցումը։ Հանրապետության գիտնականները պետք է ճիշտ գնահատեն մեր առջև դրված խնդիրները։ Անհրաժեշտ է գործադրել բոլոր ջանքերը՝ վերացնելու գիտական հետազոտությունների կազմակերպման և դրանց արդյունքները Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ ներդնելու գործում դեռևս նկատվող թերությունները։ Այդպիսով միայն հաջողությամբ կլուծվեն գիտատեխնիկական առաջընթացի խնդիրները, գիտությունն ամբողջապես կդառնա ռեալ արտադրաուժ։

# ԱՎԵԼԻ ՇԱՏ ՇԻՆԱՆՅՈՒԹ ՆՈՐԱԿԱՌՈՒՅՑՆԵՐԻՆ

Է. Գ. ԷՔՍՈՒՋՅԱՆ

*ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրի տեղակալ*

Սովետական Հայաստանը հարուստ է շատ ու բազմատեսակ շինանյութերով: Հետևաբար, դրանց արդյունահանության կարգացումը մտահոգում է ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրությանը: Հանրապետությունում կենտրոնացած են կզալի քանակությամբ քարանյութեր ու սիլիկատային հումք, այնպիսի նյութեր, ինչպես հրաբխային տուֆն է, պեմզան, պեռլիտները, աբսիդները, դիատոմիդները, բազալտը, անդեզիտը, գրանիտը, սենիտը, մարմարը, դոլոմիտները, կրաքարերը, պորֆիրիտները, կվարցիտները և ոչ հանքային հանածոների շատ այլ տեսակներ, որոնց պաշարները անսպառ են, ունեն համամիութենական նշանակություն:

Բնական քարանյութերը և սիլիկատային հումքը, ժողովրդական տնտեսության շատ ճյուղերում արդյունավետ օգտագործելու համար, պիտանի են բնական, կոմբինացված և վերամշակված ձևերով: Դրանք պատրաստի նյութեր են կանգուն արուրձներ ու կառուցվածքներ պատրաստելու համար:

Հայաստանի բնությունը շինարարներին քարեր ընտրելու հնարավորություն է տվել՝ սկսած ամրապինդ բազալտից և գրանիտից մինչև դյուրամշակ տուֆն ու ֆիլզիտները, որոնք սկզբում մշակվում են ամենապարզ գործիքներով, այնուհետև, ժամանակի ընթացքում ավելի ու ավելի են ամրանում՝ հաճելի տպավորություն թողնելով մարմար հիշեցնող բազմագույն տեսքով: Այդ քարերից հիանալի մանվող նյութ է ստացվում: Հայ որմնադիրներն ու ճարտարապետները վարպետորեն են օգտագործել բնության այդ պարգևները: Նրանք երկիրը կարդարում էին հիասքանչ, հազվագյուտ կառուցվածքներով, միահյուսելով դրանք ներշնչող բնության հետ: Հիրավի, հայ ճարտարապետության ատաղձը քարն է՝ բազմագույն տուֆը, բազալտը, որոնք հավաքովի երկաթբետոնի, ապակու և ալյումինի հետ այժմ էլ հանրապետությունում գերակշռում են:

Նախասովետական շրջանում քարհանքերը մշակվում էին պրիմիտիվ եղանակով, գերազանցապես ձեռքի աշխատանքով: Սովետական իշխանության առաջին տարիներից կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը մեծ ուշադրություն նվիրեցին քարերի և մյուս տեսակի բնական շինանյութերի արդյունահանման արագ կարգացմանը, որի շնորհիվ քարե շինանյութերի հանույթը կզալիորեն ավելացավ հատկապես առաջին հնգամյակում:



Հայրենական մեքենաշինության նվաճումները հնարավորություն ընձեռեցին սարքավորել գործող և նորաստեղծ քարհանքերը՝ ոչ հանքային նյութերի հանույթի կազմակերպման նպատակով: 1926 թվականին շահագործման հանձնվեցին Ջաջուռի կրաքարի հանքերը, իսկ 1927—1928 թթ. սկսել են մշակել Արթիկ-տուֆի և Անի պեմզայի քարհանքերը: Դրա շնորհիվ հանրապետության քաղաքները կառուցվեցին վարդագույն տուֆով:

Հրաբխային պեմզայի առկայությունը հնարավորություն ընձեռեց արտադրելու թեթևաքաշ մեծադյուսներ ո՛չ միայն միջնապատեր դնելու, այլև մեկ-երկու հարկանի տներ կառուցելու համար: 1929 թվականին կառուցվեցին պեմզաբլոկի, 1930-ին՝ տեղական գիպսի հանքավայրի բազայի վրա գաջի գործարանները: Նույն թվականներին հանրապետության շրջաններում ստեղծվեցին կղմինդր-աղյուսի գործարաններ, կազմակերպվեց բազալտի և քարավազի հանույթը: Արարատի կրաքարի հանքավայրի բազայի վրա կառուցվեց և 1933 թ. վերջին շահագործման հանձնվեց ցեմենտի գործարանը՝ տարեկան 125 հազար տոննա կարողությամբ:

Սովետական Հայաստանում շինանյութերի արդյունահանումը մեծ թափով կարգացավ Հայրենական մեծ պատերազմից հետո: Կառուցվել է բնական քարերի արդյունահանման և մշակման մեքենաների նոր գործարան:

Հետամնաց տնայնագործական քարհանքերի և ավազահանքերի փոխարեն ստեղծվեց ժամանակակից տեխնիկայով հագեցած շինանյութերի արդյունաբերության լիարժեք ճյուղ: Լեռնահանքային աշխատանքների բոլոր հիմնական տեսակները (բացումը, հանույթը, շուռ տալը և այլն) հիմնականում մեքենայացված են, ընդ որում, լեռնահանքային և տրանսպորտային սարքավորման կազմը տարեցտարի համալրվում է ավելի կատարյալ, հզոր և բարձրարտադրողական միջոցներով: Հանքերի աճող տեխնիկական վերազինվածությունը լայն հնարավորություններ է ստեղծել առանձին պրոցեսների մեքենայացումից ամբողջական, կոմպլեքսային մեքենայացման անցնելու համար և արագ թափով կարգացնել շինանյութերի արդյունաբերությունը:

Շինանյութերի արդյունաբերության կարգացման մասին է վկայում մեր մինիստրության կապիտալ ներդրումների աճը: Եթե 1969 թվականին իրացված կապիտալ ներդրումների ծավալը 4,5 միլիոն ռուբլի էր, ապա 1970 թվականին այն կկազմի 10,5 միլիոն ռուբլի:

Անցած հնգամյակի տարիներին մինիստրության սիստեմում ապրանքային արտադրանքի ծավալը կազմել է 186 միլիոն ռուբլի: Եթե 1965 թվականին այդ ծավալը 29,4 *մլն* ռուբլի էր, 1969 թվականին փաստական կատարումը հասել է 45,6 *մլն*-ի, իսկ 1970 թ. արտադրության պլանով սահմանված է 50,87 *մլն* ռուբլի: 1970 թվականին ապրանքային արտադրանքը, 1965 թվականի համեմատությամբ, կկազմի 172 տոկոս:

ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրության արտադրության աճի բարձր տեմպերի մասին են վկայում հետևյալ տվյալները.

| Տարեթիվ | Տուֆ (հազար խմ.) | Ցեմենտ (հազար տոննա) | Բազալտ | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | | | Մարմար (հազար քմ.) | սրբատաշ (հազար քմ.) | ոչ սրբատաշ (հազար քմ.) | եզրասալեր (հազ. գծ. մ.) |
| 1965 | 797 | 619 | 9 | 13 | 41 | 198 |
| 1969 | 1,224 | 670 | 19 | 25 | 50 | 250 |

Ներկայումս հանրապետությունում մեքենայացված են պատված պեմզայի, հրաբխային խարամի, պեռլիտների և տուֆի լցանյութերի հանույթն ու մշակումը: Հարյուր հազարավոր խորանարդ մետր ավազի և ավազա-հանքակոպիճի հանույթը կատարվում է Կարմրաշենի, Լենինականի, Հոկտեմբերյանի, Կիրովականի և մի շարք այլ շրջանների հանքարաններում: Կրաքարեր հիմնականում արդյունահանվում են Արարատում և Ջաջուռում՝ ցեմենտի, կրի և քիմիական արդյունաբերության համար: Արարատի կրաքար-տրավերտինի հանքարանի կարողությունը 1 միլիոն տոննայից ավելի է:

Տուֆի, բազալտի, անդեզիտներ-բազալտի, անդեզիտների և գրանիտների հանույթը կատարվում է հանրապետության շատ շրջաններում: Առավել խոշոր հանքավայրերից են Արթիկ-տուֆը, Պեմզաշենի, Լենինականի, Կիրովականի, Հոկտեմբերյանի, Թալինի, Աշտարակի և մի շարք այլ ձեռնարկությունները, ուր տուֆ քարի հանույթը մեծ մասամբ մեքենայացված է (քարհատ մեքենաներով), իսկ տուֆի առանձին քարհանքերում բացման և լեռնանախապատրաստման աշխատանքներից հետո հանույթը կատարվում է կտրող մեքենաներով կամ պայթեցման մեթոդով՝ սեպերի, կռանների և այլ գործիքների օգնությամբ՝ խոշոր քարակտորները կտրատելով և օգտագործման համար համապատասխան մասերի վերածելով:

Սակայն անհրաժեշտ է նշել, որ կաղապարաձև տուֆաքարեր ստանալու համար գոյություն ունեցող քարհատ մեքենաները նախատեսված են մինչև 100 *կգ* քառակուսի *սմ* նվազագույն ամրություն ունեցող քարատեսակների համար, իսկ մեր տուֆերի ամրությունը հասնում է 300 *կգ* քառակուսի *սմ*: Ժամանակն է ստեղծել մոդեռնացված հզոր մեքենա, որը կարողանա սղոցել կարծր տուֆաքարերը:

Հայաստանում մարմարի հանքարաններ կան Աղվերանում, Արզականում, Արարատում, Խորվիրաբում, Իջևանում, Մարմարաշենում, Մայմեխում, Ջարխեջում (մարմարի կոնգլոմերատ), Աղհամզալուում (մարմարյա եղնջաքար) և այլն: Նշված հանքարաններում կան տարբեր գույնի մարմարներ՝ սպիտակ, երակախառն սպիտակ, մոխրագույն, կիսաթափանցիկ սաթ (եղնջատեսակ), վարդագույն, դարչնագույն, սև՝ սպիտակ կամ ոսկեգույն երակներով: Հայաստանում արդյունահանվող սև մարմարը մեծ մասամբ սպիտակ կամ ոսկեգույն-դեղին երակներով է հանդիպում: Առանձնապես գեղազարդային են Արարատի և Խորվիրաբի մարմարները: Արարատի՝ ոսկեգույն երակներով սև և սպիտակ մարմարը լայնորեն կիրառվում է շենքի ներսում պլինթուսների, վահանների զարդարման և հատակի հարդարման համար:

Առանձնապես արժեքավոր է Մայմեխի հանքարանի սպիտակ մարմարի տարատեսակը, որն աչքի է ընկնում բարձր խտությամբ, ուրվանկարների և



շերտանշանների բացակայությամբ: Մարմարի այդ տեսակը հազվադեպ է հանդիպում և կարող է օգտագործվել քանդակներ ու կարդանկարներ պատրաստելու համար: Հայմարմար կոմբինատում դրանից մեծադյուսներ և սալիկներ են պատրաստվում:

Բնական շինանյութերը լայնորեն գործադրվում են ժամանակակից բնակարանային, կոմունալ, արդյունաբերական և ճանապարհային շինարարության, ինչպես նաև արդյունաբերության որոշ ճյուղերում: Բնական քարի յուրաքանչյուր տեսակ և դրա հանույթի ու վերամշակման մնացորդները կարող են լիովին և կոմպլեքսաբար օգտագործվել ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում: Օրինակ, պեմզան, հրաբխային խարամը բնական վիճակով լիովին օգտագործվում են որպես բետոնի և այլ լցանյութ: Այդ նյութերը գործածվում են նաև որպես ապակու, ապակեթելի, քարեբամբակի արտադրության հումք և մալերի համար: Այդ նյութերից քիմիական վերամշակման միջոցով կստացվեն նաև արժեքավոր սինթետիկ արտադրանքներ:

Վերջին տարիներին մեր հանրապետությունում մեծ չափերի հասնող շինարարական աշխատանքներ են կատարվել և հսկայական կապիտալ միջոցներ ներդրվել: Միայն վերջին երեք տարվա ընթացքում կատարվել են ավելի քան մեկ միլիարդ ռուբլու շինարարական աշխատանքներ, որոնք խոշոր չափերի շինանյութեր պահանջեցին: Ձեռնարկությունների ավտոմատացման, նոր տեխնոլոգիայի արմատավորման շնորհիվ բարելավվեցին արդյունաբերության աշխատանքների տեխնիկա-տնտեսական ցուցանիշները: Աճեց պատվող հինգների արտադրանքը Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատում, ավելացավ պատային նյութերի արտադրության ծավալը արհեստական բնաքարերից, զգալի չափով մեծացավ անջատվող խճի, ավազի արտադրությունը և այլն:

Հաշվի առնելով խեցեգործական արտադրանքների նկատմամբ կապիտալ շինարարության կարիքները և բնակչության պահանջմունքները, 1966 թվականին շահագործման հանձնվեց Երևանի խեցեգործական արտադրանքների կոմբինատը՝ 450 հազ. քառ. մետր երեսպատման և 375 հազ. քառ. մետր հատակապատման սալիկների արտադրական կարողությամբ: Դրա շնորհիվ զգալի չափով կրճատվեց հիշյալ արտադրանքների ներմուծումը հանրապետություն:

Երկրի քիմիական արդյունաբերությունը թթվահեստային նյութերի մեծ պահանջ ուներ: Հաշվի առնելով այդ, հանրապետության շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը կազմակերպեց անդեզիտ-բազալտե արտադրանքների թողարկումը Աբովյանի շինանյութերի արտադրության և անդեզիտի ալյուրինը՝ Անիպեմզայի կոմբինատներում: Վերջինիս թթվահեստայնությունը, պահանջվող 95,5 տոկոսի դիմաց, հասնում է 97—98-ի: Անդեզիտային արտադրանքները մշակվում են անդեզիտի և անդեզիտ-դեցիտի վիժվածքային հանքատեսակներից՝ հատային տաշված շինվածքների, անդեզիտային խճի և անդեզիտային ալյուրի ձևերով: Այդ արտադրանքները լայնորեն օգտագործվում են որպես թթվահեստային նյութեր՝ էլեկտրաքամիչների և ծծմբաթթվի, ազոտաթթվի ու աղաթթվուտների արտադրության և քիմիական այլ ապարատուրայի, ինչպես և քիմիական պաշտպանության համար: Անդեզիտի որոշ տարատեսակներից պատրաստվում է ֆաներային քար՝ փոշիացող հավաքածու, որը գործածվում է փայտային կանգվածների արտադրության մեջ (ցելյուլոզներ):

Վերջին 2—3 տարում ՀՍՍՀ շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը շահագործման է հանձնել Կարմրաշենի թեթև լցանյութերի կոմբինատը, որն արտադրում է բնական հրաբխային խարամից անջատվող խիճն ու ավազը՝ տարեկան 1 *մլն* խոր. մետր կարողությամբ: Հրաբխային խարամի հիման վրա արտադրվում են թեթև և ամուր բետոնային, ինչպես նաև երկաթբետոնե արտադրանքներ, որոնք կերամզիտների հետ մրցում են արդյունաբերական, քաղաքային և գյուղական շինարարության մեջ: Կարմրաշենի հրաբխային խարամն ամեն տարի արտահանվում է (Անդրկովկաս, Հյուսիսային Կովկաս, Սարատովի, Ռոստովի մարզեր և այլն): Տուֆի մնացորդների բազայի վրա, որպիսիք հսկայական չափերով գոյանում են պատաքարի արդյունահանման ու մշակման պրոցեսում, գործարկվեց Արթիկի արհեստական տուֆաբետոնային սալիկների գործարանը, տարեկան 250 հազ. քառ. մետր կարողությամբ:

Հայկվազյուտ պեռլիտային ապարների խոշորագույն հանքարանների բազայի վրա Արագածում շահագործման հանձնվեց ջարդող-տեսակավորող գործարան՝ 250 հազար տոննա կատված պեռլիտի կարողությամբ: Փչել-ուռցնելու դեպքում պեռլիտի ծավալը մեծանում է ավելի քան 10 անգամ: Դա օժտված է բարձր ջերմամեկուսիչ, ձայնախլացուցիչ, ատսորբցիոնային, ծծանցվող և արժեքավոր այլ հատկություններով ու արդյունավետ է կիրառվում շինարարական արդյունաբերության մեջ, ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում: Պեռլիտի արտադրանքների մեծ մասն արտահանվում է Իտալիա և Բելգիա:

1969 թվականի վերջերին Սպանդարյանի բազալտի հանքարանի բազայի վրա շահագործման հանձնվեց 680 հազ. խոր. մետր կարողությամբ կտված, լվացված բազալտի խճաքարի ջարդող-տեսակավորող գործարանը, որը կառուցված է ներմուծված սարքավորումներով: Այդ խճաքարը լայնորեն գործադրվեց մեծ կառուցվածքներում, ճանապարհաշինարարության մեջ: Զարգանում է նաև տարբեր հանքարանների բնական քարապարներից պատրաստվող երեսպատման սալիկների արտադրությունը: Տուֆե սալիկները, գոյություն ունեցող արհեստական երեսպատման սալիկների համեմատությամբ, աչքի են ընկնում գերազանց կպչունությամբ՝ ցեմենտի խառնուրդի հետ, ապահովում են շենքերի ու կառուցվածքների գեղարվեստական ճաշակը: Եթե 1965 թվականին մինիստրությունը բնական քարանյութերից արտադրել է 24 հազ. քառ. մետր երեսպատման սալիկներ, ապա նախատեսվում է 1970 թվականին թողարկել ավելի քան 209 հազար քառ. մետր, որից 26 հազարը մարմարե: Տուֆե երեսպատման սալիկները թեթև ու երկարակյաց են և մեծ նշանակություն ունեն բարձրադիր և բազմահարկ շենքերի շինարարության համար:

Արագ աճում է տուֆե երեսպատման սալիկների պահանջն առանձնապես հանրապետության սահմաններից դուրս, մինչդեռ Հայաստանում դրանց արտադրությունը պակաս է: Երեսպատման սալիկների արտադրության նոր կարողությունների ստեղծման հաջողությունը զգալի չափով պայմանավորված է շինարարության համար նախատեսվող գործարանների հագեցմամբ՝ ալմաստե գործիք ունեցող բարձրարտադրողական սղոցող հաստոցներով, որոնց օգտագործման անվիճելի արդյունքներն արտահայտվել են շինանյութերի արդյունաբերության մինիստրության աշխատանքի պրակտիկայում:

Ինչպես ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, այնպես էլ շինա-



նյութերի արդյունաբերության առաջադրանքների հաջող կատարումը մեծ չափով պայմանավորված է մշտական և որակյալ կադրերով:

Հաշվի առնելով որակյալ բանվորական ուժի մեծ պահանջը, մինիստրությունը 1969 թվականին Արթիկում շահագործման հանձնեց պրոֆտեխնիկական ուսումնարանի 400 տեղանոց շենքը: Նախատեսվում է 1971—1972 թթ. Արարատում սկսել այդպիսի շենքի շինարարությունը: Այստեղ կադրեր կպատրաստվեն Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատի համար: Անհրաժեշտ է 400 տեղանոց ուսումնական շենք կառուցել Արվնիում՝ բյուրեղապակու գործարանի համար:

Մեր հանրապետության էկոնոմիկայի զարգացման բարձր մակարդակը և կապիտալ շինարարության աճող մասշտաբները շինանյութերի արդյունաբերության աշխատողների վրա մեծ պատասխանատվություն են դնում:

1970 թվականին Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատի կոմպլեքսի մեջ մտնող 1.500 հազար տոննա կարողությամբ ցեմենտի գործարանի շահագործմամբ (հաշվի առնելով Արարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատը) կլուծվի հանրապետությունը ցեմենտով ապահովելու պրոբլեմը, որի շնորհիվ կզարգանա շինանյութերի շինարարական արդյունաբերությունը. եթե ներկայումս Հայաստանում դեռ լրիվ չեն օգտագործվում տուֆի հանույթից գոյացող մնացորդները (դրանք այլ վայրեր են փոխադրվում որպես հումք), ապա Հրազդանի ցեմենտով մեկ մոտ լայնորեն կզարգանան թեթև բետոնե արտադրանքները, դետալները, հավաքովի տների կառուցվածքները: Ցեմենտը, բնական հանքապարների հետ զուգորդելով, հնարավորություն կընձեռի կենսագործել լայն ինդուստրացում, որի շնորհիվ հանրապետությունում կզարգանա ու կէժանանա շինարարությունը, զգալի չափով կավելանա կապիտալ աշխատանքների ծավալը:

Դեֆիցիտը ծածկելու և ոչ հանքային շինանյութերի արտադրության աճն ապահովելու համար 1970—1975 թթ. շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը Ջրաբերի կարծր պեմզայի հանքարանի բազայի վրա նախատեսել է կառուցել տեսակավորված խճաքարի և ավազի 1.550 հազ. խոր. մետր կարողության ջարդող-տեսակավորող գործարան: Այդ պեմզայից ստացված բետոնները լայնորեն կիրառվում են բնակելի, հասարակական և արդյունաբերական շենքերի կառուցվածքներում: Հանրապետության գործարաններում բարենպաստ և նախնական լարվածության կառուցվածքների ժամանակ հիմնականում կօգտագործվի կարծր պեմզայի արտադրանքը: Կիրովականի ոչ հանքային նյութերի տրեստի Սարալի հանքարանի և Աբովյանի շինանյութերի ու շինվածքների կոմբինատի Արամուսի բազալտի հանքարանի բազայի վրա նախատեսվում է կառուցել կտված բազալտի խճի արտադրության, տարեկան 200 հազ. խոր. մետր կարողություն ունեցող ջարդող-տեսակավորող գործարաններ:

Ոչ հանքային նյութերի վատորակությունը ցեմենտի մեծ ծախսեր է պահանջում· Շինանյութերի որակի բարելավմամբ կրճատվում են շինարարության ծախսերը, բարձրանում է երկարակեցությունը, փոխադրումների ժամանակ նվազում են կորուստները, որոնք հավասարազոր են արտադրանքի լրացուցիչ թողարկման՝ առանց նյութական և աշխատանքային ծախսերի: Դա հասարակական աշխատանքի տնտեսման կարևոր աղբյուրներից է:

Նախատեսված է 1972 թվականին Անի-պեմզայի կոմբինատում ավարտել 1 միլիոն խոր. մետր կարողության կտված պեմզայի ջարդող-տեսակավորող

գործարանի շինարարությունը: Անիի հանքարանի պեմզանյութերը հիմնականում նախատեսված են ցեմենտի հիդրավլիկ հավելումների համար: Ներկայումս Անի-պեմզա կոմբինատը պեմզանյութերով ապահովում է Անդրկովկասի գործարաններին: Հաշվի առնելով անդեզիտային արտադրանքի մեծ պահանջը, նախատեսվում է Անիի անդեզիտ-բազալտի՝ երկաթուղային կայարանին հարող հանքարանի գործնականորեն անսպառ պաշարների բազայի վրա գործող քարհանքի կարողությունը հասցնել տարեկան մոտ 150 հազար տոննայի և ընդլայնել Անի-պեմզայի կոմբինատը՝ անդեզիտային ալյուրի թողարկումը հասցնելով տարեկան մինչև 100 հազար տոննայի:

1970—1972 թթ. Արագածի պեռլիտի ձեռնարկությունում կավարտվի տարեկան 30 հազար խոր. մետր կարողությամբ պեռլիտի թրծման ու փըչման-ուռեցման արտադրամասի շինարարությունը: Նախատեսվում է 1970—1973 թթ. կառուցել ձուլված բազալտից արտադրանքների արտադրության (տարեկան 25 հազար տոննա կարողությամբ) գործարանը: Քարեձուլվածքի արտադրությունը կտնտեսի գունավոր ու սև մետաղները և ցածր ինքնարժեքով կավելացնի սպասարկման ժամկետները: Իսկ 1971—1973 թթ. Ջրվեժի գիպսացվող կավի հանքարանի բազայի վրա կկառուցվի տարեկան 200 տոննա կարողության գաջի գործարանը:

Բնական շինանյութերի նկատմամբ հանրապետության աճող պահանջմունքները բավարարելու համար 1970—1975 թթ. կընդլայնվի Արթիկ տուֆի հանույթը, շահագործման կհանձնվեն Պեմզաշենի, Աշտարակի քարհանքերը, Մարալիկի շինանյութերի ու շինվածքների կոմբինատը և տուֆի հանույթի մի շարք գործող քարհանքեր: 1972 թվականին հատովի տձև տուֆ քարի արտադրությունը կհասնի մոտ 1500, իսկ ձևավոր տուֆինը՝ 600 հազար խոր. մետրի, որը, շինարարական աղյուսի վերածելով, համարժեքային կլինի 750 և 300 միլիոն պայմանական աղյուսի: Բացի դրանից, նախատեսվում է 1971—1973 թթ. բնական հրաբխային խարամների բազայի վրա Կարմրաշենում (Թալինի շրջան) կառուցել խոշորացված խարամաբլոկների 120 հազար խոր. մետր կարողության գործարան, Ջրաբերի կարծր պեմզայի բազայի վրա՝ 120 հազար խոր. մետր կարողության տուֆաբլոկների գործարան, Նուռնուսում (Աբովյանի շրջան)՝ 120 հազար քառ. մետր կարողության արհեստական տուֆաբլոկների գործարան, Լենինականում՝ տուֆախճի և ավազի բազայի վրա 160 հազար խոր. մետր, իսկ Ղափանում՝ պղնձամոլիբդենային մնացորդների բազայի վրա 330 հազար խոր. մետր կարողությամբ գործարաններ:

Ծավալված բնակարանային-կենցաղային և արդյունաբերական շինարարության պայմաններում բնական քարերից երեսպատման սալիկների արտադրության կարգացումը հատուկ նշանակություն է ստանում: Դրանց արտադրությունն ավելացնելու համար հանրապետության շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը նախատեսում է ընդլայնել սղոցող արտադրամասերի և նոր օբյեկտների շինարարությունը՝ 1975 թվականին դրանց կարողությունը հասցնելով տարեկան 500 հազար խոր. մետրի:

Մարմարի հանքարանների բազայի վրա ընթացիկ տարվա վերջին կավարտվի և շահագործման կհանձնվի Նուռնուսի մարմարամշակման գործարանը՝ տարեկան 50 հազար քառ. մետր մարմարե և 20 հազար քառ. մետր գրանիտե սալիկների արտադրողականությամբ: Նախատեսվում է 1971—1973 թթ. Կիրովականում կառուցել բնական քարանյութերի սղոցման գործարան՝ 50 հազար քառ. մետր մարմարե և 20 հազար քառ. մետր գրանիտե



սալիկների կարողությամբ: Բացի դրանից, 1971—1973 թթ. Կիրովականում կկառուցվի արհեստական մարմարի գործարանը՝ 50 հազար քառ. մետր կարողությամբ: Այս գործարանների շահագործմամբ կբավարարվեն հանրապետության և երկրի շինարարական կազմակերպությունների պահանջները, ինչպես նաև կավելանա մարմարի արտադրանքների մատակարարումը:

Հանրապետության համար հիմնական պրոբլեմ է նաև ապակե տարայի արդյունաբերությունը, դրանց համար հումքային բազա են պեմզակվարցային, պեռլիտների և սիլիցիում պարունակող այլ հանքային ապարների գործնականորեն անսպառելի պաշարները: Ուսումնասիրությունը ցույց է տվել, որ դրանք լիակատար պիտանի են կանաչ, կիսասպիտակ ապակի ստանալու համար:

Ելնելով այն հանգամանքից, որ առաջիկա տարիներին մեծ չափերով աճելու են սննդարդյունաբերությունը և գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, անհրաժեշտ է համապատասխանաբար զարգացնել ապակետարայի արտադրությունը, ինչպես հանքային ջրերի, գինիների, կոնյակների, ոչ ալկոհոլային խմիչքների լցման, այնպես էլ պահածոների արդյունաբերության համար: Այդ նպատակով նախատեսվում է 1970—1971 թթ. ընդլայնել Արզնու ապակետարայի գործարանը, դրա կարողությունը տարեկան 30 միլիոնից (0,5 լիտրանոց) հասցնելով 110 միլիոն շշի:

1971—1972 թթ. շահագործման կհանձնվի Հոկտեմբերյանի ապակետարայի գործարանը՝ 180 միլիոն պուլիկների (0,5 լիտրանոց) և կոնյակների 20 միլիոն (0,5 լիտրանոց) շշերի տարողությամբ: Նախատեսված է 1970—1972 թ. ստեղծել ֆորստերիտային հրակայուն նյութերի նոր արտադրություն՝ Շորժայի մագնեզիտային սիլիկատների ապարի հանքարանի բազայի վրա: Շորժայի մագնեզիտների դունիտներից հնարավոր է պատրաստել ֆորստերիտային արտադրանքներ՝ նորմալ և ձևավոր աղյուսների ու հատուկ արտադրանքների (կանգնեցման փողակների, սիֆոնային աղյուսների և այլն) տեսքով, ինչպես նաև կաղապարման ավազներ. դրանք, որպես հրակայուն նյութ, կօգտագործվեն մետալուրգիական, ապակու և ցեմենտի արդյունաբերության մեջ:

Այս բոլոր նյութերի արտադրությունը զարգացնելիս հնարավորություն կընձեռվի նոր աստիճանի բարձրացնել շինարարական տեխնիկան և արդյունաբերության մյուս ճյուղերը, ստեղծել խոշոր չափերի թեթևաքաշ ինդուստրիալ արտադրանքներ ու կառուցվածքներ բազմահարկ շինարարության համար և ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերում կիրառվող արտադրանքի շատ տեսակներ:



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

Ս. Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ՀԿԿ Հրազդանի շրջկոմի առաջին քարտուղար

## ՎՍՏԱՀԵԼ, ԲԱՅՑ ՍՏՈՒԳԵԼ

Կուսակցական կյանքի լենինյան նորմերի հիմնական սկզբունքներից մեկը բոլոր օղակներում որոշումների կատարման ստուգման ապահովումն է։ Ելնելով մեր երկրի հետագա առաջընթացի, բնակչության նյութական ու կուլտուրական բարձր մակարդակ ապահովելու շահերից՝ կուսակցությունը խոշոր ու հրատապ խնդիրներ է առաջադրում տնտեսական և կուլտուրական շինարարության, հասարակական կյանքի բոլոր բնագավառներում։ Այդ խնդիրների հաջող լուծումը ենթադրում է բարձր կազմակերպվածություն և խիստ կարգապահություն։ Կուսակցական աշխատողների համար ղեկավար սկզբունք է Վ. Ի. Լենինի այն հայտնի դրույթը, թե կազմակերպվածությունը տասնապատկում է կուսակցության ուժը։ Կատարման ստուգումը հենց ուժերի այդպիսի տասնապատկման, կադրերի ճիշտ դաստիարակության հուսալի մեթոդ է։

Մարդկանց և գործի փաստական ստուգումը Վ. Ի. Լենինը համարում էր ողջ աշխատանքի և քաղաքականության մեխը։ Նա գտնում էր, որ խելացի ու հիմնավորված որոշումների և դիրեկտիվների ընդունումը, հիանալի խորհուրդներն ու ղեկավար ցուցումները դեռևս գործի կեսն են, հարկավոր է կյանքի կոչել դրանք, սահմանել անհրաժեշտ վերահսկողություն, որպեսզի խոսքը վերածվի գործի, որպեսզի կենտրոնական և տեղական մարմինների որոշումների փաստական վերահսկողությունն ու կատարման ստուգումը բոլոր ղեկավար կազմակերպությունների աշխատանքում դառնան գլխավորը։

Վ. Ի. Լենինը ղեկավարներից պահանջում էր սիստեմատիկ հսկողություն սահմանել հանձնարարությունների կատարման նկատմամբ։ Կազմակերպական աշխատանքի այդ փորձված մեթոդը մեր կուսակցությունը միշտ էլ հմտորեն է կիրառել, կատարելագործել նրա ձևերն ու մեթոդները և նշանակալից հաջողությունների հասել իր բազմահարուստ գործունեության բոլոր բնագավառներում։

ՍՄԿԿ Կենտկոմի 1969 թ. դեկտեմբերյան պլենումը բոլոր կուսկազմակերպություններից պահանջեց հետևողականորեն բարելավել արտադրության կուսակցական ղեկավարությունը, վերջ տալ անտնտեսվարությանը և շռայլությանը, բարձրացնել կարգապահությունը և կադրերի պատասխանատվությունը, վճռականորեն պայքարել բյուրոկրատիզմի և պահպանողականության դեմ, լրիվ օգտագործել արտադրության ռեզերվները։ Պլենումը միաժամանակ բոլոր տնտեսական կազմակերպություններին և արտադրության կազմակերպիչներին պարտավորեցրեց լիովին տիրապետել կառավարման արվեստին ու կառավարման գիտությանը, հետևողականորեն կատարելագործել և զարգացնել դրանք։ Ինքնըստինքյան հասկանալի է, որ միայն պատշաճ ձևով կազմակերպված վերահսկողության և կատարման ստուգման դեպքում կուսկազմակերպությունները հաջողությամբ կլուծեն առաջադրած այդ խնդիրները։

Հրազդանի շրջանն այսօր վեր է ածվում հանրապետության էներգետիկայի գլխավոր բազայի, իսկ Հրազդան և Չարենցավան քաղաքները՝ ժամանակակից արդյունաբերության կարևոր կենտրոնների։ Տարեցտարի ավելի ծանրակշիռ է դառնում շրջանի աշխատավորության ներդրումը մեր հանրապետության էկոնոմիկայի զարգացման մեջ։ Այդ ամենը խոշոր ջանքեր է պահանջել և պահանջում շրջանի կուսակցական, սովետական ու տնտեսական կազմակերպություններից։ Մեր ձեռք բերած հաջողությունները արդյունք են կազմակերպական լուրջ աշխատանքի, որի հիմքում դրված են կադրերի ճիշտ ընտրությունը, վերահսկողությունն ու կատարման ստուգումը։ Փաստերը դրանց պերճախոս վկայությունն են։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերն էլ մեզ համար խիստ կարևոր են։ Սակայն Հրազդանի պայմաններում անհնար է չխոսել շինարարության խոշոր ծավալների և դրա բացառիկ կարևոր նշանակության մասին։ Վերջին երկու տասնամյակում շինարարությունը հիմնովին վերափոխեց շրջանի էկոնոմիկան, ազգաբնակչության կյանքն ու կենցաղը։ Շինարարության հետ է կապված Հրազդան և Չարենցավան քաղաքների զարգացման հեռանկարային հարցերի լուծումը։ Մինչդեռ մեր շրջանում տարիներ շարունակ շինարարությունը ետ էր մնում, զգալի չափով կապիտալ միջոցներ չէին իրացվում, շատ որոշումներ մնում էին թղթի վրա։ Շրջանի կառույցներում տիրող վիճակը լրջորեն անհանգստացրեց նաև շրջանային կուսկազմակերպության 34-րդ կոնֆերանսին (1968 թ. հունվար)։ Կոնֆերանսը նշեց, որ շինարարական-մոնտաժային աշխատանքների անբավարար վիճակը հետևանք է բարձրորակ մասնագիտական և ղեկավար կադրերի բացակայության, աշխատանքի կազմակերպման ցածր մակարդակի։ Մի շարք շինարարական կազմակերպությունների ղեկավարներ հանդես են բերում անտնտեսվարություն և անպատասխանատվություն։ Կոնֆերանսը կուսշրջկոմի բյուրոյից պահանջեց արմատապես բարելավել կուսակցական ղեկավարությունը շինարարական-մոնտաժային աշխատանքների նկատմամբ, ուժեղացնել ամենօրյա օգնությունը կառույցներին և դրանց կուսկազմակերպություններին, կանխել շինարար բանվորների հոսունությունը, ամրապնդել շինարարական կազմակերպությունների ղեկավարությունը, անթերի կատարել կապիտալ ներդրումների և շինմոնտաժային աշխատանքների պլանները։

Կոնֆերանսի որոշումից հետո կուսշրջկոմը լուրջ ուշադրություն նվիրեց կատարման ստուգմանը։ ՀԿԿ Կենտկոմի օգնությամբ մեզ հաջողվեց զգալի չափով ամրապնդել շրջանի շինարարական և պատվիրատու կազմակերպությունների ղեկավարությունը։ Շրջանի կուսակցական և սովետական կազմակերպությունները համառ ջանքեր գործադրեցին կառույցներից բանվորական ուժի արտահոսքը կանխելու համար։ Կառույցներում մասսայականորեն ար-

մատավորվեց վարձատրության ակորդային ու պարգևատրման առաջավոր սիստեմը, իրականացվեցին բանվորների կուլտուր-կենցաղային պայմանները բարելավելու մի շարք միջոցառումներ, կարգավորվեց կառույցների նյութատեխնիկական մատակարարումը:

Ձեռնարկված միջոցների շնորհիվ ավելի քան 600 բարձրորակ շինարար-բանվորներ, որոնք տարիներ շարունակ գնում էին այլ աշխատանքի, վերադարձան իրենց գործին: Նրանցից շատերը հերոսական աշխատանք են կատարում: 1968 թ. շրջանի շինարարական կազմակերպությունները զգալի չափով բարելավեցին իրենց գործունեությունը, իսկ 1969 թ. և ընթացիկ տարվա առաջին ամիսներին հասան լուրջ հաջողությունների: Այսպես, 1969 թ. շրջանում կատարվեց 41,946 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանք, պլանով նախատեսված 37,381 հազարի դիմաց: Միայն անցած տարի կապիտալ ներդրումները կրկնապատկվեցին, կապիտալ շինարարության ծավալն ավելացավ 60 տոկոսով, իսկ հիմնական ֆոնդերի գործարկումը եռապատկվեց: Բնավ զարմանալի չէ, որ շրջանը 1969 թ. երեք եռամսյակ անընդմեջ հաղթող ճանաչվեց հանրապետական սոցիալիստական մրցությունում և նվաճեց ՀԿԿ Կենտկոմի ու ՀՍՍՀ Մինիստրների սովետի փոխանցիկ կարմիր դրոշը և առաջին կարգի մրցանակը: Իսկ շրջանի ամենախոշոր շինարարական կազմակերպությունը՝ «Հրազդանշին» տրեստը, այդ նույն տարում երեք անգամ արժանացավ ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշին և առաջին կարգի դրամական մրցանակին:

Հատկանշական է, որ շինարարական-մոնտաժային կազմակերպությունների գործունեության բարելավումը զուգորդվեց նրանց աշխատանքի՝ կուսակցական ղեկավարության ձևերի և մեթոդների հետագա կատարելագործման հետ: Առաջներում կուսշրջկոմի բյուրոն, օրինակ, տարվա ընթացքում շինարարական աշխատանքին վերաբերող տասնյակ հարցեր էր քննարկում, բազմաթիվ որոշումներ ընդունում, որոնք, սակայն, գործին քիչ էին օգնում: Այդ մեթոդից մենք հրաժարվեցինք: Կուսշրջկոմի աշխատողներն այժմ հաճախակի լինում են կառույցներում, մշտապես շփվում բանվորների, ինժեներատեխնիկական աշխատողների հետ, հետաքրքրվում նրանց կուլտուր-կենցաղային պայմաններով, օգնում ղեկավարներին և կոմունիստներին՝ լուծելու բազմաթիվ հարցեր, որոնք ծագում են ամեն օր, ամեն ժամ: Նրանք ակտիվորեն մասնակցում են խոշոր կառույցների դիսպետչերական խորհրդակցություններին և կուսակցական վերահսկողություն են իրականացնում ինչպես կուսշրջկոմի որոշումների, այնպես էլ այդ խորհրդակցություններում մշակված միջոցառումների իրականացման նկատմամբ:

ՍՄԿԿ XXIII համագումարը, Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) և դեկտեմբերյան (1969 թ.) պլենումները մեր երկրի զարգացման գլխավոր ուղղությունը համարեցին արտադրության արդյունավետության բարձրացումն ու ինտենսիվացումը: Այդ նշանակում է, որ, պետական պլանների կատարումից բացի, անհրաժեշտ է ապահովել ձեռնարկությունների տեխնիկական զինվածությունը և շահութաբերությունն այն հաշվով, որպեսզի ներդրված յուրաքանչյուր ռուբլին տա առավելագույն փոխհատուցում: Կուսշրջկոմը և շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպություններն այդ հարցերը մշտապես պահում են իրենց տեսադաշտում, հետամուտ լինում այդ առթիվ իրենց ընդունած որոշումների կատարմանը: Անցած տարի արդյունաբերական արտադրանքի ծավալը, 1966 թ. համեմատությամբ, շըր-



ջանում կրկնապատկվեց, արտադրական ծրագիրը կատարվեց 101,5 տոկոսով: Խրախուսելին այն է, որ արդյունաբերական ձեռնարկությունների մեծ մասն ընթանում է ինտենսիվ զարգացման ուղիով: Այսպես, 1969 թ. Չարենցավանի ներտաշ հաստոցների, «Կենտրոնական ձուլարան», գործիքաշինական, երկաթբետոնե կառուցվածքների գործարաններում արտադրանքի աճը հիմնականում ապահովվեց ի հաշիվ աշխատանքի արտադրողականության բարձրացման:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ շրջանի մի շարք արդյունաբերական ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպություններ հետևողականորեն են իրականացնում արտադրության կուսակցական ղեկավարությունը, ամենօրյա հսկողություն սահմանում պետական պլանների կատարման նկատմամբ, խորամուխ լինում գործերի վիճակի մեջ, բացահայտում ու վերացնում արտադրության նեղ տեղերը: Ահա մի ցայտուն օրինակ: Չարենցավանի ներտաշ հաստոցների գործարանի համբավը վաղուց արդեն դուրս է եկել մեր հանրապետության սահմաններից: Ձեռնարկության կոլեկտիվի արտադրած ներտաշ հաստոցները լայն ճանաչում էին գտել Միությունում և արտաքին շուկայում: Սակայն անցավ մի քանի տարի, և այդ հաստոցները հնացան, սկսեցին դժվարությամբ սպառվել թե՛ ներքին, թե՛ արտաքին շուկայում: Ստեղծված վիճակը լուրջ մտահոգություն պատճառեց գործարանի սկզբնական կուսկազմակերպությանը: ՀԿԿ Կենտկոմի և կուսշրջկոմի միջամտությամբ գործարան հրավիրվեցին ՍՍՀՄ հաստոցաշինության և գործիքաշինության մինիստրության համապատասխան գլխավոր վարչության պետն ու մի խումբ մասնագետներ: Բազմակողմանի ուսումնասիրություններից ու քննարկումներից հետո որոշվեց ձեռնարկությունը մասնագիտացնել ժամանակակից ավտոմատ կառավարման հաստոցների արտադրությամբ: Գործի դրվեց գործարանի կոնստրուկտորական միտքը: Ընթացիկ տարում արդեն լույս աշխարհ կգան նոր տիպի հաստոցների առաջին նմուշները:

Դժվար և բարդ խնդիր են ստանձնել գործարանի դիրեկցիան և կուսկազմակերպությունը, սակայն կարելի է չտարակուսել, որ նոր սկսված գործը կպսակվի հաջողությամբ, և ձեռնարկության փառապանծ կոլեկտիվն առաջվա նման նորից կընթանա տեխնիկական առաջադիմության ավանգարդում:

Ստուգման և վերահսկողության գլխավոր նպատակը տեղում գործի պատշաճ կազմակերպումն է, սխալների շտկումը, կարգապահության ամրապնդումը: Դա կատարման ստուգման կազմակերպման լենինյան պահանջներից է: Գործի նկատմամբ այդպիսի մոտեցում ցուցաբերեցին Չարենցավանի գործիքաշինական գործարանի սկզբնական կուսկազմակերպությունը և կուսշրջկոմը: Երիտասարդ և ընդարձակվող գործարանի կոլեկտիվը 1968—69 թթ. արտադրանքի զգալի աճ ապահովեց, սակայն անցած տարի չկատարեց իրացման պլանը՝ երկրին պակաս տալով 267 հազար ռուբլու արտադրանք: Պետական պլանների կատարման գործում ստեղծված դժվարությունները (նյութատեխնիկական անկանոն մատակարարում, արտադրության անբավարար կազմակերպում, պետական պլանների կատարման նկատմամբ առանձին ղեկավար աշխատողների կողմից դրսևորվող անպատասխանատու վերաբերմունք) լրջորեն անհանգստացրին գործարանի սկզբնական կուսկազմակերպությանը: Կուսակցական ժողովներում և բյուրոյի նիստերում մի քանի անգամ քննարկվեցին գործարանում տիրող վիճակը. առանձին բաժինների ու ծառայությունների պետեր, որոնք մեղավոր էին այդ գործում, ենթարկվեցին պատասխանատվության: Պետական պլանների կատարման, արտադրամասերի, տեղամասերի,

բաժինների ու ծառայությունների աշխատանքի բարելավման համար, կուսկազմակերպությունը միաժամանակ մշակեց և իրականացրեց մի շարք միջոցառումներ։ Վիճակը, սակայն, չշտկվեց, քանի որ թերությունների պատճառները բավական խոր էին և դրանց վերացումը մասամբ կուսկազմակերպության ուժերից վեր էր։

Բազմակողմանի ուսումնասիրություններից հետո, կուսշրջկոմի բյուրոն 1969 թ. հոկտեմբերին քննարկեց ձեռնարկության դիրեկցիայի հաշվետվությունը և, պետական պլանների կատարումը ձախողելու, լիբերալ վարքագիծ, անպատասխանատվություն և թերությունների նկատմամբ հաշտվողականություն ցուցաբերելու համար, կուսակցական խիստ տույժի ենթարկեց գործարանի դիրեկտոր Ա. Տեր-Ղազարովին և գլխավոր ինժեներ Վ. Մաթևոսյանին։ Այդ որոշումն արժանացավ գործարանի կուսկազմակերպության և ողջ կոլեկտիվի միահամուռ հավանությանը։ Հարց բարձրացրինք ՍՍՀՄ հաստոցաշինության և գործիքաշինության մինիստրության առջև՝ 1970 թ. ձեռնարկությունն ապահովելու անհրաժեշտ պատվերներով և մետաղով։ Բարելավվեց կոոպերացված մատակարարումը։ Ընթացիկ տարվա առաջին ամիսների արդյունքները ցույց են տալիս, որ կուսշրջկոմի և գործարանի սկզբնական կուսկազմակերպության ջանքերն ապարդյուն չեն անցնի։

Վերահսկողության և կատարման ստուգման փորձված մեթոդ է աշխատանքի արդյունքների քննարկումը։ Ճիշտ է, մեր շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների և կառույցների սկզբնական կուսկազմակերպությունները պարբերաբար քննարկում էին եռամսյակի, կիսամյակի, տարվա արդյունքները, սակայն լրջորեն խորամուխ չէին լինում արտադրության որակական ցուցանիշների մեջ։ Այժմ կուսկազմակերպությունները հաճախակի քննարկում են նաև արտադրանքի որակի, ինքնարժեքի իջեցման, ձեռնարկության շահութաբերության, նոր տեխնիկայի արմատավորման, կարգապահության, աշխատողների պատասխանատվության բարձրացման հարցերը, որոնք խնամքով նախապատրաստվում են և բուռն հետաքրքրություն առաջ բերում կոմունիստների շրջանում։ «Հրազդանշին» տրեստի կուսակցական կոմիտեն, օրինակ, անցյալ տարվա վերջերին, բազմակողմանի ուսումնասիրություններից հետո կուսժողովում քննարկման դրեց շինարարական-մոնտաժային աշխատանքների որակի հարցը։ Պարզվեց, որ տրեստի №№ 1 և 3 շինվարչությունների, Հայէլեկտրամոնտաժի վարչության և Հայսանտեխմոնտաժի տեղամասի ղեկավարները, աշխղեկները, տրեստի ինժեներա-տեխնիկական անձնակազմը լուրջ ուշադրություն չէին դարձնում շինմոնտաժային աշխատանքների, հատկապես բնակարանային շինարարության որակին։ Իսկ տրեստի արտադրական իրերի կոմբինատի և երկաթբետոնե կառուցվածքների գործարանի ղեկավարների և ինժեներա-տեխնիկական աշխատողների մեղքով ցածր էր թողարկվող բետոնի, շաղախի, ծածկի պանելների որակը։ Կուսկազմակերպության ժողովի որոշմամբ տրեստում սկսեցին գործել տեխմինիմումի դասընթացներ, բարձրացվեց շինվարչությունների պետերի և գլխավոր ինժեներների անձնական պատասխանատվությունն աշխատանքի որակը բարելավելու գործում։

Սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության նկատմամբ իրականացվող վերահսկողության ներգործուն մեթոդներից մեկը նրանց հաշվետվությունների քննարկումն է շրջկոմի բյուրոյում։ Կուսշրջկոմը լայնորեն կիրառում է նաև այդ մեթոդը։ Մենք համոզվել ենք, որ հիշյալ քննարկումները մեծ առավելություններ ունեն։ Այդպիսով, հնարավորություն է լինում հանգա-



մանորեն ուսումնասիրել և ըստ արժանվույն գնահատել կուսկազմակերպության ողջ գործունեությունը, արժեքավորել աշխատանքի կուտակված դրական փորձը, ամբողջական պատկերացում ունենալ իրավիճակի մասին՝ տվյալ կազմակերպությունում և կոլեկտիվում։

Ժամանակակից պայմաններում բացառիկ կարևոր է որոշումների նախապատրաստման և դրանց կատարման ստուգման գիտական կազմակերպումը։ Այդ նշանակում է, որ որոշումների մշակումը և կատարման կազմակերպումը պետք է հիմնվեն ճշմարտացի փաստերի ու տվյալների, սկզբունքային և օբյեկտիվ վերլուծության վրա։ Ցավոք, դեռևս նկատվում են դեպքեր, երբ կատարման ստուգման ընթացքում, իրերի իսկական վիճակը վերլուծելու փոխարեն, առանձին աշխատողներ դրսևորում են մակերեսայնություն, իրենց եզրակացությունները երբեմն անում են՝ հիմք ընդունելով պատահական փաստերը։ Անհրաժեշտ է մշտապես հիշել Վ. Ի. Լենինի խորհուրդն այն մասին, թե փաստերն անառարկելի ապացույցներ են, եթե դրանք վերցված են իրենց ամբողջության և կապի մեջ։

Սկզբունքային նշանակություն ունի նաև լենինյան այն պահանջը, որ կատարման ստուգումը պետք է գլխավորեն հենց իրենք՝ կազմակերպությունների ղեկավարները, և ոչ թե երկրորդական աշխատողները, որ այն պետք է կրի սիստեմատիկ և ոչ թե էպիզոդիկ բնույթ։

Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է, որ սկզբունքային քաղաքականությունը միակ ճիշտ քաղաքականությունն է։ Նա խորհուրդ էր տալիս՝ ...անդադար ձգտել այն բանին, որպեսզի գործով ապահովվի յուրաքանչյուրի անձնական պատասխանատվությունը որոշակի, խիստ և ճշգրիտ կերպով նշված աշխատանքի կամ աշխատանքի մի մասի համար (տե՛ս Երկեր, հ. 30, էջ 161)։ Հրազդանի կուսշրջկոմը և շատ սկզբնական կուսկազմակերպություններ հենց այդպիսի դիրքերից են պայքարում սոցիալիստական սեփականության հափշտակումների և վատնում-յուրացումների երևույթների դեմ, կատարման ստուգման ճիշտ կազմակերպումը ծառայեցնում այդ նպատակին։ Ընդ որում, մենք ելնում ենք այն բանից, որ ազնիվ, վեհ գաղափարներին նվիրված կոմունիստն ու ղեկավար աշխատողը, ում համար կուսակցության ծրագիրը, կանոնադրությունն ու սովետական օրենքը սրբություն են, երբեք չի կարող հաշտվել մեր հասարակության առողջ և կենսունակ օրգանիզմում տեղ գտած առանձին խոցերի, դատապարտելի երևույթների հետ։

Դեռևս 1968 թ. շրջանի բոլոր սկզբնական կուսկազմակերպություններում, իսկ հետագայում՝ նաև կուսշրջկոմի բյուրոյում և պլենումում քննարկվեց սոցիալիստական սեփականության հափշտակումների դեմ կուսկազմակերպությունների պայքարն ուժեղացնելու հարցը։ 1969 թ. կուսշրջկոմի բյուրոն բազմիցս անդրադարձավ սոցիալիստական սեփականության պահպանության հարցերին, լսեց մի շարք կազմակերպությունների և վարչական մարմինների հաշվետվություններ։ Մենք ելնում ենք Վ. Ի. Լենինի այն պահանջից, որ պետք է ստուգել մարդկանց պիտանիությունը, անհաշտ պայքար մղել բոլոր նրանց դեմ, ովքեր՝ «Հոգ չեն տանում այն մասին, որպեսզի խնայեն իրենց հանձնված կոպեկը, և չեն աշխատում այն 2 կոպեկ դարձնել...» (Երկեր, հ. 33, էջ 264)։ Այս տեսակետից էլ միանգամայն օրինական է, երբ կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունների օգնությամբ, վերանայեց շրջանի մի շարք հիմնարկությունների ու ձեռնարկությունների ղեկավար աշխատողների կազմը՝ այն ամրապնդելով առավել գործունյա և ստուգված կադրերով, որոնք,

իրոք, ի վիճակի են պայքարելու յուրաքանչյուր կոպեկի համար, կյանքի կոչել կուսակցության դիրեկտիվները, անթերի կատարել ընդունված որոշումները։

1968—1969 թթ. ամրապնդվեց «Հրազդանշին» տրեստի, նրա մի քանի շինվարչությունների, Միկրոշրջանի գործարանի, Հրազդանի և Չարենցավանի տրիկոտաժի ու ձեռնոցների ֆաբրիկաների մասնաճյուղերի, Չարենցավանի և Լուսակերտի կոմունալ սպասարկման բաժինների, Ջրառատի, Հրազդանի, Ալափարսի և Արզականի սովխոզների, Հրազդան և Չարենցավան քաղաքների, շրջկոոպի և այլ կազմակերպությունների ղեկավարությունը։ Իսկ տեղական սովետների ընտրություններից հետո զգալիորեն բարելավվեց նաև շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային սովետների գործկոմների ղեկավար աշխատողների կազմը։ Սոցիալիստական սեփականությունը հափշտակողների նկատմամբ անսկզբունքայնություն և լիբերալ վերաբերմունք ցուցաբերելու համար՝ մի շարք ղեկավար աշխատողներ ենթարկվել են կուսակցական պատասխանատվության, իսկ սկզբնական կուսկազմակերպությունների երկու քարտուղարներ ետ են կանչվել իրենց պարտականությունների կատարումից։

Սոցիալիստական սեփականության հափշտակումների և, ընդհանրապես, հանցագործությունների դեմ պայքարի գործում անհրաժեշտ է մշտապես առաջնորդվել Վ. Ի. Լենինի այն հայտնի դրույթով, որ կարևորը պատժի անխուսափելիությունն է։ Կուսշրջկոմի բյուրոն քննարկել է նաև շրջանի դատախազության և ներքին գործերի շրջանային բաժնի ու նրա բաժանմունքների հաշվետվությունները՝ սոցիալիստական սեփականության պահպանության ապահովման և պետական ունեցվածքի հափշտակումների դեմ կիրառվող պատժողական քաղաքականության մասին։ Այդ գործում թույլ տրված սխալների համար կուսակցական խիստ պատասխանատվության են ենթարկվել շրջանային դատախազի օգնական Վ. Ղազարյանը, դատախազության քննիչ Վ. Համզյանը, ներքին գործերի Չարենցավանի բաժանմունքի պետ Կ. Բաղյանը, միկրոշրջանի բաժանմունքի նախկին պետ Վ. Ղուկասյանը։ Ցավոք, հարցի բազմակի քննարկումներից հետո էլ շրջանի վարչական օրգանների պայքարը սոցիալիստական սեփականության հափշտակումների դեմ դեռևս անբավարար է։

Ինչ խոսք, բուռն թափով զարգացող արդյունաբերությունը և հսկայական ծավալ ստացած շինարարությունը կլանել են ո՛չ միայն գյուղերում եղած բանվորական ուժի մի մասը, այլև գյուղատնտեսության բնագավառի շատ աշխատողների։ Տարեցտարի անխուսափելիորեն զգալի չափով հողեր են դուրս գրվում շինարարության և այլ նպատակների համար, սակայն այդ չի նշանակում, թե գյուղական արտադրությունը զարգացման հեռանկարներ չունի շրջանում։ Պարզապես ստեղծված դժվարությունների հաղթահարման ուղիները դեռևս չենք գտել։ Չնայած որ կոլտնտեսությունների և սովխոզների տրամադրության տակ կան բավարար քանակի գյուղատնտեսական մեքենաներ ու մեխանիզմներ, սակայն ջրովի հողերի զգալի տարածություններ անտնտեսվար են օգտագործվում։ Այդ հողերի արդյունավետ օգտագործման և հանրային հոտի կերի բազայի ամրապնդման վերաբերյալ շրջանի կուսակցական և սովետական կազմակերպություններն ընդունել են բազմաթիվ որոշումներ, սակայն դրանք չեն ամրապնդել կենդանի կազմակերպական աշխատանքով և թողել են անկատար։

Եթե ընթացիկ տարում շրջանի կուսակցական, սովետական, գյուղատնտեսական կազմակերպություններին հաջողվի ռեալ քայլեր կատարել ջրովի



հողերի ռացիոնալ օգտագործման և կերի կայուն բազայի ստեղծման ասպարեզում, ապա գյուղատնտեսական արտադրության հաջողություններն առկա կլինեն։ Այդ հարցերն են այժմ մտահոգում մեր գյուղական կազմակերպություններին, բոլոր կոմունիստներին ու աշխատողներին։

Հարցի արմատական լուծումը, սակայն, ինդուստրիալ եղանակով գյուղատնտեսական արտադրության կազմակերպումն է։ Դա շրջանի կուսակցական, սովետական և գյուղատնտեսական կազմակերպություններից պահանջում է մշտական ուշադրության կենտրոնում պահել գյուղատնտեսական արտադրության հետագա ինտենսիվացման, դրա կոմպլեքսային մեքենայացման, քիմիացման և մելիորացման հարցերը։ Պահանջվում է նաև որոշակի կապիտալ ներդրումներ, որոնց առջև մեր հանրապետական պլանային և գյուղատնտեսական կազմակերպությունները չպետք է կանգ առնեն։ Մենք մեր ուշադրությունը բևեռել ենք այդ հարցերի լուծման վրա։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի դեկտեմբերյան (1969 թ.) պլենումը մեկ անգամ ևս ընդգծեց, որ կուսակցությունը կադրերի նկատմամբ իր վերաբերմունքը կառուցում է վստահության վրա, հենվում է, ամենից առաջ, նրանց բարձր գիտակցականության և պատասխանատվության վրա։ Վստահել, բայց ստուգել։ Այդպիսին է մեր կուսակցության պահանջը, այդպիսին է մեր կոմունիստների կամքը։

ՍՄԿԿ XXIII համագումարն ընդգծեց կուսակցական որոշումների և դիրեկտիվների վերահսկողությունը և կատարման ստուգումը հստակ կազմակերպելու անհրաժեշտությունը։ Դրանք կուսակցության կազմակերպական դերը բարձրացնելու, կադրերին ճիշտ դաստիարակելու անփոխարինելի պայման են։ Յուրաքանչյուր կուսկազմակերպության մարտունակությունը, կոլեկտիվի կյանքի բոլոր կողմերի նկատմամբ նրա ազդեցությունը պայմանավորված է այն բանով, թե նա ինչպես է կազմակերպում, վերահսկում և կատարում որոշումները։



Ռ. Հ. ՋԱՔՈՅԱՆ

ՀԿԿ էջմիածնի շրջկոմի առաջին քարտուղար

# ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԳՐԱՎԱԿԱՆԸ

Գործի հաջողության գրավականն այն է, թե ո՞ւմ է հանձնարարված այն, գործի գլուխ կարգվածն ի՞նչ գիտելիքներ ու փորձ ունի։ Այս տեսակետից կադրերի ճիշտ ընտրությունը և տեղաբաշխումը չափազանց կարևոր է։ Իմանալ յուրաքանչյուր կոմունիստի, աշխատողի կարողությունները, գտնել նրանց ճիշտ տեղը կյանքում, այնքան էլ հեշտ չէ։ Չէ՛ որ յուրաքանչյուր մարդ ունի իր նախասիրությունները, ինչ-որ տեղ օգտակար լինելու իր ունակությունները, աշխատանքի այն բնագավառը, որը ո՛չ միայն սիրում է, այլև ապրում նրանով։ Սակայն քիչ չեն դեպքերը, երբ հակառակն է տեղի ունենում. մարդիկ ստանձնում են որևէ տնտեսության, հիմնարկության, ձեռնարկության կամ կազմակերպության ղեկավարումը, նշանակվում այս կամ այն աշխատանքի՝ հստակ պատկերացում չունենալով իրենց խնդիրների մասին։ Նման պարագայում գործի ձախողումն անխուսափելի է, որը ցույց է տալիս, թե ինչպես կուսկազմակերպությունները կադրերի ընտրության նկատմամբ երբեմն ցուցաբերում են թեթևակի մոտեցում։ Պետք է խոստովանել, որ մեր շրջանի կուսկազմակերպությունների աշխատանքում տեղ էին գտել հենց այդ կարգի թերություններ։ Նկատվում էին տնավարության, կադրերի նկատմամբ թույլ պահանջկոտության, նրանց ո՛չ-հիմնավորված տեղաշարժերի, երբեմն էլ՝ անհարկի առաջքաշման փաստեր։

Վերջին տարիներս կուսակցության էջմիածնի շրջկոմը լրջությամբ զբաղվեց վերոհիշյալ թերությունները ու բացերը վերացնելու, կուսակցական, սովետական ու տնտեսական կազմակերպությունների ղեկավարությունն ամրապնդելու, արտադրության ճյուղերը գործին գիտակ կադրերով ապահովելու հարցերով։ Մեծ աշխատանք կատարվեց կոմունիստների, բոլոր կադրերի նկատմամբ պահանջկոտությունն ուժեղացնելու և արտադրության մեջ նրանց ավանգարդային դերն ապահովելու համար։

Մինչև 1963 թվականը, այսինքն՝ արտադրական վարչությունների ստեղծվելը, մեր շրջանի 29 կոլտնտեսությունների և 9 սովխոզների ղեկավարների որակական կազմը մոտավորապես այսպիսին էր. բարձրագույն կրթություն ունեին կոլտնտեսությունների 18 նախագահներ և սովխոզների 7 դիրեկտորներ։ Կոլտնտեսային և սովխոզային միջին ղեկավար անձնակազմից՝ բրիգադավարներից, ֆերմաների վարիչներից, բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթություն ուներ 35 տոկոսը։ Այն ժամանակ դա մեծ առաջընթաց



էր։ Բայց այսօր այդ կարո՞ղ է բավարար համարվել, երբ ամեն տարի մեր երկրի բարձրագույն ուսումնական հաստատությունները հազարավոր որակյալ մասնագետներ են տալիս գյուղին։ Իհարկե, ո՛չ։ Եվ զարմանալի չէ, որ մենք սկսեցինք կուսակցական և տնտեսական ղեկավար աշխատանքի առաջ քաշել հատկապես բարձրագույն կրթություն ունեցող երիտասարդ մարդկանց։ Ինչ խոսք, բանը միայն այն չէ, որ նրանք հասկանան գյուղատնտեսական արտադրությունը, ծանոթ լինեն ժամանակակից գիտության նվաճումներին, կարողանան տնտեսությունը վարել գիտականորեն, լինեն քաղաքականապես հասուն։ Նրանք պետք է կարողանան նաև կազմակերպել, մոբիլիզացնել գյուղական աշխատավորության ուժերը, առաջ տանել նրանց։

Հասկանալի է, որ պետք է ընտրվեին ու առաջ քաշվեին հեղինակություն վայելող մարդիկ, այնպիսի կոմունիստներ, որոնք իրենց գործարար ու քաղաքական հատկանիշներով բարձր են կանգնած մյուսներից։ Չէ՛ որ տնտեսության ղեկավարը, կուսկազմակերպության քարտուղարը նաև դաստիարակ է։ Կոմունիստների, աշխատավորների ուժերը շրջանի առջև դրված խնդիրների իրագործմանը նպատակամղելու համար, առաջին հերթին, հարկավոր են այդպիսի ունակ դաստիարակ-ղեկավարներ, որոնք իրենց վստահված բնագավառը լավ են ղեկավարում, կուսկազմակերպություններում, տնտեսություններում, հիմնարկ-ձեռնարկություններում ամուր հիմքերի վրա են դնում դաստիարակչական և կազմակերպական աշխատանքները, մարդկանց կոփում հասարակական ակտիվ աշխատանքում։

Բազմաթիվ օրինակներ կարելի է բերել, երբ շրջկոմը տվյալ աշխատանքի համար չի հաստատել առանձին բրիգադավարների, ֆերմաների վարիչների, ինժեներա-տեխնիկական աշխատողների։ Նրանց փոխարեն առաջ են քաշվել այնպիսի մարդիկ, որոնք կարող են արտադրությունը զարգացնել։ Եվ բնավ պատահական չէ, որ կարճ ժամանակամիջոցում զգալիորեն բարելավվեց ո՛չ միայն տնտեսությունների նախագահների ու դիրեկտորների, այլև միջին ղեկավար աշխատողների որակական կազմը։ 1970 թվականի հունվարի 1-ի տվյալներով կոլտնտեսությունների 30 նախագահներից 24-ը և սովխոզների 10 դիրեկտորներից 9-ը ունեն բարձրագույն կրթություն։ Շրջանի տնտեսությունների 25 բրիգադավարներ ու ֆերմաների վարիչներ նույնպես բարձրագույն կրթությամբ մասնագետներ են։ Կոլտնտեսային և սովխոզային միջին ղեկավար անձնակազմի 70 տոկոսն ունի միջնակարգ-մասնագիտական կրթություն կամ հեռակայում է բուհերին։

Այս միջոցառումները դրական արդյունք տվեցին։ Շրջանում վերջին տարիներին լուրջ տեղաշարժ կատարվեց ժողովրդական տնտեսության գրեթե բոլոր ճյուղերում։ Անցյալ տարի էջմիածնի աշխատավորներն իրենց արժանի տեղը գրավեցին սովետական պետության ստեղծող Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ծավալված սոցիալիստական մրցության մեջ։ Հնգամյակի չորրորդ տարում գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը, 1966 թվականի համեմատությամբ, ավելացավ 20 տոկոսով։ Կոլտնտեսությունները և սովխոզները կատարեցին ու գերակատարեցին պետությանը բանջարեղեն, բոստանային կուլտուրաներ, անասնապահական մթերքներ վաճառելու և հանձնելու պլանները։

Մեծ առաջնորդի ծննդյան 100-ամյա հոբելյանի առթիվ շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների և շինարարական կազմակերպությունների աշխատողների ծավալած սոցիալիստական մրցությունը ևս նշանավորվեց մեծ

հաջողություններով։ Նրանք կատարեցին ու գերակատարեցին արդյունաբերական արտադրանքի թողարկման ու իրացման պլանային առաջադրանքները։

Թե լավագույն կադրերն ինչպիսի դեր կարող են խաղալ արտադրությունը բարձրացնելու գործում, վկայում են հետևյալ փաստերը։ Լենուղու և Վ. Քյուլանլուի կոլտնտեսություններն իրենց հնարավորություններով և հողակլիմայական պայմաններով չէին զիջում մյուս տնտեսություններին, սակայն արտադրության գրեթե բոլոր ճյուղերով ամեն տարի թերակատարում էին իրենց առաջադրանքները։ Կուսակցության շրջկոմը հանգամանորեն ուսումնասիրեց այդ տնտեսությունների վիճակը։ Ստուգման արդյունքները քննարկվեցին շրջանային կոմիտեում։ Պարզվեց, որ լուրջ թերություններ կան կադրերի հետ տարվող դաստիարակչական աշխատանքում. ընկել էր ընդհանուր կարգապահությունը։ Դեռ ավելին, իրենց պարտականությունները վատ էին կատարում ո՛չ միայն կոմունիստները, այլև այդ տնտեսությունների առանձին ղեկավար աշխատողներ։ Կուսկազմակերպությունների թույլ վերահսկողության և տնտեսությունների ղեկավարների անբավարար աշխատանքի հետևանքով տեղի էին ունեցել լուրջ խախտումներ։

Շրջանային կոմիտեն վերոհիշյալ կոլտնտեսությունների կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց աշխատանքային կարգապահության, կադրերի ընտրության ու նրանց հետ կատարվող աշխատանքի հարցերի վրա։ Միջոցառումներ մշակեցինք քաղաքական-մասսայական և դաստիարակչական աշխատանքի դրվածքը բարելավելու համար։ Շրջկոմը հարկադրված դիմեց նաև կազմակերպական միջոցառումների. որոշեցինք ուժեղացնել ինչպես կոլտնտեսությունների, այնպես էլ դրանց սկզբնական կուսկազմակերպությունների ղեկավարությունը։ Կուսշրջկոմի խորհրդով Վ. Քյուլանլուի կոլտնտեսականները վարչության նախագահի պարտականություններից ազատեցին Մ. Ջամալյանին, իսկ Լենուղի գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ Ա. Գևորգյանը տեղափոխվեց այլ աշխատանքի։ Վ. Քյուլանլուի կոլտնտեսությունում վարչության նախագահ երաշխավորվեց կուսակցական աշխատանքի երկարամյա փորձ ունեցող, Երևանի գյուղատնտեսական ինստիտուտի շրջանավարտ Վ. Հայրապետյանը, իսկ Լենուղի գյուղի կոլտնտեսությունում՝ երիտասարդ կոմունիստ Ս. Սահակյանը։ Կոլտնտեսականներն առաջադրված թեկնածուներին ընտրեցին վարչությունների նախագահներ։ Սկզբնական կուսկազմակերպություններում քարտուղարներ ընտրվեցին արտադրությունում աշխատող, առաջավոր, ազնիվ ու սկզբունքային կոմունիստներ։

Կոլտնտեսությունների վարչությունների նոր նախագահները և կուսկազմակերպությունների նորընտիր քարտուղարները համառ, տևական կազմակերպական ու դաստիարակչական աշխատանք ծավալեցին։ Նրանք կոլտնտեսային արտադրության բոլոր տեղամասերն ամրապնդեցին բարեխիղճ ու գործունյա կոմունիստներով, բարձրացրին աշխատողների պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Յուրաքանչյուր աշխատողի համար հայտնի դարձան իր անելիքն ու խնդիրը։ Այս ամենն առաջ բերեց աշխատանքային վերելք, նպաստեց արտադրության զարգացմանը։ Վ. Քյուլանլուի կոլտնտեսությունը գերակատարեց հնգամյակի չորրորդ տարվա պլանային առաջադրանքները։ Խաղողի արտադրությունը տնտեսությունում, նախորդ տարիների համեմատությամբ, ավելացավ 30 տոկոսով, կատարվեցին ու գերակատարվեցին պետությանը բանջարեղենի, հացահատիկի, ձվի և գյուղատնտեսական մյուս մթերքների վաճառքի պլանները։



Կոլտնտեսությունն առաջավորներին հասցնելու համար իրենց ջանքն ու եռանդը չխնայեցին այգեգործ-օղակավարներ, կուսանդամներ Սեդա Պետրոսյանը, Յ. Կիրակոսյանը, Բ. Մուրադյանը և շատ ուրիշներ։ Կոլտնտեսության թռչնաբուծական ֆերման տարիներ շարունակ ետ էր մնում։ Շուտով այդ ֆերմայի վարիչ նշանակվեց կոմունիստ Ս. Այվազյանը։ Նա կարճ ժամանակամիջոցում այնտեղ պատշաճ կարգ ու կանոն սահմանեց։ 1969 թվականին տնտեսությունն արտադրեց ավելի քան 30 տոննա միայն հնդկահավի միս, գերակատարեց պետությանը ձվի վաճառքի պլանը և ամենակարևորը՝ նախկինում վնասով աշխատող թռչնաբուծական ֆերման, նախորդ տարվա համեմատությամբ, 50 հազար ռուբլով ավելի եկամուտ բերեց։ Իսկ տնտեսությունը մեկ տարվա ընթացքում կրկնապատկեց դրամական եկամուտները։

Շրջանում գովեստով են խոսում Լենուղի կոլտնտեսության կոմունիստ այգեգործներ Գ. Կարապետյանի, Ջ. Վարդանյանի, դաշտավարական բրիգադայի բրիգադավար Լ. Սահակյանի, թռչնաբուծական ֆերմայի վարիչ Կ. Ալեքսանյանի մասին։ Աշխատանքի մեջ համարձակ, սկզբունքային, նորի ու առաջավորի համար պայքարող մարդիկ են նրանք։ Ո՛չ միայն իրենք են աշխատում անձնուրացաբար, այլև գիտեն օգնել մյուսներին։ Եվ այդպիսի կոմունիստ առաջավորներն ստեղծեցին աշխատանքային այն խանդավառությունը, որը լուրջ հաղթանակ բերեց։ Հնգամյակի չորրորդ տարում կոլտնտեսությունը պետությանը պլանից դուրս վաճառեց մեծ քանակությամբ մթերքներ։ Այդ հաջողությունների շնորհիվ տնտեսության դրամական եկամուտը, նախորդ տարվա համեմատությամբ, աճեց 40 տոկոսով և կազմեց 563 հազար ռուբլի։

Խոսելով կադրերի և արտադրության մեջ նրանց ունեցած դերի մասին, չի կարելի չհիշել Աղավնատան կոլտնտեսության փառաբանված բրիգադավար, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, սոցիալիստական աշխատանքի հերոս Ռոզա Ավագյանին, Շահումյանի կոլտնտեսության օղակավարուհի, սոցիալիստական աշխատանքի հերոս Արծվիկ Հարությունյանին, նույն կոլտնտեսության բրիգադավար, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, Լենինի շքանշանակիր Ջիվան Գրիգորյանին, № 3 սովխոզի բրիգադավար, սոցիալիստական աշխատանքի հերոս Գաբրիել Թամազյանին և շատ ուրիշների։ Նրանք տասնամյակներ շարունակ արտադրության մեջ ընթանում են ավանգարդում, հմտությամբ գլխավորում տնտեսության իրենց վստահված ճյուղերը, աշխատանքում օրինակ ծառայում անկուսակցականներին, երիտասարդությանը։

«Կադրերի ընտրությունն ու առաջքաշումը,— ասված է ՍՄԿԿ XXIII համագումարին Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի տված զեկուցման մեջ,— անբաժանելի են ամենօրյա վերահսկողությունից այն բանի նկատմամբ, թե աշխատողներն ինչպես են կատարում կուսակցության ու կառավարության դիրեկտիվները, թե նրանք ինչպես են ապահովում իրենց հանձնարարված տեղամասի ղեկավարումը։ Կատարման լավ ստուգումը կադրերի ճիշտ դաստիարակման կարևորագույն միջոցն է։ Այն պետք է անցկացվի սիստեմատիկորեն, օգնի վերացնելու սխալները, գտնելու առաջադրված խնդիրների լավագույն, առավել ճիշտ լուծումներ» (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, 1967 թ., էջ 119)։

Այս առումով ՀԿԿ էջմիածնի շրջկոմի միջոցառումներն արժանի են ուշադրության։ Շրջանային կոմիտեի բյուրոյի որոշմամբ սահմանվել է այնպիսի կարգ, որ արտադրության ղեկավար կադրերը յուրաքանչյուր տարվա վերջում կամ շրջկոմի սահմանած ժամկետներում հաշիվ են տալիս իրենց կոլեկտիվին,

սկզբնական կուսկազմակերպությանը, ապա՝ շրջանային կոմիտեի բյուրոյին։ Ինքնահաշվետվության այս ձևը նրանց դաստիարակության կարևոր միջոց է։ Այն հնարավորություն է ընձեռում նախ՝ ծավալել գործնական և սկզբունքային քննադատություն ու ինքնաքննադատություն, վեր հանել յուրաքանչյուր աշխատողի, կոլեկտիվի գործերում տեղ գտած թերություններն ու սխալները և ճիշտ որոշումներ ընդունել դրանց վերացման համար։ Երկրորդ՝ կուսկազմակերպությունները ավելի մոտիկից են ճանաչում կադրերին, լիովին բացահայտվում են նրանց քաղաքական ու գործնական ունակությունները, բացառվում հովանավորություններն ու խնամակալությունները և կադրերի ընտրության հարցում լենինյան նորմերի մյուս կարգի խախտումները։ Կուսկազմակերպությունները միաժամանակ ավելի պատասխանատվությամբ են վերաբերվում կադրերի ընտրությանը և աշխատանքում առաջ են քաշում միայն կարող ու ձեռներեց մարդկանց։ Եվ, վերջապես, ավելի է ամրապնդվում կուսակցական ու պետական կարգապահությունը, բարձրանում է կոմունիստների և ղեկավար աշխատողների ակտիվությունը, նրանք խոր գիտակցությամբ են պայքարում պետական պլանային առաջադրանքների, իրենց հանձնարարված գործի կատարման համար։

Կադրերի որակավորումը բարձրացնելու, շրջանի առաջավոր այգեգործների փորձը մասսայականացնելու և այգեգինեգործական ինստիտուտի գիտական առաջարկություններն ուսումնասիրելու նպատակով, Սամաղարի, Հայթաղի կոլտնտեսություններում, № 3 սովխոզում և այգեգինեգործական ինստիտուտի Փարաքարի տնտեսությունում անցկացրինք այգեգործ բրիգադավարների, գյուղատնտեսների, օղակավարների և առաջավոր կոլտնտեսականների փնջային սեմինար-խորհրդակցություն։ Այստեղ քննարկված բոլոր հարցերի կապակցությամբ դաշտում՝ խաղողի այգիներում ցույց են տրվել կատարվող աշխատանքները։ Այսպիսի սեմինար-խորհրդակցություններ են կազմակերպվել նաև բանջարաբույծների և անասնապահների համար։

Կադրերի դաստիարակության գործում կարևոր դեր է խաղում կուսակցական քաղաքական լուսավորության ցանցը։ Հանրային արտադրության հրամանատարական կազմն ընդգրկված է քաղխմբակներում և տեսական սեմինարներում։ Կուսկազմակերպությունները մշտապես հետևում են նրանց ուսուցմանը, զբաղվում կադրերի գաղափարական կոփվածության հարցերով։

Կադրերի՝ գործնական և քաղաքական հատկանիշների համապատասխան ընտրությունը, առաջքաշումն ու տեղաբաշխումը, նրանց նախաձեռնության և պատասխանատվության բարձրացումը, գաղափարական-քաղաքական կոփվածության ապահովումը, կուսակցության և կառավարության որոշումների կենսագործման ասպարեզում նրանց գործունեության մշտական ստուգումը ներկուսակցական աշխատանքի հիմնական բովանդակությունն են և պետք է մշտապես գտնվեն կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում։

Կուսակցության Էջմիածնի շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները այսուհետև իրենց ուշադրությունը կբևեռեն կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության վրա, կուսակցական-կազմակերպական և քաղաքական-գաղափարական ամբողջ աշխատանքը կնպատակամղեն կոմունիստների աշխատանքային ակտիվության բարձրացմանը, աշխատավորների ստեղծագործական ուժերի մոբիլիզացմանը, շրջանի առջև ծառացած տնտեսական խնդիրների լուծմանը։



Վ. Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

# ԳԱԼԱԿՏԻԿԱՆԵՐԻ ԱՌԵՂԾՎԱԾԱՅԻՆ ԱՇԽԱՐՀԸ

Վերջին տարիներին աստրոֆիզիկան խոշոր հաջողությունների է հասել։ Գալակտիկաների ուսումնասիրման բնագավառում իր զգալի ավանդն է ներդնում ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանի ղեկավարած Բյուրականի աստղադիտարանի կոլեկտիվը։ Աստղագետ գիտնականների նոր հայտնագործություններին է նվիրված այս հոդվածը։

Գալակտիկաները աստղային հսկա համակարգություններ են, որոնցից յուրաքանչյուրը պարունակում է միլիարդավոր, իսկ երբեմն (գերհսկա գալակտիկաները)՝ հարյուր միլիարդավոր աստղեր։ Գերհսկաների շարքին կարող է դասվել նաև մեր գալակտիկան։

Վաղուց ի վեր հայտնի է, որ գալակտիկաներում աստղերը մեծ մասամբ կուտակվում են կենտրոնում։ Բացի այդ, շատ գալակտիկաների ճիշտ կենտրոնում նկատվում են խիստ փոքր չափերի աստղանման խիտ մարմիններ։ Երբեմն դրանք պարզ երևում են լուսանկարներում։ Այդ կենտրոնական աստղանման խիտ մարմիններն էլ հենց կոչվում են գալակտիկաների կորիզներ։ Այսպես, Մարգարյան—10 գալակտիկայի կորիզը խիստ աչքի է զարնում իր վիթխարի լուսատվության շնորհիվ։ Մի շարք գալակտիկաների կորիզի գոյության մասին կարելի է դատել նրա ակտիվության անմիջական հատկանիշներով։ Ակներև է, օրինակ, որ Մ—82 գալակտիկայի կորիզում, մոտ մեկուկես միլիոն տարի առաջ, վիթխարի պայթյուն է տեղի ունեցել։ Եվ, որպես դրա արդյունք, այսօր մենք դիտում ենք այդ գալակտիկայից մեզ հասնող ռադիոճառագայթումները։

Տասնամյակներ շարունակ կորիզները դիտվում էին իբրև գալակտիկայի կառուցվածքի «սովորական մասեր» և, համեմատաբար, քիչ էին ուսումնասիրվում։ Հայտնի էին միայն կորիզի ֆիզիկական առանձնահատկությանը վերաբերող մի քանի փաստեր, որոնք ամենևին հիմք չէին տալիս կորիզներին վերագրելու այն գլխավոր դերը, որը իրականում նրանք խաղում են։ Հատկապես կարծում էին, թե, քանի որ շատ միջուկների լուսապատկերները քիչ են տարբերվում կենտրոնական գոտիները շրջապատող լուսապատկերներից, ապա, ուրեմն, դրանք գալակտիկայի կենտրոնական մասում ընկղմված յուրատեսակ աստղակույտեր են։

Շատ գալակտիկաներում կորիզի լուսատվությունն այնքան նվազ է, որ օպտիկական ճառագայթներում չի նշմարվում։ Ուրիշներում այն մեկ տասնորդականից հասնում է երկու-երեք տոկոսի և միայն առանձին դեպքերում կազմում գալակտիկայի լուսատվության նշանակալի մասը։

Ամերիկացի աստղագետ Սեյֆերտը 1943 թվականին հրապարակեց մի ուսումնասիրություն, որը վերաբերում էր իրենց լուսատվությամբ աչքի զարնող մի քանի կորիզների լուսապատկերներին։ Ջրածնի լուսապատկերագծերի մեծ լայնությունը վկայում է, որ նման գալակտիկաների կորիզներում կան վայրկյանում մոտ հազար և ավելի կիլոմետր արագություն ունեցող գազահեղեղներ։ Մի քանի տասնյակ հազարամյակների ընթացքում այդ գազերը պետք է դուրս գան կորիզից, հաղթահարելով նրա ձգողական ուժը։ Կարելի է եզրակացնել, որ կորիզների մեջ կան հորդ գազահեղեղներ արտաժայթքող մարմիններ։

Սակավապայծառ կորիզներ ունեցող գալակտիկաների առավել մանրազնին մի շարք ուսումնասիրություններ պարզեցին, որ այնտեղ ևս, թեև ոչ այդչափ հորդ, գազահոսք է նկատվում։ Այդպիսի երևույթ է տեղի ունենում նաև մեր գալակտիկայում։ Այս փաստերը ցույց էին տալիս, որ, ի տարբերություն աստղերի և սովորական աստղախմբերի, գալակտիկաների կորիզները կարող են ունենալ յուրահատուկ, մեզ համար որակապես նոր ձևի ակտիվություն։

Սակայն գալակտիկաների կորիզների ակտիվության շուրջ մեր պատկերացումները ընդլայնվեցին 1952 թվականին, ռադիոգալակտիկաների, այսինքն՝ առավել ինտենսիվ ռադիոճառագայթներ արձակող գալակտիկաների հայտնաբերմամբ։ Բյուրականում դրանց բացատրությունը

որոնում էին, վերլուծելով դիտումներից ստացված տվյալները: Պարզվեց, որ յուրաքանչյուր ռադիոգալակտիկայի կորիզում տեղի է ունենում գերհզոր պայթյուն, որի էներգիան հսկայական չափերի է հասնում: Հասու լինելով ռադիոգալակտիկաների էության ըմբռնմանը՝ աստղագետները հանգեցին Տիեզերքի ամենավիթխարի էներգետիկ պրոցեսների ուսումնասիրմանը:

Ամենամոտիկ ռադիոգալակտիկաներից մեկի՝ Կույս—Ա-ի, դիտումները ցույց տվին, որ նրա հենց կորիզից առանձին կույտերով արտահոսք է նշմարվում: Կույտերից յուրաքանչյուրը ներկայացնում է փոքր գալակտիկայի չափ մի գոյացություն, որը, սակայն, կազմված է ոչ թե աստղերից, այլ բարձր էներգիայով օժտված էլեկտրոններից: Այդ փաստը մեզ մղեց որոնելու հսկա գալակտիկայի կորիզից հոսանքի արտամղման այլ դեպքեր: Որոնումները հաջողությամբ պսակվեցին: Հիշատակենք, օրինակ НГК (նոր գլխավոր աստղացուցակ) 3561 գալակտիկան. հոսանքը դուրս է գալիս ուղղակի նրա կորիզից և ձգվում մեծ տարածություններում: Հոսանքի ծայրում հայտնաբերվել է խիտ մարմին, որը, ըստ էության, ոչ այլ ինչ է, եթե ոչ չափավոր լուսատու գալակտիկա: Այդ արտամղվածքի և գալակտիկայի կորիզի լուսապատկերները միանման են և, կասկածից վեր է, որ մենք դիտում ենք գալակտիկայի կորիզի տրոհումը:

Հետզհետե մշակվեց այն պատկերացումը, որ գալակտիկաների կորիզներից, հուժկու պայթյունների հետևանքով, կարող են արտաժայթքել համեմատաբար պակաս լուսավորությամբ երկնագույն հոծ զանգվածներ: Այնուհետև պարզվեց, որ մենք գործ ունենք կորիզի ակտիվության առնվազն երեք ձևի հետ: Առաջինը՝ գազահեղեղների արտահոսքն է, երկրորդը՝ երկնագույն կուտակումների արտամղվածքներն են և երրորդը՝ պայթյունները, որոնք գալակտիկան վեր են ածում ռադիոգալակտիկայի: Այդ բոլոր երևույթները այնպիսի չափերի հասան, որ անտարակուսելի դարձավ կորիզի հսկայական ազդեցության հնարավորությունը ողջ գալակտիկայի զարգացման վրա:

Այս հետազոտությունների նոր փուլն առնչվում է Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ Բ. Ե. Մարգարյանի աշխատանքի հետ: Հայտնի է, որ գալակտիկայի գույնը և նրա տիպը մեծ չափով պայմանավորված են իրարով: Մարգարյանը գտավ, որ այդ պայմանավորվածությունը երբեմն խախտվում է: Այլ խոսքով՝ որոշ գալակտիկաներ ունեն այնպիսի գույն, որն ամենևին բնորոշ չէ իրենց տիպին: Պարզվեց, որ դրանք օժտված են ինչ-որ լրացուցիչ ճառագայթմամբ, որը մենք Բյուրականում անվանում ենք «ոչ-աստղային» կամ «ոչ-ջերմային»: Որոշվեց փորձել ռադիոդիապազոնում գտնել ոչ-ջերմային այդ ճառագայթումը: Համապատասխան դիտումներ կատարեց ռադիոաստղագետ Թովմասյանը, Ավստրալիայի երկու խոշորագույն ռադիոդիտակների միջոցով: Նրա ուսումնասիրած այդ խմբի օբյեկտների կեսից ավելին օժտված են ոչ-ջերմային ռադիոճառագայթմամբ— որը բխում է կորիզի մոտ գտնվող կենտրոնական շրջանից: Այսպիսով, հայտնաբերվեց կորիզների ակտիվության մի նոր արտահայտություն, որը մինչ այդ դիտվել էր սոսկ իբրև կորիզի երկնաքույր գույն՝ մերձկորիզային շրջանում:

Պետք է ասել, սակայն, որ գույնի ցուցանիշների վերաբերյալ տվյալները նախորոշված են միայն փոքրաթիվ գալակտիկաների համար: Մինչև վերջերս էլ չափազանց դանդաղ էին կուտակվում այդ տեղեկությունները: Բանն այն է, որ յուրաքանչյուր գալակտիկա ծերպավոր լուսապատկերագրով կամ էլեկտրալուսաչափով առանձին էր դիտվում, որի համար պահանջվում էր ժամեր շարունակ աշխատել խոշոր աստղադիտակներով: Դրությունը փոխվեց, երբ Լենինգրադի օպտիկա-մեխանիկական միավորումը Բյուրականի աստղադիտարանի մեծ աստղադիտակի համար պատրաստեց մետրանոց խոշոր պրիզմաներ: Դրանց շնորհիվ հնարավոր դարձավ միաժամանակ ստանալ երկնքի հիմնական տեղամասում գտնվող բազմաթիվ աստղերի և գալակտիկաների լուսապատկերները: Այդպիսի նկարահանումների միջոցով մենք կարող ենք հարյուրավոր կամ հազարավոր գալակտիկաներից ընտրել այնպիսիները, որոնց լուսապատկերներն օժտված են մեզ հետաքրքրող հատկություններով, օրինակ՝ ինտենսիվ ուլտրամանուշակագույն տեղամասով: Այնուհետև այդ ճանապարհով առանձնացված գալակտիկաները կարելի է, պատկերավոր ասած, հանձնել մեծ դիսպերսիաներ ունեցող ծերպավոր լուսապատկերագրերի ուսումնասիրությանը: Այդպես ստեղծվեցին ուլտրամանուշակագույն լուսապատկերներով գալակտիկաների— Մարգարյանի գալակտիկաների ցուցակները:

Մեր աստղադիտարանի աշխատակից Է. Խաչիկյանը, ամերիկյան աստղագետների հետ մեկտեղ, ԱՄՆ-ի ամենամեծ աստղադիտակներով, ծերպավոր լուսապատկերագրերի օգնությամբ, ուսումնասիրեց Մարգարյանի շատ գալակտիկաներ: Պարզվեց, որ այդ բոլոր գալակտիկաները, չնչին բացառությամբ, ունեն վառ էմիսիոն (արտաճառագայթող) գծեր: Խաչիկյանին հատկապես հաջողվեց Մարգարյանի գալակտիկաների շրջանում հայտնաբերել Սեյֆերտի տիպի չորս օբյեկտ: Համեմատության համար նշենք, որ Սեյֆերտի աշխատության հրապարակումից հետո, անցած 25 տարիների ընթացքում, նրա այդ տիպի սկզբնական 8 օբյեկտներին ընդամենը երեքն են ավելացել:

Մարգարյանի գալակտիկաների մոտ կեսն այնպիսի հատկություններով է օժտված, որ, ինչպես ուլտրամանուշակագույն լուսապատկերների, այնպես էլ էմիսիոն գծերի ճառագայթումը համակենտրոնացած է մերձկորիզային ոչ-մեծ շրջանում: Մարգարյանի գալակտիկաների մոտ կեսը խիտ մարմին է և քվազարներ է հիշեցնում: Այդ օբյեկտների մեծ մասի լուսատվությունը, սակայն, բավական ցածր է մեզ հայտնի քվազարների միջին լուսավորությունից:

Գալակտիկաների ու քվազարների կորիզի ակտիվությունն արտահայտվում է հսկայական չափերի հասնող էներգիայի ազատագրմամբ— դա լինում է հաճախ կարճատև պայթյունների, հսկա զանգվածների դուրս շպրտմամբ, գազամիգամածությունների ձևով, որոնց զանգվածը միլիոն անգամ գերազանցում է արևի զանգվածին:

Հասկանալի է, որ այս երևույթների հայտնաբերումից հետո ծառացավ այն խնդիրը, թե որոնք են կորիզի ակտիվության հետևանքով ազատվող հսկայական էներգիայի և նյութի աղբյուրները: Պարզվեց, որ գալակտիկաների կորիզներում ուսումնասիրվող բոլոր ակտիվ պրոցեսները կապված են նյութերի առավել խիտ վիճակից նոսրի փոխակերպվելու հետ:

Տիեզերական մարմինների ու սիստեմների ծագման մասին դասական բոլոր պատկերացումների աղբյուրը նյութերի խտացման, գազային նոսրացած զանգվածներից խիտ մարմինների ձևավորման վերաբերյալ ենթադրությունն է: Դասական այդպիսի հայացքների կողմնակիցների համար մեծ անակնկալ էին գալակտիկաների կորիզների ակտիվությանը վերաբերող նոր փաստերը: Չէ՛ որ նրանք հավատում էին, թե պրոցեսները զարգանում են հակառակ ուղղությամբ: Այդ իսկ պատճառով, առաջին փուլում, այսինքն՝ մինչև 60-ական թվականների սկիզբը, այդ ուղղության ներկայացուցիչների մեծ մասը ջանում էր անտեսել գալակտիկաների կորիզի ակտիվությանը վերաբերող փաստերը:

Այդ անսովոր երևույթները բացատրելու համար կարելի է ընդունել, որ յուրաքանչյուր ակտիվ կորիզի մեջ կա նրա կենտրոնը կազմող ինչ-որ մի գերհսկա մարմին: Կորիզի ակտիվությունն արդյունք է այդ գերհսկա մարմնի գործունեության: Դրա զանգվածը կարող է հավասարվել արևի հարյուր միլիոնավոր, նույնիսկ նրա միլիարդավոր զանգվածին: Հիմքեր կան ենթադրելու, որ կորիզի շուրջը գալակտիկայի գոյությունն իսկ արդյունք է այդպիսի գերհսկա մարմնի ակտիվության: Ոչ թե կորիզն է առաջացել արդեն գոյություն ունեցող գալակտիկայում, այլ գալակտիկան է առաջացել կորիզի ակտիվության հետևանքով: Այն փաստը, որ պարույրաձև գալակտիկայի թևերը կորիզներից են դուրս գալիս, նույնպես լիովին համապատասխանում է այդ հիպոթեզին:

Այստեղ ընդհանուր գծերով շարադրված հիպոթեզը դեռևս ամենևին հետևողական թեորիա չէ: Բայց այն հնարավորություն ընձեռեց՝ միավորելու բազմաթիվ փաստեր, կանխատեսելու բավական նոր տվյալներ և, որ գլխավորն է, բացահայտեց գալակտիկաների կոնդենսացիայի վերաբերյալ նախկինում գոյություն ունեցող պատկերացումների կանխակարծությունը:

Եթե ընդունենք այդ հիպոթեզը, ապա պետք է ենթադրել, որ գալակտիկայի կորիզը, իր գոյության ընթացքում վիթխարի չափով նյութեր կորցնելու, պայթյունների, երբեմն անգամ տրոհվելու հետևանքով, ժամանակի ընթացքում պետք է բավական փոխվեր, գուցե և անհետանար: Սակայն դեռևս մեծ ջանքեր կպահանջվեն կորիզի վիճակի փոփոխությունների օրինաչափությունները պարզելու համար:

Ժամանակակից աստղագիտության զարգացման, առավել վիթխարի օպտիկական և ռադիոդիտակների օգտագործման շնորհիվ Տիեզերքը մեր պատկերացումներով լիովին փոխվել է: Դեռևս երեսուն տարի առաջ այն ներկայանում էր իբրև անշարժ աստղերի հավասարակշռված վիճակում գտնվող հանգիստ և նույնիսկ հանդիսավոր մի աշխարհ: Այժմ մենք դիտում ենք բուռն գործունեությունն այդ իսկ աստղերի, որոնք ենթարկվում են վիթխարի պայթյունների և արագ բնաշրջվում: Ռադիոմթագնումների և ռադիոգալակտիկաների հայտնագործումը մեզ հանգեցրեց առավել վիթխարի չափերի հասնող արագ փոփոխությունների գաղափարին: Այսօր մենք քննում ենք գալակտիկաների և քվազարների կորիզներում տեղի ունեցող վեհասքանչ պրոցեսները:

Ըստ աստղագետների նոր պատկերացումների, Տիեզերքը՝ դա արագ ու խոր վերափոխվող աշխարհ է: ՍՍՀՄ-ում պատրաստվող նոր դիտակները հնարավորություն կընձեռեն մեզ՝ ավելի խոր թափանցելու այդ պրոցեսների էության մեջ:

*«Правда», 1-ը փետրվարի, 1970 թ.*



## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

# ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԵՐԱՓՈԽՈՒՄՆԵՐԸ ԳՅՈՒՂՈՒՄ

## (1959—1965 թթ.)

*Մեր երկրում գյուղի սոցիալ-տնտեսական վերափոխումների հիմնական նախապայմանները սովետական իշխանության ստեղծումը, հողի ու արտադրամիջոցների ազգայնացումն է: Պատմության մեջ առաջին անգամ բազմամիլիոն գյուղացիությունը դարձավ հողի իսկական տերը և այն որպես արտադրամիջոց ծառայեցրեց իր շահերին:*

*Նորաստեղծ սովետական պետությունը սերմացուով, վարկով ու արտադրամիջոցներով ամեն կերպ օգնում էր գյուղացուն. սակայն միայն դրանցով հնարավոր չէր գյուղն ազատել դարավոր աղքատությունից ու տգիտությունից, տանել սոցիալիզմի ուղիով:*

*Հաշվի առնելով ստեղծված իրավիճակը, Վ. Ի. Լենինը մշակեց գյուղի սոցիալիստական վերակառուցման պլանը: Նա գտնում էր, որ «Սոցիալիզմի միակ նյութական հիմքը կարող է լինել խոշոր մեքենայական արդյունաբերությունը, որն ունակ է վերակառուցելու նաև հողագործությունը (Երկեր, հ. 32, էջ 591): Իրագործելով լենինյան պատգամները, կոմունիստական կուսակցությունն ապահովեց սոցիալիզմի հաղթանակը քաղաքում ու գյուղում:*

*ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևը կոլտնտեսականների համամիութենական III համագումարում, խոսելով կոլտնտեսային կարգի հաղթանակի նշանակության մասին, ասաց, որ սոցիալական տեսակետից կոլտնտեսային կարգը ո՛չ միայն աշխատավոր գյուղացիությանը փրկեց շահագործումից և աղքատությունից, այլև թույլ տվեց գյուղում հաստատելու հասարակական հարաբերությունների նոր սիստեմ, որի շնորհիվ լիակատար հաղթահարվում են դասակարգային տարբերությունները (տե՛ս «Սովետական Հայաստան», 1969, նոյեմբեր, № 276):*

*Սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ կատարված սոցիալ-տնտեսական վերափոխումներն արմատական հեղաբեկում առաջացրին գյուղի կյանքում: Այդ վերափոխումների ամենահիմնական պայմանը արտադրուժերի զարգացման մակարդակն է, գյուղատնտեսական արտադրության հետևողական ինտենսիֆիկացումը: Գյուղատնտեսության արտադրապրոցեսների մեքենայացումը, էլեկտրիֆիկացումն ու ավտոմատացումը նպաստում են գյուղում կոմունիստական հասարակական հարաբերությունների արմատավորմանը, նոր մարդու ձևավորմանը:*

*Գյուղատնտեսության ինտենսիվ զարգացումը սոցիալ-տնտեսական հսկայական հեղաշրջիչ դեր է կատարում գյուղում, պայմաններ ստեղծելով քաղաքի և գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի, ինչպես նաև բանվորների ու գյուղացիների կուլտուր-տեխնիկական մակարդակի էական տարբերությունների վերացման համար:*



*Դեռևս 1919 թ., կուսակցության ծրագրի նախագծում, Լենինը գրել է. «Նկատի ունենալով այն, որ քաղաքի և գյուղի հակադրությունը գյուղի տնտեսական և կուլտուրական հետամնացության ամենախոր հիմքերից մեկն է հանդիսանում... ՌԿԿ-ն այս հակադրության ոչնչացման մեջ է տեսնում կոմունիստական շինարարության արմատական խնդիրներից մեկը...» (Երկեր, հ. 29, էջ 154—155): Կոմունիստական կուսակցության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ մեր երկրում վերացավ քաղաքի և գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի դարավոր հակադրությունը:*

*Այժմ կուսակցության և սովետական պետության առաջնահերթ խնդիրն է՝ անհրաժեշտ պայմաններ ստեղծել աստիճանաբար բարձրացնելու կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականության հանրայնացման մակարդակը, նպաստել վերջինիս մերձեցմանն ու միաձուլմանը պետական-համաժողովրդական սեփականության հետ: Այս հարցի լուծումից է կախված մեր երկրում քաղաքի և գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունների վերացումը, սոցիալ-տնտեսական վերափոխումները գյուղում:*

*Այդ խնդրի իրականացման գործում վճռական նշանակություն ունեն կոլտնտեսություններում անբաժանելի ու սպառման հանրային ֆոնդերի և կապիտալ ներդրումների աճը, միջկոլտնտեսային արտադրական կապերի ընդլայնումն ու զարգացումը, կոլտնտեսականների աշխատանքի երաշխավորված դրամական վարձատրությունը, միջկոլտնտեսային շինարարություններին պետության մասնակցությունը և այլն: Կոլտնտեսություններում անբաժանելի ֆոնդերի աճը հնարավորություն է տալիս ավելացնելու հիմնական արտադրամիջոցները, մեքենայացնելու գյուղատնտեսական աշխատատար պրոցեսները, վերափոխելու գյուղի կենցաղը:*

*Այդ ֆոնդերի հաշվին կառուցված ձեռնարկություններն ու օբյեկտները գրեթե չեն տարբերվում պետական ձեռնարկություններից: Այստեղ տարբերությունը միայն հանրայնացման աստիճանի մեջ է: Կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը իրենց բնույթով սոցիալիստական կուտակման ֆոնդեր են: Կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի հիմնական աղբյուրը դրամական ընդհանուր եկամուտներից կատարվող մասհանումներն են, պետության կողմից ներդրվող կապիտալ միջոցները: Որքան բարձր են կոլտնտեսությունների դրամական եկամուտները, այնքան աճում են անբաժանելի ֆոնդերին կատարվող դրամական հատկացումները:*

*Կոլտնտեսության անբաժանելի ֆոնդերի մեծացումը նպաստում են գյուղատնտեսության ինտենսիվացմանը, գյուղում արագացնում սոցիալ-տնտեսական վերափոխումները: Այս առումով հատկանշական են ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան և 1966 թ. մայիսյան պլենումների որոշումները: Այդ որոշումներից հետո կոլտնտեսություններում զգալի չափով ավելացան անբաժանելի ֆոնդերը և կապիտալ ներդրումները:*

*Գյուղի սոցիալ-տնտեսական վերափոխումների գործում կարևոր նշանակություն ունի միջկոլտնտեսային արտադրական կապերի զարգացումը: 1956 թ. հանրապետությունում կազմակերպվել էին միջկոլտնտեսային խորհուրդներ, որոնց թիվը 1965 թ. հասավ տասի, ուր ընդգրկված էին հանրապետության կոլտնտեսությունների մոտ մեկ երրորդը: Մեծ է այդ խորհուրդների կատա-*

րած աշխատանքը։ Շահումյանի շրջանի միջկոլտնտեսային խորհրդի միջոցով (1959—1965 թթ.) կառուցվել և շահագործման է հանձնվել երկու դպրոց, երկու ակումբ, մեկ բաղնիք, երկու ջրհան կայան, չորս կովանոց, երեք հորթանոց, մեկ թռչնաբուծական ֆաբրիկա, մեկ ոչխարանոց, մեկ ավտոպարկ, վերանորոգման մեկ արհեստանոց և այլն»[1]։ Խորհրդի միջոցով կառուցված թռչնաբուծական ֆաբրիկան ծառայում է շրջանի կոլտնտեսություններին և իր մեքենայացման աստիճանով ու աշխատանքի կազմակերպման ձևերով ոչնչով չի տարբերվում պետական թռչնաբուծական ֆաբրիկաներից։ Նման կառուցումներ են կատարված նաև Էջմիածնի, Արտաշատի, Հոկտեմբերյանի և մի շարք այլ շրջաններում։ Արտաշատի միջկոլտնտեսային խորհուրդը կառուցել է մրգերի ու բանջարեղենի աճեցման ու պահպանման ջերմոցներ, որոնք քաղաքի բնակչությանը մատակարարում են մրգեր ու թարմ բանջարեղեն։ Խորհրդի միջոցով 1965 թ. կառուցված Մխչյան գյուղի հիվանդանոցը սպասարկում է ավելի քան 13 գյուղի։ Այդպես կառուցված կուլտուր-կենցաղային, արտադրական և այլ ձեռնարկություններն իրենց մեքենայացմամբ, աշխատանքի կազմակերպման ձևերով ու մեթոդներով, ինչպես նաև հանրայնացման աստիճանով մոտենում են պետական-համաժողովրդական սեփականությանը։ Դուրս գալով մեկ կամ մի քանի կոլտնտեսությունների սեփականության շրջանակներից, դրանք դառնում են շրջանի կամ հանրապետության կոլտնտեսությունների սեփականությունը։

Այսպիսով, գյուղում աստիճանաբար ստեղծվում են ագրարային-արդյունաբերական խոշոր միավորումներ, որոնք, զինվելով նորագույն տեխնիկայով, պայմաններ են ստեղծում գյուղատնտեսական աշխատանքը վերաճելու արդյունաբերական աշխատանքի տարատեսակի։ Դրանով ուղի է հարթվում քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի էական տարբերությունների վերացման և կոոպերատիվ-կոլտնտեսային սեփականությունը պետական համաժողովրդական սեփականությանը միաձուլելու համար։

Անհրաժեշտ է նշել, որ դեռևս անբավարար ուշադրություն է նվիրվում միջկոլտնտեսային արտադրական կապերի ընդլայնմանը, նրանց զարգացման և առանձին միջկոլտնտեսային խորհուրդների ձեռք բերած փորձի ուսումնասիրմանն ու արմատավորմանը։ Մեր հանրապետության համար այդ հարցի լավագույն կազմակերպումն ունի կարևոր նշանակություն։

Արարատյան դաշտի պտղատու այգիների հսկայական տարածություններում պտղահասունացումը գրեթե միաժամանակ է տեղի ունենում և առևտրական ու մթերող կազմակերպությունները, ինչպես նաև կոլտնտեսություններն ու սովխոզները չեն կարողանում միանգամից իրացնել խաղողի, պտուղների և բանջարեղենի հսկայական պաշարները։ Իսկ վերամշակող և պահեստավորող գործարանների ու օբյեկտների սակավության պատճառով, հարյուրավոր տոննաներով բարիքը փչանում է, և տնտեսությունները վնասներ են կրում։

Քիչ է նաև միջկոլտնտեսային խորհուրդների միջոցներով կառուցվող արտադրական ու կուլտուր-կենցաղային օբյեկտների թիվը կիսալեռնային և լեռնային շրջաններում, որտեղ գյուղերը մեծ մասամբ փոքր են, անասնապահական ֆերմաները՝ փոքրաթիվ, իսկ արտադրական ու ֆինանսական միջոցները՝ սակավ։ Այդպիսի շրջաններում միջկոլտնտեսային խորհուրդների ուժերով կառուցվող շենքերի անհրաժեշտությունը հրամայական պահանջ է։

1 Տե՛ս Շահումյանի շրջանի միջկոլտնտեսային շինարարության խորհրդի 1966 թ. տարեկան հաշվետվությունը։



Գյուղի սոցիալ-տնտեսական վերափոխումների ասպարեզում կարևորագույն դեր են խաղում նաև կոլտնտեսություններում սպառման հանրային ֆոնդերի աճը, կոլտնտեսականների աշխատանքի երաշխավորված դրամական վարձատրությունը, նյութական շահագրգռվածության զանազան ձևերի կիրառումը և այլն։

Այս պրոցեսի զարգացմանը մեծապես նպաստում է պետությունը՝ գյուղերում կառուցելով արտադրական, կուլտուր-կենցաղային շենքեր։ Պետությունը մասնակցում է միջկոլտնտեսային խորհուրդների միջոցով կառուցվող զանազան կառույցների շինարարությանը, կապիտալ ներդրումներ կատարում կոլտնտեսություններում, վերջիններիս մատչելի պայմաններով բաց թողնում վարկեր, շինանյութեր, զանազան սարքավորումներ և այլն։ Եթե 1951—1958 թթ. հանրապետության կոլտնտեսություններում պետության կապիտալ ներդրումները 90 միլիոն ռուբլի էին, ապա յոթնամյակի տարիներին դրանք հասան 254 միլիոնի։

Այս բոլորը նյութական հիմք են ստեղծում բարձրացնելու գյուղատնտեսության ինտենսիվացման մակարդակը, մեքենայացնելու աշխատատար պրոցեսները, ավելացնելու նյութական արժեքների արտադրությունը։

Հիշյալ վերափոխումները նպաստում են կոմունիստական հասարակական հարաբերությունների արմատավորմանը, նոր մարդու ձևավորմանը։ Այդ է վկայում կոլտնտեսային կյանքում կոմունիստական աշխատանքի շարժումը։ Մեր հանրապետությունում այդ շարժման պիոներներն են Ախուրյանի շրջանի Արևիկ, Շահումյանի շրջանի Ներքին Ջարբախ, Կալինինոյի շրջանի Նովոսելցովո գյուղերի կոլտնտեսությունները։ Հետագայում այն ծավալվեց Հոկտեմբերյանի, Էջմիածնի, Շամշադինի, Արթիկի և մյուս շրջանների առանձին կոլտնտեսություններում, բրիգադներում և ֆերմաներում։

Կալինինոյի շրջանի Նովոսելցովո գյուղի կոլտնտեսությունում աշխատանքային կարգապահությունն այնքան է ամրապնդվել, որ կոլտնտեսականներն ընդհանուր ժողովում որոշում են կայացրել կոլտնտեսային օրինակելի կանոնադրությունից հանել աշխօրի մինիմումի կետը։ Նրանք ձգտում են միասնաբար և ժամանակին ավարտել գյուղատնտեսական տարվա բոլոր աշխատանքները։ Դրա շնորհիվ մեկ տարում, 1961 թ., 1960 թ. համեմատությամբ, տնտեսության դրամական եկամուտներն ավելացել են 40 տոկոսով։ Դրամական եկամուտների աճի շնորհիվ, սկսած 1961 թ., կոլտնտեսականների համար ձրի են էլեկտրաէներգիան, ռադիոն և կինոն։ Բացի այդ, կոլտնտեսության տրակտորներն անվճար վարում են կոլտնտեսականների տնամերձ հողամասերը։ Նրանք ապահովվում են վառելափայտով, մթերքը տեղափոխելու համար անվճար փոխադրականով։ Արդեն 1962 թ. կոլտնտեսականները ձրի ստանում են մեկական օրինակ հանրապետական և շրջանային թերթեր։ Կոլտնտեսությունում լավ հիմքերի վրա է դրված թոշակավորման գործը։

Այստեղ մեծ գործ է արված գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման, գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորման և կոլտնտեսականների տեխնիկական մակարդակի բարձրացման համար։ Կոլտնտեսությունն ունի իր կուլտուրայի օջախները, որոնք բազմակողմանի աշխատանք են ծավալել։ Հայաստանում նման կոլտնտեսություններ շատ կան։

Գյուղի կյանքում հատկանշական է տարբեր բնագավառներում հասարակական հիմունքների արմատավորումը։ Հասարակական ինքնավարության

դպրոցներում գյուղի աշխատավորները ձեռք են բերում ղեկավարման մեծ փորձ ու հմտություն, դաստիարակվում ու դաստիարակում ուրիշներին։

Գյուղում որքան շատ մարդիկ անցնեն հասարակական ինքնավարության այդ դպրոցներով, որքան շատ մարդիկ ընդգրկվեն հասարակական հիմունքներով աշխատող կազմակերպություններում, այնքան ավելի կարագացվի գյուղի սոցիալ-տնտեսական վերափոխման պրոցեսը։

«...Մեզ համար կարևոր է,— ասում էր Լենինը,— պետության կառավարմանը մասնակից դարձնել անխտիր բոլոր աշխատողներին։ Այդ վիթխարի չափով դժվար խնդիր է։ Սակայն սոցիալիզմ կառուցել չի կարող փոքրամասնությունը՝ կուսակցությունը։ Այն կարող են իրականացնել տասնյակ միլիոնները, երբ նրանք բոլորը կսովորեն իրենք անելու» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 27, 1951, էջ 150)։

Այդ է պատճառը, որ կոմունիստական կուսակցությունը գործնական միջոցառումներ է ձեռնարկում, որպեսզի հասարակական ինքնավարության դպրոցներով անցնեն տասնյակ-միլիոնավոր մարդիկ, որպեսզի նրանք սովորեն երկիր կառավարել, որպեսզի «սոցիալիստական պետականության զարգացումը, աստիճանաբար հանգեցնի այն բանին, որ նա վերափոխվի հասարակական կոմունիստական ինքնավարության, որի մեջ կմիավորվեն սովետները, արհեստակցական, կոոպերատիվ և աշխատավորների մյուս մասսայական կազմակերպությունները» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, 1962, էջ 532)։

Չնայած այն հանգամանքին, որ գյուղի սոցիալ-տնտեսական վերափոխման գործում զգալի դեր են խաղում կոմունիստական աշխատանքի շարժումը և հասարակական հիմունքների արմատավորումն աշխատանքում, սակայն այս պրոցեսը գյուղում ընթանում է միանգամայն դանդաղ։ Հանրապետությունում շատ քիչ կոլտնտեսություններ, բրիգադներ և ֆերմաներ են, որոնք պայքարում են կոմունիստականի կոչման արժանանալու համար։ Գյուղում անբավարար է արմատավորվում հասարակական հիմունքները մասնավորապես պետական ապարատում։ Որոշ օղակներում ստեղծվել են մեկը մյուսին կրկնող զանազան հասարակական հանձնաժողովներ ու խորհուրդներ, որոնք խանգարում են իրար։ Անհրաժեշտ է որոշակիացնել հասարակական հիմունքներով աշխատող կազմակերպությունների կազմը, մշակել նրանց համար հատուկ կանոնադրություն, սիստեմատիկաբար օգնել և ուղղություն տալ նրանց աշխատանքին։ Ավելին, երբեմն այդ հասարակական հիմունքներով աշխատող կազմակերպությունների առաջ քաշած հարցերը անհրաժեշտ լուծում չեն ստանում տեղական կուսակցական և սովետական օրգանների կողմից։

Գյուղի սոցիալ-տնտեսական վերափոխումների գործում անգնահատելի ավանդ են ներդնում ժողովրդական կրթության, կուլտուրայի դարբնոցները։ Ժողովրդական կրթության օջախները կադրերի նորանոր համալրումներ են տալիս գյուղին։ Միայն հանրապետության գյուղատնտեսական բարձրագույն ուսումնական հաստատությունները տարեկան ավարտում են 650—700 մասնագետ։ Գյուղին անհրաժեշտ կադրերով ապահովում են նաև մյուս բուհերը, տեխնիկումները, կադրերի վերաորակավորման դասընթացները, միջնակարգ մասսայական և երեկոյան դպրոցները, կարճատև կուրսերը, ագրոտեխնիկական խմբակները, ինչպես նաև գիտատեխնիկական ընկերությունները և այլն։

Գյուղի սոցիալ-տնտեսական վերափոխումների բնագավառում մեծ է կուլտ-լուսհիմնարկների դերը։ Հանրապետության գյուղական վայրերում գործում են բազմաթիվ ակումբներ, գրադարաններ, թատրոններ, կինոթատրոններ, ժողովրդական համալսարաններ, ինքնագործունեության զանազան խըմբակներ։ Բավական է ասել, որ 1965 թ. գյուղական վայրերի կուլտուրայի օջախներին կից կազմակերպված 2728 խմբակներում ընդգրկված էին ավելի քան 40,5 հազար մարդ։ Հանրապետության բազմաթիվ գյուղական կուլտուրայի օջախներում մեծ ու շնորհակալ աշխատանք է տարվում։

Այս տեսակետից օրինակելի է Ստեփանավանի, Իջևանի և Արտաշատի կուլտուրայի տների, Շամշադինի շրջանի Նորաշեն, Աբովյանի շրջանի Ողջաբերդ գյուղերի ակումբների, Ալավերդու շրջանի Ղաշաղան գյուղի կուլտուրլուսավորական հիմնարկությունների գործունեությունը։ Գյուղի կուլտուրական վերափոխման արտահայտությունն է մշակութային հիմնարկությունների ու մտավորականների կայուն բանակի առկայությունը։ Թումանյանի շրջանի Օձուն գյուղն ունի երկու միջնակարգ, մեկ ութամյա, գիշերօթիկ, երեկոյան միջնակարգ դպրոցներ և պողաբանջարաբուծական տեխնիկում։ Այստեղ աշխատում են 100-ից ավելի ուսուցիչ, որոնց 80—90 տոկոսը տեղացիներ են և ունեն բարձրագույն կրթություն։ Տնտեսությունն ունի 13 զոոտեխնիկ, 5—6 գյուղատնտես, 20-ից ավելի մեխանիզատոր, տնտեսագետներ, անասնաբույժներ և այլ մասնագետներ։

Ավելի քան 650—700 օձունցիներ ստացել են բարձրագույն կրթություն, դարձել մանկավարժներ, ինժեներներ, բժիշկներ, գյուղատնտեսության մասնագետներ, կուլտուրայի և գիտության բնագավառի աշխատողներ։ Գյուղն ունի կուլտուրայի տուն, մի քանի գրադարան, կինոթատրոն, հիվանդանոց, բուժարան, դեղատուն, բաղնիք, ճաշարան և կենցաղային մի շարք այլ օբյեկտներ։ Այն էլեկտրիֆիկացված է, այնտեղ կան ռադիո, գազ, հեռախոս, քանից ավելի խանութ։ Այստեղ են տեղավորված շրջանային սննդի կոմբինատը իր հրուշակեղենի, հացաթխման և լիմոնադի արտադրամասերով, թռչնաբուծական ինկուբատորային կայանը, «Հայգյուղտեխնիկայի» շրջանային միավորումը, գլխավոր պանրագործարանի մասնաճյուղը, օդերևութաբանական շրջանային կայանը և այլն։

Բարեկարգվում և կարգավորվում են գյուղի փողոցներն ու հրապարակները։ Սկսված է 500 տեղանոց կուլտուրայի պալատի, երկհարկանի մասնագիտացված խանութի շենքերի կառուցումը։ Տասնյոթ մետրանոց հուշարձան է կառուցվում Հայրենական պատերազմում զոհված օձունցիների հիշատակը հավերժացնելու համար։ Նախատեսվում է առաջիկայում կառուցել հիվանդանոցի և կինոթատրոնի նոր շենքեր, ասֆալտապատել ու բարեկարգել գյուղի երեք հիմնական փողոցները։

Այս ամենը նշանակում է, որ Օձունը և այդպիսի շատ գյուղեր իրենց կուլտուր-կենցաղային ու կուլտուր-տեխնիկական մակարդակով աստիճանաբար մոտենում են քաղաքին, որ մեր հասարակարգի արագընթաց զարգացման հետ միասին, սոցիալ-տնտեսական հսկայական վերափոխումներ են կատարվում գյուղում։ Այս պրոցեսի ամենավառ ապացույցն է նաև այն, որ անցած մի քանի տարիների ընթացքում հանրապետության գյուղական մի շարք կենտրոններ դարձան ինքնուրույն քաղաքներ ու քաղաքատիպ ավաններ։

Ա. Ս. ՋԱՆԻՆՅԱՆ

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ: *Մ., Քաղհրատ, 1969, 152 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Լիակատար ժողովածուի տեղեկատու հատոր: *Մաս 1, Մ., Քաղհրատ, 730 էջ:*

*Վ. Ի. Լենինի Երկերի 55 հատորից բաղկացած լիակատար ժողովածուի ներկա տեղեկատուն բաղկացած է լինելու երկու մասից. լույս է տեսել առարկայական ցանկը, երկրորդը կլինի այբբենականը:*

Լենինը ընկեր, մարդ: *Քաղհրատ, 1969, 327 էջ:*

*Ներկա ժողովածուում զետեղված նամակները, գրությունները կուսակցական գործիչների, աշխատավոր մարդկանց նկատմամբ Իլյիչի ցուցաբերած հոգատարության, ազնիվ վերաբերմունքի վկայություններ են:*

Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին: *Հինգ հատորով: Հատոր երկրորդ: Մ., Քաղհրատ, 1969, 495 էջ:*

*Գրքում զետեղված են ականավոր քործիչների (Կրժիժանովսկու, Բաբուշկինի, Բուբնովի, Օրջոնիկիձեի, Ստալինի, Ստասովայի, Լունաչարսկու և ուրիշների) հուշերը Լենինի մասին (1891—1917 թթ.):*

Ընկեր Լենինին: *Աշխատավորության նամակները Վ. Ի. Լենինին, 1917—1924: Մ., Քաղհրատ, 1969, 528 էջ:*

Վլադիմիր Իլյիչ Լենին *(բանաստեղծություններ): Մ.,* «Молодая гвардия» *հրատ., 1969, 367 էջ:*

*Այստեղ ամփոփված են սովետական պոետների չափածո ստեղծագործությունները՝ նվիրված Իլյիչին:*

Անուն քաղցր ու վսեմ: *Եր., «Հայաստան» հրատ., 1969, 59 էջ:*

*Այս ժողովածուում զետեղված են հայ բանաստեղծների ընտիր ստեղծագործությունները՝ նվիրված Լենինին:*

Վ. Ի. Լենինը և Մերձավոր ու Միջին Արևելքի ժողովուրդների ազգային ազատագրական պայքարը: *Եր., ԳԱ հրատ., 1969, 276 էջ:*

*Ներկա ժողովածուում զետեղված են՝ Հ. Ինճիկյանի* Վ. Ի. Լենինը Արևելքի նշանակության մասին, *Ն. Հովհաննիսյանի* Հոկտեմբերը և ազգային-ազատագրական շարժման վերելքը Արաբական արևելքում, *Հ. Եգանյանի* Քաղաքական շարժումների վերելքը Իրանում Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո և իրանական պատմագրությունը, *Շ. Մհոյի* Քուրդ ժողովրդի պայքարը ազգային ինքնուրույնության համար (1918—1925 թթ.), *Հ. Նարտիրոսյանի* Երիտասարդ թուրքերի հեղափոխությունը Վ. Ի. Լենինի գնահատմամբ *հոդվածները:*

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԳՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԴԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ. ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции,—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

*ՎՖ 03101 Պատվեր 660 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 12600 Գինը 25 կոպ.:*

*Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 14/V 1970 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյանի փող. № 28:*



## ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ՋԵՎԱՐԱՐ

*Հազարավոր մետրերով գործվածքը խնայողաբար ձևելն այնքան էլ հեշտ չէ: Չէ՞ որ հագուստ ձևելիս մեկ հերթափոխում այնքան թափոն է գոյանում, որից կարելի էր կարել տասնյակ կոստյում ու վերարկու: Այդ պատճառով ամեն տարի լինում է ավելի քան հարյուր միլիոն քառակուսի մետր գործվածքի կորուստ:*

*Սարատովի № 2 կարի ֆաբրիկային օգնության հասավ էլեկտրոնիկան: Արտադրամասում տեղակայված է* ЭМРТ*—2 մակնիշի գործվածք ձևող էլեկտրոնային հաշվիչ մեքենան, որը պատրաստվել է Ուկրաինայի գործարաններից մեկում:*

*Մեքենան հաշվարկում է վերարկուի ձևումը: Օպերատորը սեղմում է ստեղները, հաղորդում մեքենային՝ պահանջվող արտադրանքի քանակը, կտորի երկարությունը, ձևարարական սեղանի համապատասխան համարը:*

*Բավական է սեղմել վերջին ստեղը, և վահանակի վրա հայտնվում է պատասխանը՝ ի՞նչ չափսի և երկարության, քանի վերարկու է նպատակահարմար կարել այդ կտորից: Մեկ վայրկյանում կատարելով 100 հազար գործողություն, մեքենան հաղորդում է կտորի ձևման ամենախնայողաբեր տարբերակը:*

*Այդ մեքենայի շնորհիվ տարեկան տնտեսվում է մի քանի տասնյակ հազար ռուբլի:*

### ԱՎՏՈՄԱՏ ՀՍԿԻՉԸ

*Մետաղյա զանազան արուրքների որակի անընդմեջ ավտոմատ հսկողության համար ստեղծվել է «Մետալ—2 Մ» մակնիշի նոր սարք: Ուլտրաձայնային ալիքների օգնությամբ ավտոմատը արագ և ճշգրիտ որոշում է գետալների չափսերի շեղումները ստուգանմուշից: Նոր սարքի օգնությամբ կարելի է հայտաբերել նաև բիմետաղներից պատրաստվող արուրքի մեջ հանդիպող, այսպես կոչված՝ շերտատումը: Հսկողության արդյունքները գրանցվում են սարքի առաջամասում տեղադրված գործիքով կամ գրառվում դիագրամայում:*

*Եթե ստուգվող դետալների մեջ պատահում են այնպիսիները, որոնց հաստությունը սահմանվածից ավելին է, գործում է լուսային ազդանշանիչը, և կասեցվում արուրքի թողարկումը:*

*Քիշինյովի «էլեկտրաճշգրիտսարք» գործարանի կողմից թողարկվող այս ավտոմատն արդեն կիրառվում է 6—7 մմ տրամաչափի հատուկ նրբապատ խողովակներ արտադրող մի քանի ձեռնարկություններում:*

### ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ԱՐՅՈՒՆ

*ԱՄՆ-ի Ցինցինատի քաղաքի համալսարանի բժշկական կենտրոնում ստացվել է սինթետիկ արյուն: Արտաքուստ այն նման է կաթի և կազմված այսպես կոչված՝ ֆլյուորոցիտներից՝ ածխաջրի և ֆտորի քիմիապես իներտ միացություններից: Ֆլյուորոցիտները գտնվում են աղային լուծույթում, որը որոշակի պահի ենթարկվում է ուլտրաձայնային ալիքների ներգործությանը:*

*Արհեստական արյան մարմնիկները տասն անգամ փոքր են բնականից: Այդ առավելության շնորհիվ նրանք՝ մասնակի խցանված կամ նեղացած մազանոթների միջով հեշտությամբ անցնում են դեպի թթվածնի անբավարարություն ունեցող հյուսվածքները:*

*Սինթետիկ արյունը կարելի է անսահմանափակ երկար ժամանակով պահել սենյակի ջերմաստիճան ունեցող տեղում: Դրա օգտագործման դեպքում ոչ մի ռեակցիա տեղի չի ունենում: Ահա թե ինչու հարկ չի լինում որոշելու հիվանդի արյան կարգը:*

### ՔՈՒՆ՝ ՊԱՏՎԵՐՈՎ

*Խարկովի պոլիտեխնիկական ինստիտուտի մի խումբ դասախոսներ պատրաստել են մի գլխադիր սարք, որը հիշեցնում է մոտոցիկլի վարորդի գլխարկը: Այն նախատեսված է կլինիկայի հիվանդների համար:*

*Հագնելով ականջակալները, մարդը լսում է ռիթմիկ աղմուկ և տեսնում փոքրիկ լամպերի առկայծումը: Պարզվում է, որ ազդանշանները կառավարում են հիվանդի շնչառությունը: Նման սինխրոնիզացումը բերում է արագ ու թեթև քուն:*

### ՋՈՒՐԸ ՊԱՇՏՊԱՆՈՒՄ Է ՏՆՍՈՂՈՒԹՅՈՒՆԸ

*Լենհաստանի պողպատաձուլական գործարաններից մեկում փորձնական կարգով օգտագործվեց ջրապատվար՝ ուժգին ջերմային ճառագայթումից բանվորի աչքը պաշտպանելու համար: Կանաչ գույնով ներկված ջուրը չի փոքրացնում տեսանելիությունը և միաժամանակ ճառագայթների ինտենսիվությունը հասցնում է մինչև 7,5 տոկոս նախկին մեծության:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## *ԺԱՅՌՆ ԱՐԳԵԼՔ ՉԷ*

*Էքսկավատորը հաճախ չի կարողանում փորել սառած գետինը կամ քարաշերտերը։ Մեխանիզատորը կանգնեցնում է մեքենան և սպասում, մինչև կտաքացվի գետինը կամ կպայթեցվի ժայռը։ Դրա համար բավականին ժամանակ ու միջոցներ են վատնվում։*

*Էքսկավատորի սովորական շերեփը փոխարինելով, այսպես կոչված՝ ակտիվ շերեփով, մինչև 2 մետր խորությամբ կարելի է փորել սառած կամ քարքարոտ գետինը, առանց վերը նշված լրացուցիչ աշխատանքի։*

*Շերեփի հարվածող երեք ատամները միացված են հզոր պնևմատիկ մուրճերի (յուրաքանչյուրը 200* կգ*), որը տեղակայված է մեքենայի առաջամասի պատին և վայրկյանում մոտ 600 հարված են հասցնում սառած գետնին։*

*Ակտիվ գործողության շերեփը օդահաղորդալարի հետ արագ ու հեշտ տեղակայվում է մեքենայի վրա։ Նման սարքավորում ունեցող էքսկավատորները կիրառելի են շինարարության տարբեր բնագավառներում։ Դրանց շնորհիվ մոտ 1,5 անգամ բարձրանում է մեխանիզատորի աշխատանքի արտադրողականությունը։*

*Այս սարքավորումն ստեղծել են ՍՍՀՄ ԳԱ տրանսպորտի շինարարության կենտրոնական գիտահետազոտական ինստիտուտի և լեռնագործության սիբիրյան բաժանմունքի ինստիտուտները։*

## *ՀԶՈՐ ՁՅՈՒՆԱՄԱՔՐԻՉ*

ЗИЛ*—130 սերիայի մեքենան, որն ունի կախովի երեք գութան, անփոխարինելի է ավտոճանապարհները և օդանավակայանները ձյունից մաքրելու համար։*

Д*—666 մակնիշի այդպիսի ձյունմաքրիչ են ստեղծել հողափոր մեքենաշինության գիտահետազոտական համամիութենական ինստիտուտի ինժեներները (Լենինգրադ)։ Ժամում մոտ 50* կմ *արագությամբ սլացող մեքենան մաքրում է 4 մետր լայնությամբ ձյունածածկ ճանապարհը, 20—30* սմ *խորությամբ ձյունաշերտը կողային թևերով նետելով ճանապարհից 9 մետր հեռու։*

## *ՍԱԾԻԼՆԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՆՈՐ ԵՂԱՆԱԿ*

*Գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման և մեքենայացման Կիևի ինստիտուտում մշակվել է սածիլների արտադրության արդյունաբերական եղանակ։ Սերմի ցանքի համար «դաշտ» են ծառայում ջեռուցիչ սալիկները կամ կրկնաշրջանակները։ Թե՛ սալիկները և թե շրջանակները դրվում են ուղղահայաց դիրքով՝ իրարից որոշակի հեռավորության վրա (կախված բույսի տեսակից)։ Այսպիսով, 12 մետրանոց շենքում կարելի է ստեղծել մինչև 60 քառ. մետր «ցանքատարածություն»։ Ջուրը կամ սննդարար լուծույթը մատակարարվում է ավտոմատ ձևով։ Հեղուկը խոնավացնում և պարարտացնում է հողը։ «Դաշտը» լուսավորում են շարամեջերում տեղակայված խողովակաձև լյումինեսցենտային լամպերի միջոցով։ Օպտիմալ ռեժիմը բույսերի աճն արագացնում է 1,5—2 անգամ։ Սածիլների և շրջանակների տեղադրումից հետո մինչև սածիլների ստացումը (մոտ մեկ ամիս) կարելի է շենք չմտնել։ Այս նոր եղանակով աճեցնում են և՛ բանջարեղեն, և՛ կանաչի (համեմ, մաղադանոս և այլն)։*

## ՔԼՈՐԻ ՓՈԽԱՐԵՆ

*Լեհաստանի Լոձ քաղաքում խմելու ջրի վարակազերծման փորձեր են կատարվում։ Այդ նպատակով կիրառվում է ոչ թե քլորը, այլ օզոնը, որն օժտված է ախտահանման բարձր հատկություններով և, միաժամանակ, չի փոխում ջրի համն ու հոտը։*

## *ԾԽԵԼՈՒ ՄԻ ԱՅԼ ՎՆԱՍԱԿԱՐՈՒԹՅՈՒՆ*

*Վիճակագրական վերլուծության տվյալների հիման վրա գիտնականները հանգել են նախազգուշացնող հետևության։ Նրանք պարզել են, որ ծխող մարդու ատամի հյուսվածքները նույն վիճակում են, ինչ իրենից 15 տարուց բարձր տարիքի չծխողների մոտ։*

*Ատամները պատող լնդերը, ոսկրերը և կապակցան հյուսվածքները ենթարկվում են նիկոտինի խիստ քայքայիչ ներգործությանը։ Ծխողներին ատամներից զրկվելու վտանգ է սպառնում 30 տարեկան հասակից։*